## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՓՈԽԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄ Է

Կուսակցության Կենտկոմի մայիսյան (1972 թ.) պլենումը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշմանը համապատասխան սահմանեց 1973—1974 թվականներին անցկացնել ՍՄԿԿ անդամների կուսակցական փաստաթղթերի փոխանակություն: Ինչպես հայտնի է, այդ հարցը կուսակցության առաջ ծառացավ ներկայիս կուսակցական տոմսերի գործողության ժամկետն անցնելու կապակցությամբ: Սակայն խոսքը վերաբերում է ոչ թե մի պարզունակ տեխնիկական ակտի, ոչ թե այն բանին, թե կուսակցական որոշ փաստաթղթեր փոխանակվում են որոշ այլ փաստաթղթերով: Թե՛ կւսակցության XXIV համագումարում, թե՛ Կենտկոմի մայիսյան պլենումում ընդգծվեց տվյալ կազմակերպական-քաղաքական միջոցառման կարևորությունը, այդ միջոցառումը կուսակցական շարքերի է՛լ ավելի ամրապնդմանը, կոմունիստների ակտիվության ու կարգապահության բարձրացմանը ծառայեցնելու անհրաժեշտությունը: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը մայիսյան պլենումում մատնանշել է, որ կուսակցական փաստաթղթերի փոխանակությունը սկզբունքային քաղաքական նշանակություն ունի, շոշափում է իր շարքերի ամրապնդման բնագավառում կուսակցության գործունեության կարևորագույն կողմը: Կուսփաստաթղթերի փոխանակման կազմակերպական-քաղաքական աշխատանքի ընդհանուր-կուսակցական իմաստն այն է, որ բարձրացվի ամբողջ կուսակցության ակտիվությունը, բարձրացվի յուրաքանչյուր կոմունիստի նախաձեռնությունն ու կարգապահությունը, ուժեղացվի կուսակցության անդամների ավանգարդային դերը կոմունիզմի շինարարության գործում: Կարելի է ասել, որ կուսակցական փաստաթղթերի առաջիկա փոխանակությունը կլինի մեր ուժերի յուրովի ստուգատես, այն բանի խստապահանջ ստուգումը, թե յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն ինչպես է կենսագործում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները: Այդ է առաջիկա աշխատանքի գլխավոր խնդիրներից մեկը:

Կուսակցության XXIV համագումարը նախագծեց կոմունիզմի ուղիով սովետական հասարակության հետագա առաջխաղացման փառահեղ հեռանկարը: Սովետական ժողովուրդը միահամուռ ընդունում ու հավանություն է տալիս համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրին: Մեր երկրի աշխատավորները հանձին այդ ծրագրի տեսնում են տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ նոր բարձունքների նվաճման վստահելի երաշխիքը, իրենց իսկական շահերի արտահայտությունը, իրենց ներկան ու ապագան: Կոմունիստական կուսակցությունը հանդես է գալիս որպես բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի ընդհանուր ճանաչում գտած առաջնորդ: Սերտորեն համախմբված լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, կուսակցու-

թյունը աշխատավորներին մոբիլիզացնում ու կազմակերպում է նախատեսված պլանները կենսագործելու համար: Իններորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու և գերակատարելու, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը արժանավայել դիմավորելու համար ծավալված համաժողովրդական մրցությունը վառ կերպով վկայում է, որ ՍՄԿԿ քաղաքականությունը վայելում է լայն մասսաների անսահման աջակցությունը, հանդիսանում է նրանց ոգեշնչման և անձնուրաց աշխատանքի աղբյուր:

Մեր լենինյան կուսակցությանն են հառել իրենց հայացքները ամբողջ մարդկությունը, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության ու սոցիալիզմի համար մղվող պայքարի բոլոր մարտիկները: Իր գաղափարախոսությամբ, կառուցվածքի իր տիպով, գործունեության բնույթով լինելով խորապես ինտերնացիոնալ, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը հանդես է գալիս որպես մեկ միասնական ամբողջի անխզելի բաղկացուցիչ մաս, որպես միջազգային կոմունիստական շարժման մարտական ջոկատը: Նա անհողդողդ կանգնած է պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքսիստական-լենինյան փորձված սկզբունքների վրա, արժանավայել կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը համաշխարհային ազատագրական շարժման հանդեպ, ըստ ամենայնի աջակցում սոցիալիստական երկրների համագործակցության, միջազգային կոմունիստական շարժման շարքերի համախմբմանը:

Կոմունիստական կուսակցությունը բարձրագույն ձևի հասարակական-քաղաքական կազմակերպություն է, նա ղեկավարում է սովետական ժողովրդի ստեղծարար վիթխարի գործունեությունը, վերջինիս հաղորդում կազմակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ: Մեծ Լենինի ստեղծած կուսակցությունը մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճն է: Նա անդրդվելիորեն և սրբությամբ է պաշտպանում լենինյան գաղափարական և կազմակերպական սկզբունքները, բարձր է ծածանում լենինյան կուսակցականության դրոշը: Իր ամբողջ պատմության ընթացքում կուսակցությունը բացառիկ նշանակություն է տվել սեփական շարքերի անաղարտությանն ու որակական կազմի բարելավմանը: Նա իր մեջ ներառնում է այն ամեն լավագույնը, որ կա ժողովրդի մեջ: Նրա շարքերում են գտնվում առավել գիտակից բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները: Դրանք սովետական երկրի բոլոր ազգությունների ու ժողովուրդների որդիներն ու դուստրերն են, որոնք հետևողականորեն, խոր համոզվածությամբ պայքարում են կուսակցության իդեալները ռեալ իրականություն դարձնելու համար: Կոմունիստական կուսակցությունը միասնական ծրագրով և միասնական կանոնադրությամբ ղեկավարվող կոմունիստ ինտերնացիոնալիստների միասնական մարտական միություն է, միահամուռ կենտրոնացած կազմակերպություն:

Արդի պատմական փուլը բնորոշվում է կոմունիստական կուսակցության որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի է՛լ ավելի աճմամբ: Դա պայմանավորված է մեր կյանքի ամբողջ ընթացքով, երկրում սոցիալ-քաղաքական վերափոխությունների անընդհատ մեծացող մասշտաբներով ու տեմպերով: Իններորդ հնգամյակում կուսակցությունը պետք է հսկայական աշխատանք կատարի նյութական ու հոգևոր միջոցների հետագա մոբիլիզացման ուղղությամբ, շատ բարդ խնդիրներ լուծի տնտեսական, պետական, հասարակական կյանքի կանայան ասպարեզներում:

Ընկ. Լ. Ի. Բրեժնևը Կենտկոմի պլենումում ընդգծեց, որ կուսակցության ղեկավար դերը վերացական հասկացություն չէ: Դա հենց մեր կյանքն է, կոմունիստական ավանգարդի անխզելի օրգանական կապը ամբողջ ժողովրդի, երկրի բոլոր գործերի, պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների հետ: Կուսակցությունը կոորդինացնում և ուղղություն է տալիս դրանց գործունեությանը, մասսաներին կազմակերպում է, ոգեշնչում հանուն կոմունիզմի մղվող պայքարում: Հասարակական զարգացման ամբողջ ընթացքը, կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի իրականացումը նորանոր պահանջներ են ներկայացնում կուսակցության ղեկավար գործունեությանը, բոլոր կոմունիստներին:



Որքան ավելի լայն է ստեղծարար գործունեության թափը, որքան ավելի խոշոր են այն պրոբլեմները, որոնցով զբաղվում է կուսակցությունը, այնքան ավելի է մեծանում յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի դերը, այնքան ավելի բարձր է նրանց պատասխանատվությունը կուսակցության և ժողովրդի առաջ: Ավանգարդի դերը կատարել կարելի է միայն այն ժամանակ և միայն այն դեպքում, երբ բոլոր կոմունիստները ակտիվ լինեն, հասկանան իրենց սեփական դերը, դրա իմաստն ու նշանակությունը՝ թե՛ կուսակցության մեջ, թե՛ հասարակությունում, երբ նրանք պրակտիկայում, աշխատանքում, կենցաղում և այլուր հմտորեն իրականացնեն ու պաշտպանեն մեր կուսակցության գիծը, նրա որոշումները: Միշտ և ամենուրեք կոմունիստները պետք է հիշեն կանոնադրության պահանջը՝ լինել ավանգարդում:

Մեր կուսակցությունն իր պատմական ուղու բոլոր փուլերում, հաստատակամորեն հետևելով լենինյան ցուցումներին, հոգ է տարել՝ է՛լ ավելի պանծացնելու կուսակցության անդամի կոչումը: Լենինյան այդ պատգամը անհրաժեշտ է հիշել և անշեղորեն ղեկավարվել դրանով կուսփաստաթղթերի փոխանակման աշխատանքի ընթացքում:

Կուսփաստաթղթերի փոխանակության կարևորության վրա ուշադրություն հրավիրելով, ընկ. Լ. Ի. Բրեժնևը մատնանշել է, որ չի կարելի այն հանգեցնել կուտ տեխնիկական աշխատանքի, միաժամանակ պետք է նկատի ունենալ, որ դա կուսակցության զտում էլ չէ: Անցյալում անցկացվող կուսակցական զտումները նպատակ ունեին վճռականապես ազատվել դասակարգայնորեն խորթ և թշնամական տարրերից: Երկրի ներսում դասակարգային պայքարի պայմաններում դա անհրաժեշտ միջոց էր՝ ամրապնդելու կուսակցությունը, բարձրացնելու նրա մարտունակությունը: Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ երկրում տեղի ունեցած արմատական փոփոխությունները վերացրին այն պատճառները, որոնք առաջացնում էին կուսակցության մասսայական զտումների անհրաժեշտությունը: Արդի պայմաններում կուսակցությունը կարող է իր շարքերն անաղարտ պահել առանց նման միջոցների դիմելու: Կուսակցական կազմակերպությունները սիստեմատիկաբար ազատվում են նրանցից, ովքեր խախտում են ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը, արատավորում կոմունիստի բարձր կոչումը: Չպետք է տարակուսել, որ փաստաթղթերի փոխանակումը նախապատրաստելու և անցկացնելու ժամանակաշրջանում կուսակցական կազմակերպությունները չեն նվազեցնի իրենց պահանջկոտությունը և, ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան, կազատվեն նրանցից, ովքեր արժանի չեն կրելու կուսակցության անդամի բարձր կոչումը: Բայց այդ բանն անել անհրաժեշտ է սովորական կարգով, չթույլատրելով կուսակցության զտման որևէ նշույլ իսկ:

Կուսակցական շինարարության բնագավառում կուսակցության գիծը, ինչ-
պես դա պարզ ու հստակ ձևակերպված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումնե-
րում, ուղղված է կուսակցական ղեկավարման մեթոդների կատարելագործմանը,
կուսակցական կյանքի լենինյան նորմերի խստիվ պահպանմանը, կուսակցա-
կան շարքերի է՛լ ավելի համախմբմանն ու մասսաների հետ նրա կապերի ամ-
րապնդմանը, կոմունիստների գաղափարական համոզվածության դաստիա-
րակմանը, կուսակցության ծրագրի և կանոնադրության պահանջների կատար-
ման համար նրանց պատասխանատվության բարձրացմանը: Համագումարն
այդ նպատակով մշակել է միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որի բաղկա-
ցուցիչ մասը ՍՄԿԿ անդամների կուսփաստաթղթերի փոխանակությունն է, որը
պետք է նպաստի բոլոր կուսակցական կազմակերպությունների գործունեու-
թյան բարելավմանը, համագումարում առաջադրված տնտեսական և կուլտու-
րական շինարարության խնդիրների կենսագործման բնագավառում նրանց
դերի ուժեղացմանը: Անհրաժեշտ է կուսփաստաթղթերի փոխանակությունը
լիովին օգտագործել ներկուսակցական կյանքի է՛լ ավելի ակտիվացման, մաս-
սաների գաղափարական-դաստիարակչական ողջ աշխատանքի մակարդակի
բարձրացման համար:

Անհրաժեշտ է յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում ստեղծել փոխադարձ բարձր պահանջկոտության, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտ, հաստատակամորեն հետևել, որ բոլոր կոմունիստներն աննահանջ կատարեն կանոնադրական պահանջները, լիովին իրականացնեն իրենց առաջատար դերը արտադրության մեջ և հասարակական-քաղաքական կյանքում, բարեխղճորեն վերաբերվեն կուսակցական հանձնարարություններին, խորապես տիրապետեն մարքս-լենինյան տեսությանը, սովետական օրենքների, կոմունիստական բարոյականության նորմերի և սոցիալիստական հանրակեցության կանոնների կիրառման օրինակ ծառայեն:

Կուսփաստաթղթերի փոխանակման ամբողջ աշխատանքը հարկավոր է կազմակերպել այնպես, որ դա բարձրացնի կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի ակտիվությունը: XXIV համագումարում նշվեց, որ մեզանում դեռևս կան կոմունիստներ, որոնք իսկական քաղաքական մարտիկներ չեն, իրենց պասսիվ են պահում: Կուսակցությունը չի կարող հաշտվել պասսիվության, անտարբերության, ապաքաղաքականության հետ: Եթե դու կոմունիստ ես, ասվում էր համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ապա քո պարտքն է չընկրկել դժվարությունների առաջ, չհամաձայնել հետամնաց տրամադրություններին, այլ լինել կուսակցության գիտակից և ակտիվ մարտիկ:

Կուսփաստաթղթերի առաջիկա փոխանակումը պետք է նպաստի կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների կազմակերպական ու քաղաքական աշխատանքի ուժեղացմանը՝ էկոնոմիկայի, ժողովրդի բարեկեցության վերելքի, հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման բնագավառներում համագումարի նախատեսած ծրագրի կենսագործման համար: Հենց այդ է առաջիկա աշխատանքի էությունը, նրա գլխավոր խնդիրը:

ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների հիման վրա բոլոր կուսակցական կազմակերպություններում աշխատանք է ծավալվում կուսփաստաթղթերի փոխանակումը նախապատրաստելու համար: Դրա հետ կապված հարցերը քննարկվեցին կուսակցության Կենտկոմի հունիսի 23-ին կայացած խորհրդակցությունում, որի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ Ա. Պ. Կիրիլենկոն, Մ. Ա. Սուսլովը:

Խորհրդակցությանը մասնակցեցին միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների և մարզկոմների կուսակցական-կազմակերպական աշխատանքի բաժինների վարիչները, ՍՄԿԿ Կենտկոմի ապարատի, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության, զինված ուժերի և սահմանապահ զորամասերի տեսակների քաղվարչությունների աշխատողներ, կենտրոնական թերթերի ու ժուռնալների ներկայացուցիչներ:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշման համաձայն կուսակցական փաստաթղթերի փոխանակման նախապատրաստության մասին զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ի. Վ. Կապիտոնովը:

Խորհրդակցությունում կարծիքների լայն փոխանակություն տեղի ունեցավ այդ կարևորագույն կազմակերպական-քաղաքական միջոցառումն անցկացնելու գործնական հարցերի շուրջը: Նշվում էր, որ կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստումը լուրջ խնդիրներ է առաջադրում բոլոր կուսակցական կազմակերպություններին: Պետք է մեծ և բազմակողմանի աշխատանք կատարել, շատ բան հաշվի առնել և նախապատրաստել: Կուսկազմակերպություններում շատ առաջարկություններ են արվում այդ առթիվ: Հարկավոր է այդ առաջարկություններն ուշադրությամբ հաշվի առնել գործնական միջոցառումներ մշակելիս, որպիսիք կենսագործվելու են մինչև փոխանակումը և փոխանակման ընթացքում:

Կուսակցական կոմիտեների պլենումներում բազմակողմանի քննարկումների հետևանքով, բացի որոշումներից, այնպիսի միջոցառումների կոնկրետ պլաններ են հաստատվում, որոնք պետք է կենսագործվեն կուսփաստաթղթերի



փոխանակման կապակցությամբ: Միութենական հանրապետությունների կոմ-
կուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները նախա-
տեսում են, մասնավորապես, բյուրոներում լսել, թե ինչ է արվում առանձին
շրջանային կուսկազմակերպություններում կանոնադրային պահանջների պահ-
պանման համար կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու,
ներկուսակցական դեմոկրատիան զարգացնելու ուղղությամբ, քննարկել մի
շարք շրջկոմների ու քաղկոմների զեկուցումները այն մասին, թե ինչպես են
նրանք ապահովում կոմունիստների քննադատական դիտողությունների ու
առաջարկությունների իրականացումը: Որոշ կուսակցական կոմիտեներ նախա-
տեսում են գործնական օգնություն ցույց տալ այն սկզբնական կուսկազմա-
կերպություններին, որոնք բավարար ակտիվությամբ չեն աշխատում: Նաև
պլանավորվում է մի ամբողջ շարք դասախոսություններ կարդալ կուսակցու-
թյան ղեկավար դերի աճման, կոմունիստի բարոյական կերպարի, կուսակցա-
կան կյանքի լենինյան նորմերի, կուսակցական պարտքի, կուստոմսի մասին,
դիտել համապատասխան կինոֆիլմեր և այլն:

Կուսակցական կոմիտեներն այստեղ ճիշտ ուղիով են ընթանում, թեև,
հասկանալի է, դրանք միայն նախագծեր են, որոնք կընդլայնվեն, կհարստա-
նան ձեռք բերած փորձով:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կու-
սակցության երկրկոմների և մարզկոմների, իսկ զինված ուժերի կուսկազմա-
կերպություններում՝ քաղվարչությունների և համապատասխան քաղաքական
բաժինների վրա պատասխանատվություն է ընկնում կուսփաստաթղթերի գործ-
նական փոխանակում անցկացնելու համար: Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի ցու-
ցումներից, կուսակցական կոմիտեներն ու քաղմարմինները պարտավոր են
անընդհատ իրենց տեսադաշտում պահել տեղերի աշխատանքը, ստուգել, հաշ-
վետվություններ լսել առանձին կազմակերպություններում փոխանակումը նա-
խապատրաստելու և անցկացնելու մասին, վերացնել բացահայտված վրիպում-
ներն ու թերացումները: Ինչպես հայտնի է, կոմունիստները մշտական հաշվառ-
ման մեջ են գտնվում շրջկոմներում և քաղկոմներում: Այստեղ խիստ անհա-
տական կարգով է անցկացվելու ՍՄԿԿ անդամների կուսփաստաթղթերի փոխա-
նակությունը: Կուսակցության շրջանային, քաղաքային կոմիտեների քարտու-
ղարները, քաղբաժինների պետերը ՍՄԿԿ Կենտկոմի առջև անձնական պատաս-
խանատվություն են կրում՝ նոր կուսակցական տոմսերի ճիշտ հանձնման հա-
մար:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կու-
սակցության երկրկոմների և մարզկոմների պլենումներից հետո տեղի կունե-
նան կուսակցության շրջկոմների ու քաղկոմների պլենումներ, իսկ այնուհետև
սկզբնական կուսակցական կազմակերպություններում, ուր անհրաժեշտ է հատուկ
ուշադրություն դարձնել ժողովների բովանդակության վրա: Կուսակցական
ժողովները կուսփաստաթղթերի փոխանակմանը նախապատրաստվելու հար-
ցում միայն այն ժամանակ կկատարեն իրենց կազմակերպական դերը, երբ
դրանցում ապահովվի սրտաբաց և սկզբունքային վրույց իրենց կազմակերպու-
թյան գործերի, ընդհանուր աշխատանքում նրա յուրաքանչյուր անդամի տեղի
մասին: Անհրաժեշտ է խորապես վերլուծել, թե կուսկազմակերպության աշխա-
տանքի ձևերն ու եղանակները որքանով են համապատասխանում աշխատան-
քային կոլեկտիվի առջև ծառացած խնդիրներին, թե կոմունիստներն ինչպես
են վերաբերվում իրենց արտադրական պարտականություններին, կուսակցա-
կան հանձնարարություններին, ուսմանը, թե նրանք որքանով անշեղորեն են
պահպանում կուսակցական կարգապահությունն ու կուսակցական բարոյակա-
նությունը:

Պրակտիկան ցույց է տալիս, որ ամեն մի ժողովի տոն է տալիս նախ և
առաջ զեկուցումը: Ուստի, հարկավոր է առավելագույն ուշադրությամբ վերա-
բերվել զեկուցումների նախապատրաստմանը, ապահովել, որպեսզի դրանցում
տվյալ կուսկազմակերպության գործողությունների կոնկրետ ծրագիր բովան-

դակվի կուսփաստաթղթերի փոխանակումը նախապատրաստելու և անցկացնելու կապակցությամբ: Այդպիսի պեկուցումը, անկասկած, ժողովին կօգնի գործարար, առարկայորեն քննարկել այդքան կարևոր հարցը, մշակել կոնկրետ միջոցառումներ, որոնք փոխանակման ընթացքում կենսագործվելու են յուրաքանչյուր կուսկազմակերպությունում:

Կարևոր է, որ սկզբնական կազմակերպություններում ժողովների նախապատրաստումն ու անցկացումը մշտապես լինեն կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում: Շատ նպատակահարմար է, որ կուսակցության մարզկոմները, քաղկոմները կամ շրջկոմները ժողովների ընթացքում ամփոփեն կուտակված փորձը, բացահայտեն թերությունները և միջոցներ ձեռնարկեն նման թերությունները կանխելու մյուս կուսկազմակերպություններում:

Կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստության ընթացքում կարելի է և հարկավոր է օգտագործել կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքի բազմազան փորձերն ու միջոցները: Զգալի դեր կարող են խաղալ, մասնավորապես, սկզբնական կուսկազմակերպությունների, շրջկոմների ու քաղկոմների քարտուղարների, բյուրոների անդամների անհատական զրույցները կոմունիստների հետ: Այդ զրույցների ընթացքում կարելի է ուշադիր, օբյեկտիվորեն գնահատել կոմունիստի կյանքում ու աշխատանքում եղած պլյուսներն ու մինուսները: Հարկավոր է հանգամանորեն պատկերացում կազմել այն պատճառների մասին, որոնք կուսակցության որոշ անդամների աշխատանքում ու վարքագծում թերություններ են առաջացնում, պարզել, թե պասսիվությունը որչափով է կախված հենց իրենցից և որչափով՝ սկզբնական կազմակերպությունից, նրա գործունեության մակարդակից, և այդ հանգամանքի հաշվառումով էլ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել: Մի դեպքում, թերևս, հարկավոր է կոմունիստից ավելին պահանջել, մյուս դեպքում՝ օգնել նրան, մի այլ դեպքում՝ մտածել թե ինչպես նրան ներգրավել կուսկազմակերպության ակտիվ կյանքի ոլորտը: Սխալ է պասսիվների կատեգորիային դասել այն ընկերներին, ովքեր լավ են աշխատում արտադրությունում, ճիշտ են պահում իրենց, բայց ինչ-ինչ պատճառներով մշտական հանձնարարություններ չունեն կամ հազվադեպ են հանդես գալիս ժողովներում:

Ոչ մի դեպքում չհաշտվելով պասսիվության, անտարբերության հետ, հարկավոր է նաև խուսափել գործի նկատմամբ ձևական մոտեցումից, շտապողականությունից, թույլ չտալ խոտորումներ: Իսկ ձևականության վնասը տեղ-տեղ արդեն զգացվում է: Կուսակցական տեղական մարմինների աշխատողների, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ ունեցած զրույցներից պարզվում է, որ ոմանք ձգտում են անհատական զրույցներում ընդգրկել առանց բացառության բոլոր կոմունիստներին: Իսկ որոշ տեղերում էլ մտածում են դրա համար ստեղծել հատուկ հանձնաժողովներ, անկետաներ են մշակում: Որևէ իմաստ կա՞ արդյոք դրանում: Իհարկե, ո՛չ: Ոչ մի անհրաժեշտություն չկա զրուցել բառացիորեն բոլոր կոմունիստների հետ, զրույցը չի կարելի կամպանիայի վերածել: Ըստ երևույթին, պետք է զրուցել այն ընկերների հետ, որոնց կուսակցական կազմակերպությունը որոշակի ասելիք ունի:

Կոմունիստի հետ զրուցելիս, կուսկազմակերպությունը կարող է հարցնել նրան, թե ինչու նա կուսակցության ակտիվ մարտիկ չէ, գաղափարա-քաղաքական տեսակետից թույլ է աճում, չի մասնակցում հասարակական կյանքին: Կուսկազմակերպությունը կարող է կոմունիստին նաև հարցնել, թե ինչու է նա վատ աշխատում արտադրությունում, ինչու ճիշտ չի պահում իրեն կենցաղում և այլն: Հասկանալի է, նմանօրինակ պահանջներ կարող են ներկայացվել այն կոմունիստներին, ովքեր դրա առիթը տվել են:

Անհատական զրույցները պետք է նկատելի հետք թողնեն կուսակցության անդամների և թեկնածուների գիտակցության մեջ, նպաստեն նրանց արտադրական ակտիվության աճին, իր կազմակերպության և ամբողջությամբ վերցրած կուսակցության գործերի դրության համար պատասխանատվության բարձրացմանը: Իսկ դրան հասնելու համար հարկավոր է զրույցներին լավ պատրաստվել, մանրամասնորեն պարզել, թե այս կամ այն կոմունիստը ինչու է



ձախողում թույլ տալիս աշխատանքում և վարքագծում: Գործին այդպես մոտենալու դեպքում հեշտ կլինի նրա նկատմամբ ներգործության ուղիներ գտնելը, համապատասխան օգնություն ցույց տալ նրան ուղղելու սխալները և ներգրավվելու ակտիվ աշխատանքի: Հարկավոր է նկատի ունենալ, որ դրական արդյունքների հասնելու համար որոշ կոմունիստների հետ, թերևս, հարկ կլինի զրուցել ոչ թե մեկ, այլ շատ անգամներ:

ՍՄԿԿ Կենտկոմում կայացած խորհրդակցությունում կարծիքների փոխանակության ընթացքում ընկերները խոսում էին այն մասին, թե անցկացվող զրույցներից պետք է հետևություններ անեն ոչ միայն կոմունիստները, այլև կուսակցական կազմակերպությունները, դրանց ղեկավարները: Չէ՞ որ գաղտնիք չէ, որ առանձին կազմակերպություններում որոշումների կատարման հըսկողությունը թույլ է, քիչ է ուշադրություն նվիրվում կոմունիստների առաջարկությունների ու քննադատական դիտողությունների կատարմանը, լուրջ սխալներ են լինում կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցում: Կուսակցական-կազմակերպական և քաղաքական աշխատանքում եղած այդ և մյուս թերությունների վերացումը չի կարող դրական արդյունքներ չտալ բոլոր կոմունիստներին ակտիվ կուսակցական կյանքի ներգրավելու հարցում:

Շատ շրջկոմներ ու քաղկոմներ մտադիր են մանրակրկիտ ուսումնասիրել կուսակցական հանձնարարությունների բաշխման պրակտիկան, պլանավորում են բյուրոներում լսելու, թե առանձին կազմակերպություններում ինչպես են պահպանվում կուսակցական կյանքի լենինյան նորմերը, ինչպիսին է այստեղ կուսակցական ժողովների դերը, նախատեսում են գործնական օգնություն ցույց տալ սկզբնական կազմակերպություններին:

Վերջին տարիների ընթացքում սկզբնական կուսկազմակերպություններում լայնորեն տարածվել է աշխատանքի այնպիսի մի ձև, ինչպիսին կոմունիստների հաղորդումները կամ, ինչպես անվանում են նաև՝ հաշվետվություններն են՝ նրանց կողմից կանոնադրային պարտականությունների, կուսակցական հանձնարարությունների կատարման մասին: Կոմունիստների հաղորդումները լսվում են կուսակցական ժողովներում, բյուրոների և կուսկոմների նիստերում: Հարկավոր է նշել, որ կոմունիստների հաղորդումների քննարկումներն ինքնին կուսակցության անդամների փոխադարձ հսկողության գործարար մի ձև է, նրանց դաստիարակման միջոց: Խելացի օգտագործման դեպքում տվյալ ձևը նպաստում է կոմունիստների արտադրական և հասարակական ակտիվության աճին, կուսակցական կարգապահության ամրապնդմանը, իր վարքագծի, կուսակցական կազմակերպության աշխատանքի համար յուրաքանչյուր կուսակցականի պատասխանատվության բարձրացմանը: Սակայն հաշվետվությունները չի կարելի լսել ձևականորեն, չի կարելի դրանք ինքնանպատակ դարձնել: Երբեմն գլխավոր ուշադրությունը դարձնում են սոսկ քանակական կողմի վրա, նախատեսում են, օրինակ, տարվա ընթացքում լսել կազմակերպության համարյա թե յուրաքանչյուր անդամի: Իսկ որոշ տեղերում էլ կոմունիստներից նույնիսկ գրավոր հաշվետվություններ են պահանջում: Դա, անշուշտ, սխալ, ձևական մոտեցում է գործին:

Փոխանակմանը նախապատրաստվելու ժամանակ հարկավոր է զբաղվել կուսակցական տույժեր ունեցող կոմունիստների հարցով: Դրանց յուրաքանչյուրի հարցը պետք է որոշվի նույնպես խիստ անհատական կարգով, հաշվի առնելով նրանց աշխատանքը և վարքագիծը, կանցանքների բնույթը և տույժերի վաղեմության ժամկետները: Կուսակցության որոշ անդամներ, թեև ստացել են մի քանի նկատողություններ, անհրաժեշտ հետևությունների չեն հանգում, շարունակում են իրենց կանոնավոր չպահել: Մինչդեռ, որոշ տեղերում կուսակցության այդպիսի անդամների նկատմամբ բավականաչափ սկզբունքայնություն չեն ցուցաբերում: Ահա երկու օրինակ այդ առիթով: Կրասնոդարի երկրամասի Մայկոպ քաղաքից ՍՄԿԿ անդամ ընկ. Աստակինը երեք անգամ կուսակցական խիստ պատասխանատվության է ենթարկվել անվայել վարքագծի համար: Անցյալ տարի նրան ևս մեկ անգամ խիստ նկատողություն են հայտարարել հարբած վիճակում կուսակցական տոմսը կորցնելու համար: Մո-

գիլյովի մարզի Մոգիլյով քաղաքից ՍՄԿԿ անդամ ընկ. Կավալկովին չորս անգամ կուսակցական տույժի են ենթարկել, այդ թվում՝ երեք խիստ նկատողություն անձնական քարտում գրանցելով: Բնորոշ է, որ նա այդ տույժերն ստացել է անվայել վարքագիծ դրսևորելու, կուսակցական կարգապահությունը խախտելու և հասարակական օգտակար աշխատանքից խուսափելու համար: Աստանկինն ու Կավալկովը միայն այժմ են վտարված կուսակցությունից: Կուսակցական կարգապահությունը խախտողների նկատմամբ հանդուրժողական փաստերը, դժբախտաբար, եզակի չեն:

Կուսակցական կազմակերպություններում քիչ չեն նաև այնպիսի կոմունիստներ, որոնք արդեն վաղուց ուղղել են թույլ տված սխալները, աշխատում են լավ, ակտիվորեն մասնակցում հասարակական կյանքին, բայց նրանց կուսակցական տույժերը չեն հանվում: Հարկավոր է այդ ամենը ուշադրությամբ քննության առնել և վճռել կուսակցության կանոնադրության դրույթներին խստորեն համապատասխան: Ոմանցից տույժերը կարող են հանվել, ոմանք դեռևս դրան չեն արժանացել և նրանց վրա դրված տույժերը կարող են արտացոլվել նոր փաստաթղթերում, իսկ ոմանք էլ իրենց անվայել վարքագծի համար կարող են ընդհանրապես զրկվել նոր կուստոմս ստանալու իրավունքից:

Ուշագրավ է, որ մեր օրերում աճել է կոմունիստների պահանջկոտությունը միմյանց նկատմամբ: Նրանք չեն հաշտվում կուսակցության որոշ անդամների անգործունության ու անտարբերության հետ, այն բանի հետ, որ նրանք կտրվում են իրենց կազմակերպությունների առօրյա գործերից: Կոմունիստներն ավելի ու ավելի լավ են հասկանում, որ ներկուսակցական դեմոկրատիան օրգանապես կապված է կուսակցական կարգապահության հետ, որ անհրաժեշտ է այն ճիշտ զուգակցել դեմոկրատական ցենտրալիզմի այդ երկու հիմնական դրույթների հետ: Հարկավոր է բոլոր միջոցներով պաշտպանել կուսակցական պահանջկոտությունը, կարգացնել այն:

Ինչպես հայտնի է, կուսակցական կարգապահությունը չի հանգում սոսկ այն բանին, որ հաճախեն ժողովներին և անդամավճարներ մուծեն, թեև դրանք ևս մեծ նշանակություն ունեն: Կոմունիստը պետք է լինի կուսակցության ակտիվ մարտիկը, անմիջականորեն մասնակցի նրա բոլոր գործերին, մշտապես պատասխանատվություն զգա նրա գործունեության համար:

Բոլոր կուսակցական կազմակերպություններում պետք է պատշաճ կարգ ստեղծել կոմունիստների հաշվառման, կուսակցական տնտեսության մեջ: Մինչև կուսփաստաթղթերի փոխանակումը պետք է ամենուրեք կոմունիստների կազմը մանրակնին համեմատել հաշվառման քարտերի հետ, կուսակցական հաշվառման վերցնել նոր եկած բոլոր կուսանդամներին և կուսթեկնածուներին և հաշվառումից հանել դուրս եկածներին: Հաշվառման քարտերի մեջ պետք է մտցվեն ՍՄԿԿ անդամների հաշվառման տվյալների բոլոր փոփոխությունները:

Այդ գործը մեծածավալ է, տքնաջան և պատասխանատու: Այն լուրջ ուշադրություն է պահանջում: Ուստի, փոխանակման ժամանակ հարկ կլինի կուսակցության շրջկոմների և քաղկոմների կուսակցական հաշվառման սեկտորներում, ինչպես նաև մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների միասնական կուստոմսի և կուսակցական վիճակագրության սեկտորներում ավելացնել աշխատողների թիվը: Դրանք պետք է լինեն պատրաստված, լավ հրահանգավորված, համապատասխան կուսկոմիտեների կողմից հաստատված մարդիկ: Հարկավոր է շենքեր գտնել և պատշաճ կերպով կահավորել աշխատանքի համար, ապահովել մաքուր բլանկների անվթարությունը, կազմակերպել կոմունիստների լուսանկարումը, լուծել փոխանակման հետ կապված ուրիշ շատ հարցեր: Միանգամայն ակնհայտ է, որ ինչքան ավելի լավ կատարվի նախապատրաստական ամբողջ աշխատանքը, այնքան ավելի կազմակերպված կանցնի նաև կուսփաստաթղթերի փոխանակումը:

Կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումը, ինչպես ասվեց, որոշել է կուսակցական փաստաթղթերի փոխանակությունն անցկացնել 1973—1974



թվականներին: Ինչպես հայտնի է, նախորդ փոխանակությունը (1954 թ.) անցկացվեց մեկ տարվա ընթացքում: Այն ժամանակ կուսակցությունն ուներ 7 միլիոն անդամ, ներկայումս կուսակցության մեջ ավելի քան 14,5 միլիոն մարդ կա: Քանի որ այժմյան փոխանակման ընթացքում հարկ կլինի զգալիորեն մեծ ծավալի աշխատանք կատարել, հետևապես ավելի տևական ժամկետներ կպահանջվեն: Այդ կարևոր գործում ավելորդ շտապողականություն, հապճեպություն չպետք է լինեն: Կենտկոմի մայիսյան պլենումում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևն ասաց, որ այստեղ մրցություն չպետք է լինի, թե ով ավելի շուտ կվերջացնի այդ աշխատանքը: Գլխավորը՝ այն կուսակցական բարձր մակարդակով անցկացնելն է:

Ինչպես վերևում ասվեց, նոր կուստոմս հանձնելու համար պատասխանատվությունն անմիջականորեն դրվում է շրջկոմների և քաղկոմների քարտուղարների վրա: Կուստոմս ստանալը հուզումնալից պահ է կոմունիստի կյանքում, սովորաբար դա երկար ժամանակ մնում է յուրաքանչյուր մարդու հիշողության մեջ: Շրջկոմներում և քաղկոմներում պետք է հոգ տանեն նոր կուստոմսերի հանձնումը կատարել այնպես, որպեսզի դա դաստիարակչական մեծ նշանակություն ունենա:

Փոխանակման աշխատանքների հիմնական ծանրությունը կընկնի շրջկոմների, քաղկոմների և համապատասխան ռայոնական քաղմարմինների վրա: Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, դրանց կուսակցական-կազմակերպական աշխատանքի բաժինները պետք է հաշվի առնեն այդ և նրանց գործնական օգնություն ցույց տան, մշտապես հետաքրքրվեն, թե ինչ է արվում տեղերում, ժամանակին անդրադառնան այնտեղ ծագող հարցերին:

Անհրաժեշտ է կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստական աշխատանքը սիստեմատիկաբար և բարձր մակարդակով լուսաբանել կուսակցական մամուլում: Հարկավոր է թերթերի և կուսակցական ժուռնալների էջերում կարծիքների փոխանակություն ծավալել ներկուսակցական կյանքի, կուսակցական կազմակերպությունների գործունեության զանազան կողմերը բարելավելու, կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու հարցերի շուրջը, լայնորեն լուսաբանել կուսփաստաթղթերի փոխանակման նախապատրաստության ընթացքը տեղերում: Այդ աշխատանքում կուսակցական մամուլը կարող է օգտագործել բազմազան ժանրեր՝ հոդվածներ և թղթակցություններ, զրույցներ կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ, կոմունիստների նամակները և այլն:

Կուսփաստաթղթերի փոխանակումը կարևոր համակուսակցական գործ է, որը պահանջում է բոլոր կուսակցական կազմակերպությունների ամենասևեռուն ուշադրությունն ու լուրջ ջանքերը: Կասկած չկա, որ այդ գործը կծառայի կուսակցական շարքերի է՛լ ավելի ամրապնդմանը, կուսակցական ազդեցության ուժեղացմանը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում:

«Партийная жизнь», 1972, № 13.



## ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Ն. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԱԶԳԱՅԻՆ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՀՈՒՍԱԼԻ ԱՄՐՈՑԸ

Համաշխարհային հեղափոխական պրոցեսը բարդ է և ունի զարգացման իր օրինաչափությունները։ Դրանց բացահայտումը, օրինակ, հեղափոխական տեսության, ստրատեգիայի և տակտիկայի, հեգեմոն և շարժիչ ուժերի, հեղափոխական շարժման հենարանի ու բազմաթիվ այլ հարցերի պարզաբանումը, սկզբունքային և կարևոր նշանակություն ունի համաշխարհային հեղափոխական շարժման էությունն ըմբռնելու, նրա տարբեր ջոկատների փոխհարաբերությունները լուսաբանելու խնդրում։ Հայտնի է, որ ժամանակակից միջազգային հեղափոխական շարժման մարտական ջոկատներն են՝ համաշխարհային սոցիալիստական սիստեմը, կապիտալիստական երկրների բանվորական և նախկին ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները։ Այս երեք ուժերի ու բաղադրամասերի միասնությունն էլ արդի հեղափոխական պրոցեսի էությունն է։ Սակայն այդ ուժերից յուրաքանչյուրը զարգացման տարբեր աստիճան է, ուստի, համաշխարհային հեղափոխական պրոցեսում գրավում է իր ուրույն տեղը, լուծում տարբեր խնդիրներ։ Այս առնչությամբ, բնականաբար, ծագում է հեղափոխական հիշյալ ջոկատների փոխհարաբերությունների հարցը։ Ստորև կանգ կառնենք միայն մեկ հարցի՝ միջազգային ազատագրական շարժման հենարանի հարցի պարզաբանման վրա։

Ազատագրական շարժման հենարանի կամ ամրոցի հարցը մտացածին չէ և ոչ էլ սուբյեկտիվ գործունեության արդյունք։ Այն ծագել է իմպերիալիզմի շղթան փշրելու և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի հետ միաժամանակ։ Այդ պահից սկսած սովետական հանրապետությունները, իսկ 1922 թվականից, ՍՍՀՄ կազմավորումից հետո, Սովետական Միությունը դարձավ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրական շարժման ոչ միայն դաշնակիցը, այլև ամենահուսալի հենարանը։

Դա բացատրվում է սոցիալիստական հեղափոխության և սովետական պետության բնույթով։ Հոկտեմբերյան հեղափոխությունը լուծեց ոչ թե նեղ



ազգային, այլ համամարդկային խնդիրներ։ Սովետական պետությունը՝ Հոկտեմբերյան հեղափոխության օրինական զավակը, իր արտաքին քաղաքականությունը խարսխեց սոցիալիստական հեղափոխության վեհ իդեալների վրա։ Վ. Ի. Լենինի գլխավորած սովետական կառավարությունն ուղեցույց ընդունեց Կ. Մարքսի հետևյալ կարևոր միտքը. պրոլետարիատը իշխանության գլուխ անցնելով պետք է հասնի այն բանին, որ մարդկանց միջև գործող բարոյականության և արդարության սկզբունքները դառնան բարձրագույն օրենքներ ժողովուրդների հարաբերությունների մեջ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. 16, М., 1960, стр. 11)։

Սովետական կառավարությունն ընդունեց կարևորագույն դեկրետներ, որոնցում սահմանվեցին սովետական պետության արտաքին քաղաքականության սկզբունքները և որոշվեցին ճնշված ժողովուրդների հետ նրա ունենալիք փոխհարաբերությունների հիմունքները։ Այդ առումով առանձնահատուկ իմաստ ձեռք բերեց 1917 թ. նոյեմբերի 8-ի «Հաշտության մասին դեկրետը», որտեղ առաջին անգամ տրվեց անեքսիայի բնորոշումը։ Սովետական կառավարությունը հանդես եկավ իմպերիալիստական պետությունների գաղութարարական, անեքսիոնիստական քաղաքականության դեմ ու պաշտպանեց Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի գաղութային կախման մեջ գտնվող ժողովուրդների շահերը։

Սովետական կառավարությունը դատապարտեց ժողովուրդներին միմյանց դեմ գրգռելու քաղաքականությունը և հռչակեց բոլոր ժողովուրդների իրավահավասարության և ինքնուրույնության սկզբունքները։ Դիմելով պարսիկներին, արաբներին, հնդիկներին և Արևելքի մյուս ժողովուրդներին, սովետական կառավարությունը նշում էր. «Դուք ինքներդ պետք է դառնաք Ձեր երկրի տերը։ Դուք ինքներդ պետք է Ձեր կյանքը տնօրինեք ըստ Ձեր ցանկության։ Դուք դրա իրավունքը ունեք, քանի որ Ձեր ճակատագիրը Ձեր սեփական ձեռքերումն է» («Документы внешней политики СССР», т. I, М., 1957, стр. 35)։

Պատմության մեջ առաջին անգամ մեծ պետությունը հանդես էր գալիս ոչ թե նվաճողի ու ստրկացնողի, այլ ազատարարի և բոլոր մեծ ու փոքր ժողովուրդների իրավունքների հավասարության պաշտպանի դերում։

Հիմք դրվեց բոլորովին նոր տիպի արտաքին քաղաքականության, որը լավ էին ըմբռնում Ասիայի և Աֆրիկայի ճնշված ժողովուրդներն ու նրանց քաղաքական առաջնորդները։ Այն հանգամանքը, որ նախկին ռուսական կայսրության փոխարեն ասպարեզ էր իջել սովետական պետությունը, բոլոր ճնշված ժողովուրդներին ազգային անկախություն տալու իր պահանջով, խթանում էր ազգային-ազատագրական շարժումները, ճնշված ժողովուրդներին հույս ու հավատ ներշնչում սեփական ուժերի հանդեպ, վստահությամբ տոգորում ապագայի նկատմամբ։

Վ. Ի. Լենինը գիտականորեն հիմնավորեց պրոլետարիատի դասակարգային պայքարի և ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների միասնության ու փոխադարձ աջակցության անհրաժեշտությունը։ Նա ելնում էր այն բանից, որ «Սոցիալական հեղափոխությունը չի կարող այլ կերպ տեղի ունենալ, քան իբրև մի դարաշրջան, որ միացնում է պրոլետարիատի քաղաքացիական կռիվը բուրժուազիայի դեմ առաջավոր երկրներում և մի ամբողջ շարք դեմոկրատական ու հեղափոխական, այդ թվում ազգային-ազատագրական շարժումներ, չզարգացած, հետամնաց և ճնշված ազգերի մեջ»

(Երկեր, հ. 23, էջ 67)։ Այլ կերպ ասած, պրոլետարիատի սոցիալիստական շարժումը և գաղութների ժողովուրդների ազատագրական պայքարն աշխարհի վերակառուցման հեղափոխական պրոցեսի բաղադրիչ մասերն են։ Ահա թե ինչու Լենինը գտնում էր, որ սովետական պետությունը պետք է հնարավոր ամեն աջակցություն և օգնություն ցույց տա գաղութային և կախյալ երկրների ազատագրական շարժմանը, իսկ վերջինս, եթե ուզում է միջազգային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում հասնել հաջողության, պետք է ապավինի սովետական պետությանը որպես իր բնական դաշնակցի։ Ժամանակակից ազատագրական հեղափոխական այդ երկու ուժերի դիալեկտիկական կապի անհրաժեշտությունը Վ. Ի. Լենինը հստակ ձևակերպեց Արևելքի կոմունիստական կազմակերպությունների համառուսական երկրորդ համագումարում ունեցած ելույթում։ «...Արևելքի ժողովուրդների այս հեղափոխական շարժումը,— հայտարարեց Վ. Ի. Լենինը,— կարող է այժմ հաջող զարգացում ստանալ, կարող է այն լուծում ստանալ ոչ այլ կերպ, քան անմիջականորեն կապվելով մեր սովետական հանրապետության հեղափոխական պայքարի հետ՝ ընդդեմ միջազգային իմպերիալիզմի» (Երկեր, հ. 30, էջ 174)։ Այսպիսով, երբ 1922 թվականին կազմավորվեց ՍՍՀՄ-ը, նրա արտաքին քաղաքականության սկզբունքները, ինչպես և վերաբերմունքը ճնշված ժողովուրդների ազատագրական շարժման նկատմամբ, հիմնովին մշակված ու ձևակերպված էին։

Սովետական Միության կազմավորումը պատմական նշանակություն ունեցավ ո՛չ միայն նրա կազմի մեջ մտած ազգերի, այլև ողջ աշխարհի, այդ թվում նաև գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների համար։ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման, մեր ժողովուրդների ընդհանուր ջանքերով զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման, ազգային բարդագույն հարցի լուծման սովետական փորձը համաշխարհային ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է սոցիալական ու ազգային ազատագրության բոլոր մարտիկներին» (տե՛ս «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, Երևան, 1972, էջ 24)։ Սովետական Միությունը ճանաչեց ազգային-ազատագրական շարժումների օրինական լինելը և իր ինտերնացիոնալ պարտքը համարեց բազմակողմանի ու բազմաբնույթ օգնություն ցույց տալ ճնշված ժողովուրդներին՝ իմպերիալիզմի գաղութային լուծը թոթափելու և ազգային անկախություն նվաճելու համար։ ՍՍՀՄ վարած հետևողական հակաիմպերիալիստական քաղաքականությունը և ազգային-ազատագրական շարժումների նկատմամբ բարենպաստ դիրքորոշումը, ինչպես նաև հզոր տերություն լինելը Սովետական Միությանը դարձրին միջազգային հեղափոխական ազատագրական շարժման ամենահուսալի ամրոցը և հավատարիմ դաշնակիցը։ Վերոհիշյալից հետևում է, որ ամրոցի հարցը լուծվել է ոչ թե մերկ հրամանով կամ որևէ քաղաքական գործչի, թեկուզ և ականավոր ու անառարկելի հեղինակություն վայելող, ցանկությամբ, այլ բնականոն ընտրությամբ։

Ի՞նչ պետք է հասկանալ հենարան կամ ամրոց հասկացություն ասելով, ինչպե՞ս է Սովետական Միությունն իրականացրել ու իրականացնում իր այդ պատասխանատու և պատվավոր դերը։ Հենարան լինել չի նշանակում իմպե-



րիալիստական տերությունների դեմ արհեստականորեն խռովություններ և ելույթներ հրահրել գաղութներում ու կախյալ երկրներում։ Երբ Վ. Ի. Լենինը նշում էր, որ Արևելքի ժողովուրդների հեղափոխական շարժումը կարող է հաջող զարգացում և լուծում ստանալ՝ անմիջականորեն կապվելով մեր սովետական պետության հեղափոխական պայքարի հետ, ապա նա բնավ նկատի չուներ այդ երկրները հեղափոխություն արտահանել։ Դա հակասում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին։ Ֆ. Էնգելսը, դեռևս 1882 թ. սեպտեմբերի 12-ին, Կարլ Կաուցկուն ուղղած իր նամակում հետևյալ ուշագրավ միտքն է հայտնել, որը սկզբունքային նշանակություն ունի մարքսիզմ-լենինիզմի դիրքն այս կարևոր խնդրում ճիշտ հասկանալու համար։ «Միայն մի բան անկասկած է,— գրում է Ֆ. Էնգելսը,— հաղթական պրոլետարիատը չի կարող ոչ մի օտար ժողովրդի վզին ոչ մի երջանկացում փաթաթել՝ դրանով չխարխլելով իր սեփական հաղթանակը» (К. Маркс, Ф. Энгельс, Избранные письма, М., 1953, стр. 357)։ Էնգելսի այս միտքը միշտ եղել է սովետական պետության արտաքին քաղաքականության կարևոր սկզբունքներից մեկը։ Սովետական Միությունը, դեմ լինելով հակահեղափոխության արտահանմանը, դեմ է նաև հեղափոխության արտահանմանը։ Մարքսիզմ-լենինիզմը ելնում է այն բանից, որ հեղափոխական, այդ թվում նաև ազգային-ազատագրական շարժումները, կարող են առաջանալ և զարգանալ, եթե առկա են օբյեկտիվ պայմաններ։ Իսկական ժողովրդական, ազատագրական շարժումները, որպես կանոն, լինում են ինքնաբուխ և առանց արտաքին հրահրման։

Ուրեմն, երբ ասում ենք, որ Սովետական Միությունն ազատագրական շարժումների հենարանն է, ապա դա պետք է հասկանանք այսպես։

Առաջին, իմպերիալիզմի շղթայի փշրման և սովետական պետության միջազգային ասպարեզ իջնելու շնորհիվ Արևմտյան տերությունները զրկվեցին աշխարհի քաղաքական քարտեզն ինքնակամ ձևելու և Արևելքի ժողովուրդների ճակատագիրն ըստ իրենց հայեցողության տնօրինելու հնարավորությունից։ Այժմ ՍՍՀՄ-ը, աշխարհի ամենահզոր երկրներից մեկը, կանգնած է նրանց դեմ հանդիման և լուրջ խոչընդոտ է իմպերիալիստական պետությունների համար իրենց գաղութարարական ծրագրերն իրականացնելու գործում։ Նրանք ստիպված են հաշվի առնել սովետական դիրքորոշումը, լավ կշռադատել իրենց յուրաքանչյուր քայլը, նախքան գլխակորույս արկածախնդրության դիմելը։ Սովետական Միությունը ծրագրային փաստաթղթերում բազմիցս հայտարարել է և արձանագրել, որ իր համակրանքը ճնշված ժողովուրդների կողմն է և պատրաստ է ամեն ինչ անել նրանց արդար պայքարի հաղթանակի համար։ Այս բոլորի շնորհիվ ստեղծվեց միջազգային միանգամայն բարենպաստ իրադրություն՝ ազգային-ազատագրական շարժումների ծավալման և հաղթանակի համար։ Առանց չափազանցելու կարելի է ասել, որ եթե չլիներ այս գործոնը, ապա հազիվ թե ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարը պատմական համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հասներ այնպիսի վիթխարի նվաճումների, ինչպիսին նա ձեռք բերեց վերջին 50 տարիներին։

Երկրորդ, ճնշված ժողովուրդները, բարձրացնելով ազատագրական պայքարի դրոշն ընդդեմ ուժեղ ու նենգ թշնամու՝ միջազգային իմպերիալիզմի, քաջ գիտակցում են, որ այլևս միայնակ չեն։ Նրանք հենվում են Սովետական Միության բարոյա-քաղաքական աջակցության, տնտեսական օգնության, անհրաժեշտության դեպքում նաև՝ ռազմական օժանդակության վրա։

Սովետական Միությունը, օբյեկտիվորեն ստանձնելով ազատագրական շարժումների հենարանը լինելու ազնիվ միսիան, իր այդ պարտքը կատարում է առանց շահադիտական նպատակների։ Նա չի ձգտում ազատագրված երկրներին կախման մեջ դնել, նրանց պարտադրել իր քաղաքականությունն ու գաղափարախոսությունը։ Սովետական Միության հարաբերությունները Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ազատագրված երկրների հետ հիմնըված են հավասարության, միմյանց անկախությունը, ազգային սուվերենությունը և տերիտորիալ ամբողջականությունը հարգելու և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների վրա։ Այդ հարաբերությունները բխում են իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության դեմ համատեղ պայքարի անհրաժեշտությունից։ Այդ պայքարը լիովին համապատասխանում է ժամանակակից հեղափոխական շարժման բոլոր երեք ջոկատների շահերին։ Այստեղից էլ Սովետական Միության շահագրգռվածությունը՝ պատվար լինել ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարին, քանի որ դա համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասն է և շոշափում է մեր մոլորակի բնակչության ճնշող մեծամասնության շահերը։

Սովետական Միությունը հենարանի իր պարտականությունները տարբեր ժամանակներում զանազան ձևերով է իրականացրել։ Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Սովետական Միության օգնությունը ազատագրական շարժումներին առավելապես բարոյա-քաղաքական բնույթ է կրել։ Դա բացատրվում է նրանով, որ Ասիայի ու Աֆրիկայի երկրների մեծ մասը գաղութային կախման մեջ էր Անգլիայից, Ֆրանսիայից, Հոլանդիայից, Բելգիայից, Իտալիայից, Իսպանիայից, Պորտուգալիայից և այլ երկրներից, զուրկ էր պետականությունից և, հետևաբար, չէր կարող անմիջական կապերի մեջ մտնել Սովետական Միության հետ ու նրանից ստանալ համապատասխան օգնություն։ Սակայն, այդ շրջանում, Սովետական Միությունը նրանց համար գլխավորապես ոգևորիչ օրինակ էր, որը ժողովրդական զանգվածներին վստահություն էր ներշնչում իրենց ուժերի նկատմամբ և խթանում նրանց ազատագրական պայքարը։

Սրանից, իհարկե, չպետք է եզրակացնել, թե Սովետական Միությունը անհրաժեշտ այլ կարգի օգնություն չի ցույց տվել։ Ակնհայտ է Սովետական Միության դերը Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության կողմից իր անկախությունը նվաճելու և ամրապնդելու գործում։ Հանրահայտ է նաև ՍՍՀՄ դերը Աֆղանստանի, ինչպես նաև Իրանի ու մի շարք այլ երկրների անկախության ամրապնդման գործում։ Քսանական թվականներին սովետական մարդիկ զգալի օգնություն էին ցույց տալիս չին հեղափոխականներին. հայտնի են նրանց ծառայությունները 1925—1927 թթ. չինական հեղափոխությանը. Երեսնական թվականներին Սովետական Միությունը Ազգերի լիգայում և նրանից դուրս ակտիվ պայքար ծավալեց գաղութային ժողովուրդների իրավունքների պաշտպանության նպատակով։ Չնայած այս տարիներին ազատագրական շարժումների ձեռք բերած նվաճումները համեստ էին, սակայն դրանք թողեցին իրենց հետքը։ Հող նախապատրաստվեց հակաիմպերիալիստական հետագա պայքարի համար, որը հուժկու թափով ծավալվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, իր մեջ ներառելով ո՛չ միայն ամբողջ Ասիան, այլև Աֆրիկան ու Լատինական Ամերիկան։ Բնորոշ է, որ այս շրջանում ազատագրական շարժումները պսակվեցին հաջողությամբ։ Ասիայի, Աֆրիկայի ու



Լատինական Ամերիկայի մոտ 70 պետություն թոթափեց գաղութային լուծը և ձեռք բերեց ազգային անկախություն։ Փլուզվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այդ երևույթը անխզելիորեն կապված է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հակաիմպերիալիստական ակտիվ քաղաքականության հետ։

Հետպատերազմյան շրջանի պատմությունն անհերքելիորեն հավաստում է, որ Սովետական Միությունը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների համար դարձավ մի հզոր և հուսալի ամրոց նրանց նվաճած ազգային անկախությունը պաշտպանելու և ամրապնդելու գործում։ Հնդկաստանի, Բիրմայի, Իրաքի, Սիրիայի, Լիբանանի, Եգիպտոսի, Չիլիի, Ալժիրի, Գվինեայի, Մալիի և այլ երկրների պետական ղեկավարներն ու քաղաքական գործիչները բազմիցս ընդգծել են այն ուղղակի կապը, որ գոյություն ունի Սովետական Միության բարեկամական քաղաքականության և իրենց երկրների կողմից ազգային անկախություն նվաճելու փաստի միջև։ «Սովետական հեղափոխությունը,— նշել է Հնդկաստանի հանգուցյալ պրեմիեր-մինիստր և Ասիայի ականավոր պետական գործիչ Ջավահարլալ Ներուն,— մեծապես առաջ մղեց մարդկային հասարակությունը և վառեց մի վառ կրակ, որն անհնար է հանգցնել։ Նա դրեց այն նոր քաղաքակրթության հիմքը, դեպի որը կարող է շարժվել աշխարհը»։

Հանրահայտ է, որ թե Նասերը և թե նրանից հետո Անվար Սադաթը, հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի տարբեր բնագավառներում, իրենց երկրի հաղթանակները անխզելի են համարել այն մեծ և եղբայրական օգնությունից, որ Սովետական Միությունը մշտապես ցույց է տալիս Եգիպտոսին։ Սովետական Միության կարևոր դերին և օգնությանը արժանին է հատուցում նաև Չիլիի պրեզիդենտ Սալվադոր Ալիենդեն։

Այսօր Սովետական Միությունը իր պատմական առաքելությունը կատարում է հիմնականում երեք ուղղությամբ։ Առաջին, նա քաղաքական համակողմանի աջակցություն է ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ազատագրված երկրներին՝ պահպանելու և ամրապնդելու իրենց նվաճած քաղաքական անկախությունը։ Այս հարցում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում իմպերիալիստական պետությունների կողմից իրականացվող ինտերվենցիայի կամ դրա վտանգի վիժեցմանը։ Հիշենք թեկուզ Սիրիայի դեմ 1957 թ. նախապատրաստվող ինտերվենցիան, ամերիկյանը՝ Լիբանանում, անգլիականը՝ Հորդանանում՝ 1958 թ., ինտերվենցիայի սպառնալիքները Իրաքի, Կուբայի, Հնդկաստանի, Կիպրոսի դեմ և այլն։

Երկրորդ, Սովետական Միությունը գործնական և արդյունավետ օգնություն է ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի մի շարք երկրների՝ Հնդկաստանին, Բիրմային, Չիլիին, Սիրիային, Իրաքին, Եգիպտոսին, Ալժիրին և այլն, որպեսզի նրանք ամրապնդեն իրեց պաշտպանունակությունը։ Դա վերոհիշյալ երկրների համար կարևոր կռվան է՝ պահպանելու իրենց ազգային անկախությունն ու տերիտորիալ ամբողջականությունը, միջազգային ասպարեզում վարելու ավելի համարձակ ու հետևողականորեն հակաիմպերիալիստական քաղաքականություն։

Երրորդ, Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ազատագրված պետությունները տնտեսապես հետամնաց ու թույլ զարգացած երկրներ են։ Նրանց առջև այժմ ծառացած ամենակարևոր և թերևս ամենադժվարին խնդիր-







ներից մեկը այդ հետամնացությունը հաղթահարելն ու համակողմանիորեն զարգացող, իմպերիալիզմից ու նրա մոնոպոլիաներից անկախ ազգային տնտեսության ստեղծելն է։ Այս բնագավառում ևս Սովետական Միությունը զարգացող երկրներին ցույց է տալիս ամենալայն ու համակողմանի տնտեսական բազմաբնույթ օգնություն՝ արդյունաբերական օբյեկտների նախագծում և կառուցում, արդյունաբերական սարքավորումների մատակարարում, կապի և հաղորդակցության միջոցների շինարարություն, ազգային կադրերի պատրաստում, փորձի հաղորդում, վարկա-ֆինանսական օգնություն և այլն։

Կարելի է բերել բազմաթիվ փաստեր, որոնք վկայում են, թե ինչպիսի սկզբունքայնությամբ և հետևողականությամբ է Սովետական Միությունը կատարում ազատագրական շարժումների ամրոցի իր պարտականությունները։ Նշենք միայն չորսը։

Առաջին ցցուն փաստը Սովետական Միության օգնությունն է Վիետնամի հայրենասիրական ուժերին, որոնք արդեն մի քանի տարի է հերոսաբար պայքարում են ամերիկյան իմպերիալիստների և նրանց կամակատար մարիոնետային ռեժիմների դեմ։ Սովետական Միությունը տնտեսական ու ռազմական աջակցություն է ցույց տալիս Վիետնամի դեմոկրատական հանրապետությանը և Հարավային Վիետնամի հեղափոխական ժամանակավոր կառավարությանը։ Եվ եթե ամերիկյան իմպերիալիստները Վիետնամում պարտություն պարտության ետևից են կրում ու չեն կարողանում ընկճել Վիետնամի հայրենասերների դիմադրական ոգին, ապա դրանում մեծ է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնության նշանակությունը։

Հանրահայտ է Սովետական Միության դերը 1967 թ. հունիսին արաբական երկրների դեմ Իսրայելի սանձազերծած ագրեսիայի դադարեցման գործում։ Այդ պատերազմում Իսրայելի և նրա թիկունքում կանգնած ամերիկյան իմպերիալիստների գլխավոր նպատակն էր՝ տապալել առաջադիմական ռեժիմները Եգիպտոսում ու Սիրիայում, ջախջախիչ հարված հասցնել արաբների ազգային-ազատագրական շարժումներին։ Սակայն ագրեսորներն իրենց նպատակներին չհասան։ Արաբական երկրները, հենվելով Սովետական Միության ամենաակտիվ աջակցության վրա, ծնկի չեկան իսրայելական ռազմամոլների առջև և շարունակում են ընթանալ իրենց նախընտրած ուղիով։ Սովետական Միությունն օգնեց Եգիպտոսին ու Սիրիային լիովին վերականգնելու իրենց ռազմական ուժերը, բարձրացնելու պաշտպանունակությունը։ Իսկ ինչ վերաբերում է արաբական ազգային-ազատագրական շարժումներին, ապա, իսրայելական ագրեսիայից հետո, նրանք ո՛չ միայն վայրէջք չապրեցին, այլ, ընդհակառակը, հասան նոր հաղթանակների։

Սովետական Միության գոյության և ճնշված ժողովուրդներին օգնություն ցույց տալու նրա քաղաքականության հետ են կապված սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման հաջողությունները Լատինական Ամերիկայում։ Դրա փայլուն օրինակներն են Կուբան և Չիլին։ Եթե փոքրիկ Կուբան, ամերիկյան մայր ցամաքի առաջին սոցիալիստական երկիրը, կարողացավ դիմագրավել ամերիկյան իմպերիալիզմի ճնշման սպառնալիքներին և սանձազերծած ինտերվենցիային, ապա դա պետք է բացատրել նաև այն հանգամանքով, որ նա միայնակ չէր։ Կուբայի կողքին կանգնեցին հզոր Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները, որոնք և միջազգային իմպերիալիզմին ստիպեցին հաշտվել Ազատության կղզու գոյության փաստի հետ։



Այժմ մեծ փորձությունների է ենթարկվում Չիլին։ Այստեղ իշխանության գլուխ է անցել ժողովրդական ճակատը, որի կորիզը կազմում են կոմունիստներն ու սոցիալիստները։ Չիլին, հաղթահարելով տնտեսական ու քաղաքական անհամար դժվարություններ, դիմակայելով ներքին հետադիմության և օտարերկրյա, առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմի ճնշմանը, կիրառում է արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ, որոնք ընդգծված սոցիալիստական կողմնորոշում ունեն։ Այս պատմական մեծ էքսպերիմենտը Չիլին իրագործում է՝ հենվելով Սովետական Միության ամենալայն քաղաքական աջակցության և տնտեսա-տեխնիկական ու այլ բնույթի օգնության վրա։

Եվ վերջապես, երախտագիտության խոր զգացումներ առաջացրեց Սովետական Միության գրաված դիրքը Բանգլադեշի Հանրապետության նկատմամբ։ 1971 թ. Հինդուստանի թերակղզում ծագած քաղաքական ճգնաժամի ժամանակ, որ հետագայում վերածվեց ռազմական կոնֆլիկտի, Սովետական Միության համակրանքը սկզբից ևեթ Արևելյան Պակիստանի ժողովրդի կողմն էր, որը հանդես էր գալիս իր ազգային իրավունքները ճանաչելու և հարգելու պահանջով։ Այդ կոնֆլիկտի ժամանակ Արևմուտքի իմպերիալիստական շրջանները սպառնում էին ռազմական ուժով միջամտել Հնդկաստանի և Արևելյան Պակիստանի ներքին գործերին։ Սակայն Սովետական Միությունը վճռականորեն հանդես եկավ արևմտյան որոշ տերությունների այդ փորձերի դեմ, խստորեն նախազգուշացնելով նրանց, որ նման քաղաքականությունը հղի է ծանր հետևանքներով։ Այդ ուժերը հարկադրված էին անսալ սովետական նախազգուշացմանը և հրաժարվել իրենց մտադրություններից։ Դրա շնորհիվ Արևելյան Պակիստանի ազգային-ազատագրական շարժումների համար ստեղծվեցին բարենպաստ արտաքին պայմաններ։ Հնդկաստանի բանակի օգնությամբ Արևելյան Պակիստանի ազատագրական պայքարը պսակվեց հաղթանակով, որի արդյունքը եղավ Բանգլադեշի Հանրապետության ծնունդը։

Այսպիսով, ազգային-ազատագրական շարժումների հաղթանակը և գաղութային սիստեմի փլուզումը անխզելիորեն կապված է Սովետական Միության գոյության և նրա ակտիվ հակաիմպերիալիստական քաղաքականության հետ։ «Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում գաղութների և կիսագաղութների բազմաթիվ ստրկացված ժողովուրդներ պետական ինքնուրույնություն նվաճեցին։ Այդ պայքարում նրանք հենվում էին Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության պաշտպանության վրա» («ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը», էջ 25)։ Հիրավի, հետադարձ հայացք ձգելով վերջին 50 տարում Սովետական Միության անցած ուղու վրա, կարելի է վստահորեն ասել, որ նա, որպես միջազգային հեղափոխական ազատագրական շարժման հուսալի ամրոց, պատվով է կատարել իր պատմական առաքելությունը, որը պրոլետարական ինտերնացիոնալիզմի գործնական կիրառման փայլուն և շատ կողմերով ուսանելի օրինակ է։



# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ՍՍՀՄ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻ ՔԱՆԻ ԱԿՏՈՒԱԼ ՀԱՐՑԵՐ

ԱՐՏՈ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

*Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է. «Մեր բազմազգ երկրում ազգային հարցը հանդես էր գալիս որպես սոցիալիստական հասարակարգի կառուցման արմատական հարցերից մեկը։ Նրա ճիշտ լուծումից էր մեծապես կախված նոր հասարակարգի բախտը»։ Մեր երկրում ազգային հարցը ճիշտ լուծվեց, քանի որ այն բխում էր* պրոլետարական ինտերնացիոնալիզմի *դիրքերից, համապատասխանում ժողովուրդների համերաշխության, հավասարության, եղբայրական համագործակցության ու բարեկամության սկզբունքներին։ ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հիմքում դրված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, որոնց հետևողական իրականացումը հանգեցրեց սովետական բոլոր ժողովուրդների, բոլոր հանրապետությունների տնտեսության ու կուլտուրայի աննախընթաց վերելքին, նրանց վերածննդին։ ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական և կուլտուրական նվաճումները արդյունք են նրանց համախմբված, միացյալ, համատեղ աշխատանքի, նրանց փոխօգնության։*

*Սովետական ժողովուրդների կյանքում այս կես դարի ընթացքում, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, տեղի ունեցան այդ ժողովուրդների նոր որակը պայմանավորող սոցիալական և կուլտուրական վիթխարի վերափոխումներ։*

*Որո՞նք են սոցիալիստական ազգերի և ազգությունների նոր որակության հատկանշական կողմերը։ Արմատապես փոխվել է նրանց սոցիալական կազմը։ Այսօր սովետական սոցիալիստական ազգը բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության, սոցիալ-տնտեսական և գաղափարա-քաղաքական ներդաշնակ միասնություն է, պատմական նոր հանրություն։ Շնորհիվ դրա թե՛ ազգի ներսում և թե ազգամիջյան հարաբերություններում ստեղծվել է բարոյա-քաղաքական միասնություն, որն ազգերի սոցիալիստական կոնսոլիդացման արտահայտությունների որոշակի ձևն է։*

*Ներկայիս սովետական ազգերի նոր որակության մի բնորոշ կողմը ազգերի կուլտուրական աննախընթաց բարձր մակարդակն է, ազգերի ինտելեկտուալ գործունեության ուժեղացումը նյութական և կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում։ Վերջապես, սովետական ազգերի նոր որակությունը բնութագրող հատկանիշներից մեկն էլ այն է, որ նորովի են դրսևորվում սոցիալիզմի նվաճումների և, իհարկե, ամենից առաջ, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների անխորտակելի հիմքի վրա խարսխված նրանց ազգային զգացմունքները, արժանապատվությունը, ինքնագիտակցությունը, ազգային հպարտության զգացումը։ Սովետական ժողովուրդների բարոյական ու հոգեկան կերպարը հարստանում է նոր, ընդհանուր գծերով։ Բոլոր սոցիալիստական ազգերի և ազգությունների մեջ ավելի ու ավելի խոր արմատներ են գցում միասնական ընտանիքի զգացումը, ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության գիտակցությունը։*

*1.*

*Ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման ընթացքում տեղի ունեցած վերափոխումները արդյունք են ազգային հարցի մարքս-լենինյան տեսության և այդ հիման վրա կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության հետևողական կենսագործման։ Ելակետ ունենալով գիտական սոցիալիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնական դրույթներն ազգային հարաբերությունների վերաբերյալ, Վ. Ի. Լենինը, պատմական նոր իրադրության պայմաններում, մշակեց և աշխարհին տվեց ազգային հարցի մի կուռ տեսություն, որը մարմնավորվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության դեկրետներում, ՌԿ(բ)Կ VIII (1919 թ.), X (1921 թ.), XII (1923 թ.) համագումարների որոշումներում։*

*Վ. Ի. Լենինի մահից հետո լենինյան ազգային տեսությունն իր հետագա զարգացումն ստացավ ՍՄԿԿ համագումարների նյութերում ու բանաձևերում։ Այսպես, 1956 թվականին, ի պատասխան հակակոմունիզմի գաղափարախոսների և վտարանդի ազգայնական գրչակների ու նրանց ձայնակցող կոսմոպոլիտական և ազգային նիհիլիստական տարրերի հերյուրանքների, թե, իբր, ՍՍՀՄ-ում տեղի է ունենում «ազգերի վերացում», «ազգերի ձուլում», «ազգերի ասիմիլյացիա», ՍՄԿԿ XX համագումարն ազդարարեց. «Իր ազգային քաղաքականության մեջ կուսակցությունը եղել ու եղնում է լենինյան այն դրույթից, որ սոցիալիզմը ոչ միայն չի վերացնում ազգային տարբերություններն ու առանձնահատկությունները, այլ, ընդհակառակն, ապահովում է բոլոր ազգերի ու ժողովուրդների էկոնոմիկայի և մշակույթի բազմակողմանի զարգացումը և ծաղկումը» (Սովետական Միության կոմունիստական կուսակցության XX համագումարի բանաձևը, Հայպետհրատ, 1956, էջ 26)։ Սա նշանակալի ավանդ էր ազգային հարցի մարքս-լենինյան տեսության և քաղաքականության մեջ։*

*Խոշոր էր ՍՄԿԿ XXII համագումարի (1961 թ.) ներդրումը մեր երկրում արդեն կազմավորված սոցիալիստական ազգերի և ազգությունների զարգացման օրինաչափությունների և տենդենցների վերլուծության ու տեսական ընդհանրացման ոլորտում։*

*Նշանակալից էր ՍՄԿԿ XXIII համագումարի (1967 թ.) առաջադրած խնդիրը՝ պատմական կարճ ժամանակամիջոցում հասնել սովետական հանրապետությունների, բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակների համահարթեցման, որը հիմք կհանդիսանա Սովետական Միության ժողովուրդների բարեկամության, եղբայրական համագործակցության և փոխօգնության է՛լ ավելի ամրապնդման ու ուժեղացման համար։*

## 2.

*Սովետական Միության սոցիալիստական ազգերն այսօր իրենց ծաղկման և մերձեցման ուղին բռնած, կոմունիստական հասարակարգ կառուցող ազգեր են, որոնց առաջընթացը տեսանելի ապագայում սահմանել է ՍՄԿԿ XXIV համագումարը։ Համագումարի բանաձևում նշված է. «Անհրաժեշտ է այսուհետև ևս անշեղորեն վարել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ամրապնդման լենինյան կուրսը՝ ... հետևողականորեն ձգտելով սոցիալիստական բոլոր ազգերի հետագա բարգավաճման և նրանց աստիճանական մերձեցման» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 268)։*

*Համագումարի որոշումներից բխում են շատ հարցեր, որոնց խոր ուսումնասիրությունը սովետական գիտնականների առաջնահերթ խնդիրն է։ Այդ հարցերից առաջինը Սովետական Միության, սովետական պետության հետագա ամրապնդումն է, նրա տնտեսական, քաղաքական, կուլտուրական և պաշտպանական պոտենցիալի հզորացումը։*

*Սովետական առանձին հեղինակներ այն կարծիքին էին և են, թե քանի որ ազգային հանրապետություններում ուժեղանում է բազմազգությունը և հիմնական ազգի տեսակարար կշիռը աստիճանաբար փոքրանում է, ապա մոտակա պատմական հեռանկարում ազգային պետականությունը, ինչպես նաև հանրապետությունների ֆեդերացիան իրենց կսպառեն, կվերանան ազգային հանրապետությունները և ՍՍՀՄ-ը կվերածվի* ունիտար *պետության։ Այդ կոնցեպցիայի հիմքում ընկած են սխալ տեսական դրույթներ, որոնք քննադատեցին սովետական գիտնականները (տե՛ս* Э. В. Тадевосян. О серьозных ошибках в совещании проблем Советского национально-государственного строительства», Вестник Московского университета № 4, 1971, стр. 61—69*), իսկ 1970 թ. մարդահամարի տվյալները միանգամայն հերքեցին այդ սխալ տեսակետը։*

*Սակայն կյանքն առաջ է ընթանում, բարդանում են տնտեսական և կուլտուրական ղեկավարման խնդիրները, աննախընթաց թափով է զարգանում գիտա-տեխնիկական հեղափոխությունը։ Այս պայմաններում կոմունիստական կուսակցությունը՝ ի դեմս ՍՄԿԿ XXIV համագումարի, ընդգծեց, որ «...Կոմունիզմի կառուցման պայքարը անբաժանելի է սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացումից, սովետական պետության ամրապնդումից, հասարակության քաղաքական կազմակերպության ամբողջ սիստեմի կատարելագործումից» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 268)։*

*Այս մեկնակետից էլ պետք է ելնեն ՍՍՀՄ և ազգային հանրապետությունների պետականության հետագա կատարելագործման օրինաչափություններն ուսումնասիրող սովետական գիտնականները։*



## 3.

*Երկրորդ հարցը, որն իր մարմնավորումը գտավ XXIV համագումարի որոշումներում, զարգացող սոցիալիզմի պայմաններում ազգային հարաբերություններում գործող երկու առաջադեմ տենդենցների՝ ծաղկման և մերձեցման տենդենցների, բովանդակության և նրանց հարաբերակցության ճիշտ ընկալումն ու բացահայտումն է։*

*Գիտական գրականության մեջ սովետական առանձին հեղինակներ սոցիալիստական ազգերի ծաղկման մեջ տեսնում են միայն ազգային «յուրահատուկի», «սպեցիֆիկի» զարգացումը, «նստվածք տված» և գերազանցապես անցյալից եկող ազգային ավանդույթների զարգացումն ու դրան հակադրում սովետական ազգերի հասարակական կյանքի ոլորտներում տեղի ունեցող ինտերնացիոնալացման պրոցեսը։ Այսպիսով, զարգացող սոցիալիզմի պայմաններում ազգային զարգացումը, ազգայինը հակադրում են ինտերնացիոնալիստականին։ Որոշ հեղինակներ սոցիալիստական ազգերի մերձեցումը նենգափոխում են «ազգերի ձուլման», «ազգային տարբերությունների վերացման» վերաբերյալ դատողություններով և, այդպիսով, ազգերի ծաղկումը հակադրում ազգերի մերձեցմանը։*

*XXIV համագումարի նյութերը հավաստում են, որ սոցիալիզմի պայմաններում ազգերի ծաղկման բուն իսկ պրոցեսն իր բովանդակությամբ սոցիալիստական է. ժողովրդական տնտեսության զարգացումը՝ սոցիալիստական է, մշակույթի զարգացումը՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական է, դպրոցական ցանցում, բուհերում, տեխնիկումներում ընդգրկված աճող սերնդի դաստիարակությունը՝ սոցիալիստական, կոմունիստական է, արվեստի բոլոր ճյուղերի, ինչպես և գրականության զարգացման ուղին՝ սոցիալիստական ռեալիզմն է և այլն։ Այսպիսով, զարգացող սոցիալիզմի պայմաններում բնավ չի կարելի, ավելին, աններելի է ազգային հասկացությունը «աղքատացնելը», ազգային զարգացման սոցիալիստական բովանդակությունն անտեսելը։ ՍՄԿԿ XXIV համագումարում, ինչպես կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի խորհրդակցությունում (1969 թ.) շեշտվեցին սոցիալիզմի պայմաններում ազգայինի և ինտերնացիոնալիստականի ներդաշնակ միասնության համաշխարհային-պատմական նշանակությունը։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը սահմանեց, որ ազգերի մերձեցումը ազգային տարբերությունների վերացման պրոցես չէ, այլ սոցիալիստական ազգերի միջև տնտեսական, քաղաքական, գաղափարական, կուլտուրական, գիտական և այլ բնույթի կապերի հարաճուն ծավալում ու խորացում, որի շնորհիվ ամրապնդվում է այդ ազգերի տնտեսական և կուլտուրական հանրությունը, այդ ազգերի հոգեկան կերպարի մեջ խորանում և զարգանում են* ընդհանուր գծեր:

*XXIV համագումարը սահմանեց նաև սոցիալիստական ազգերի ծաղկման ու մերձեցման ճիշտ հարաբերակցությունը, շեշտելով, որ սովետական ազգերի մերձեցումը «...տեղի է ունենում... սոցիալիստական ազգային կուլտուրաները զարգացնելու պայմաններում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 100)։*

*Սակայն այստեղ նշվեց նաև, որ սովետական գիտնականները, շարունակելով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիմունքների վրա խարսխված սովետական ազգերի ծաղկման պրոցեսի կոնկրետ ուսումնասիրությունները,*

պետք է առավել ուշադրություն սևեռեն սոցիալիստական ազգերի մերձեցման պրոցեսին, բացահայտեն վերջինիս ձևերը և նրանց ազդեցությունը սովետական ազգերի փոխհարստացման վրա, սովետական ժողովուրդների բարեկամության և եղբայրական համագործակցության ամրապնդման վրա։

4.

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից բխում է սովետական գիտնականների առջև ծառացած նաև հետևյալ խնդիրը՝ խորապես ուսումնասիրել սոցիալիստական շինարարության ստեղծարար քուրայում թրծված մարդկանց նոր պատմական հանրության— սովետական ժողովուրդ հանրության— զարգացման օրինաչափությունները։ Համագումարը շեշտեց, որ սովետական ժողովուրդը բազմազգ հանրություն է և ոչ ազգային, էթնիկական հանրություն, «նոր ազգ», ինչպես սխալ մեկնաբանում են առանձին հեղինակներ։ Միաժամանակ սովետական ժողովուրդ հանրությունը սովետական տարբեր ժողովուրդների հասարակ միագումար կամ խառնակ ամբողջություն չէ։ Այն սոցիալ-քաղաքական և կուլտուրական կենդանի օրգանիզմ է, բաղկացած ծաղկող ու մերձեցող սոցիալիստական ազգերից ու ազգություններից, որոնց մեջ անընդհատ ու շարունակաբար տեղի են ունենում փոխազդեցություններ հոգևոր և նյութական կյանքի բոլոր ոլորտներում։ Սովետական ժողովուրդն իր զարգացման ընթացքում հայտնաբերում է օրինաչափություններ, որոնք պետք է գիտականորեն բացահայտվեն, հետազոտվեն, ուսումնասիրվեն։ Կարելի է նշել թեկուզ հետևյալ օրինաչափությունները. սովետական ժողովրդի սոցիալական կառուցվածքի փոփոխությունը և սոցիալական միասեռության ուժեղացումը, որոնցում առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Դրանք նպաստում են ժողովուրդների բարեկամության, եղբայրական համագործակցության, փոխօգնության ամրապնդմանը, սոցիալիստական դեմոկրատիայի խորացմանը, սովետական ֆեդերացիայի բարձրագույն ձևի՝ ՍՍՀՄ կատարելագործմանը, որի սոցիալական բազան բազմազգ սովետական ժողովուրդն է, ազգամիջյան հարաբերությունների ունիվերսալ միջոցի՝ ռուսաց լեզվի տարածման ոլորտների ընդլայնմանը, ազգային սոցիալիստական հոգեբանության ձևավորման հետ միաժամանակ սովետական ժողովրդի ընդհանրական հոգեբանության ու խառնվածքի ձևավորմանը, սովետական մարդու այն ինքնագիտակցության զարգացմանը, որ նա պատկանում է ո՛չ միայն տվյալ ազգության, այլև բովանդակ սովետական ժողովրդին։

Ի կատարումն ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, սովետական գիտնականները կոչված են ավելի խորագնին հետազոտելու սովետական ժողովուրդ՝ այդ ինտերնացիոնալ հանրության զարգացման օրինաչափություններն ու դրանց բազմակերպ պայմանները։

5.

ՍՄԿԿ XXIV համագումարը մշակեց և հաստատեց սոցիալական փոփոխությունների հեռանկարային ծրագիրը։ Համագումարը նշեց, որ կոմունիստական շինարարության ընթացքում, ծավալվող գիտատեխնիկական հեղափոխության, տնտեսության և աշխատանքի բնույթի մեջ խոր տեղաշարժերի պայմաններում տեղի են ունենում նշանակալի, ուշագրավ սոցիալական փոփոխություններ. հարստանում է բանվորների և գյուղացիների մասնագիտական պատրաստականությունը, նրանց կրթական և կուլտուրական մակարդակը,



աստիճանաբար մերձենում են աշխատանքի ու կենցաղի պայմանները քաղաքում և գյուղում, խտանում մտավոր աշխատանքի մարդկանց, մանավանդ գիտա-տեխնիկական մտավորականության շարքերը, սոցիալիստական շահերի և բանվոր դասակարգի կոմունիստական իդեալների հիման վրա ավելի ու ավելի է ամրապնդվում սովետական հասարակության միասնությունը։ Կոմունիստական կուսակցությունը հաշվի է առնում բովանդակ աշխարհում ծավալվող գիտա-տեխնիկական հեղափոխությունը և առաջադրում է ընդլայնել հիմնարար գիտական հետազոտությունները, լայնորեն օգտագործել գիտության և տեխնիկայի նվաճումները, «...անշեղորեն և պլանաչափորեն իրագործել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերազինումը», նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի հիման վրա «...առավել ակտիվ կիրառել հայրենական և արտասահմանյան առաջավոր փորձը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 265)։ ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ գիտա-տեխնիկական առաջընթացի արագացման հարցերը պետք է մշտապես գտնվեն միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների կենտրոնական կոմիտեների ուշադրության կենտրոնում։

Հարկ է նշել, որ սոցիալական այս փոփոխություններն իրենց անմիջական ազդեցությունն են ունենալու ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման վրա։ Եվ դա հասկանալի է, որովհետև ազգային հարաբերությունները հասարակական հարաբերությունների անքակտելի մասն են։

Վերը նշած սոցիալական փոփոխություններից մեկն է ազգաբնակչության, հետևապես և բոլոր սոցիալիստական ազգերի, սոցիալական միասեռության իրականացումը։ Այստեղից էլ ծագում է մի հարց. ինչպե՞ս կանդրադառնա սոցիալական միասեռությունը սոցիալիստական ազգերի բնույթի վրա։ Գիտական գրականության մեջ ազգային հարցի խոշոր մասնագետները գտնում են, որ, սոցիալական միասեռության իրականացման դեպքում, Սովետական Միության ժամանակակից սոցիալիստական ազգերը կվերածվեն կոմունիստական ազգերի. կուժեղանա նրանց համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, ավելի կմեծանան նրանց փոխադարձ շփումները, եղբայրական համագործակցությունը և փոխհարստացումը կյանքի բոլոր բնագավառներում, ավելի կամրապնդվեն ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնությունը, անխախտ բարեկամությունը, աննախընթաց կերպով կբարձրանա նրանց կրթական, մտավոր և գաղափարական մակարդակը, կվերանան ազգային նախապաշարումները, ազգայնական, ազգային սահմանափակության դրսևորումները և այլն։

Ակներև է, որ ազգային հարաբերություններով զբաղվող սովետական գիտնականները մեծ անելիքներ ունեն։ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ նրանք պետք է հետազոտեն սոցիալական փոփոխությունների ներգործությունը սոցիալիստական ազգերի հետագա ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման վրա։

6.

Անդրադառնալով գաղափարական դաստիարակչական խնդիրներին, ՍՄԿԿ XXIV համագումարը կարևոր նշանակություն տվեց աշխատավորներին սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, բոլոր ազգերի ու ազգությունների նկատմամբ հարգանքի ոգով դաստիարակելու հարցին։ Պետք է ասել, որ սովետական գիտնականների ջանքերի շնոր-

հիվ ստեղծվել է համապատասխան գրականություն՝ նվիրված սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի պրոբլեմներին։ Շարունակելով ուսումնասիրություններն այդ ուղղությամբ՝ սովետական գիտնականները հատուկ ուշադրություն պետք է նվիրեն նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների պրոբլեմին։

Հակակոմունիզմի գաղափարախոսները մեծ հույսեր են կապում սոցիալիստական երկրների համակարգին պատկանող ժողովուրդների շրջանում նացիոնալիզմի թունոտ ազդեցության տարածման հետ։ 1968 թ. ԱՄՆ-ում լույս տեսած Արևելյան Եվրոպան անցողիկ վիճակում կոլեկտիվ աշխատության հեղինակները գրում են. «Նացիոնալիզմը՝ մեր դարաշրջանի ուժեղագույն հուզական ուժը, ամենայն հավանականությամբ կորոշի կոմունիզմի ճակատագիրը» (Е. Д. Модржизкая. **Доктрина «Новедения мостов»**, М., 1969, стр. 15)։

Առաջին անգամ չէ, որ հակակոմունիզմի գաղափարախոսները «ճակատագրական» կանխատեսումներ են անում Հոկտեմբերյան հեղափոխության կրախի, սովետական իշխանության «մոտալուտ անկման», «սոցիալիստական հասարակարգի փլուզման» մասին։ Եվ ամեն անգամ հակակոմունիզմի «սովետոլոգների» կանխատեսումները խայտառակաբար ձախողվել են։ Նույն բախտին են արժանանալու հակակոմունիզմի արդի գաղափարախոսների հույսերը սոցիալիզմի երկրներում նացիոնալիզմի «կատարելիք դերի» վերաբերյալ։

ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում շեշտվեց՝ բոլոր աշխատավորներին «...նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային սահմանափակության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 268) դաստիարակելու կարևոր նշանակությունը։

Կուսակցական փաստաթղթերում, գրականության մեջ վաղուց են բացահայտված նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների ընդհանուր դրսևորումները։ Այդ մնացուկներն արտահայտվում են այնպիսի երևույթներում, ինչպիսիք են՝ ազգային բացառիկությունը, ազգային սնապարծությունը, ազգային եսամոլությունը, անհարգալից վերաբերմունքը ուրիշ ժողովուրդների նկատմամբ, պատմական անցյալի իդեալականացումը և ժողովուրդների պատմության մեջ սոցիալ-դասակարգային հակասությունների անտեսումը կամ քողարկումը, ազգային սահմանափակությունը և այլն։

Սակայն ինչո՞ւ այդ, թեև հազվադեպ, երևույթները կենդանության նշաններ են ցույց տալիս անգամ զարգացող սոցիալիստական հասարակարգի պայմաններում։ Մենք կասեինք ավելին՝ որոշ խավերում, պայմաններում ու հանգամանքներում դրանք նույնիսկ աշխուժանում են։ Գրականության մեջ այդ մնացուկների առկայության պատճառը տեսնում էին հասարակական գիտակցության և հասարակական կեցության անհամաչափ զարգացման մեջ, որ, իբր, հասարակական գիտակցությունը ետ է մնում հասարակական կեցությունից։ Սա, իհարկե, համոզիչ փաստարկ չէր։ Զարգացող սոցիալիզմի պայմաններում նման անհամաչափությունը տիրապետող հասարակական գիտակցության և հասարակական կեցության մեջ կամ հասարակական գիտակցության ետ մնալը հասարակական կեցությունից, որպես օրինաչափություն, չի կարող լինել։ Այս տարի փետրվարին Մոսկվայում ազգային հարաբերություններին նվիրված գիտական կոնֆերանսում այն տեսակետը պաշտպանվեց, որ նա-



ցիոնալիզմի և շովինիզմի մնացուկների առկայության պատճառը պետք է որոնել հասարակական գիտակցության և անհատական, ինդիվիդուալ գիտակցության տարբերության, դրանց անհամապատասխան լինելու մեջ, որ ինդիվիդուալ գիտակցությունը երբեմն ետ է մնում հասարակական գիտակցությունից։ Անհատական գիտակցությունն արգասիք է՝ հասարակության կյանքում տվյալ անհատի ունեցած տեղի ու դերի, նրա անցած ուղու, դեպքերի, երևույթների, նրա յուրահատուկ ընկալումների, նրա ընդհանուր ու քաղաքական մակարդակի և այլն։

Մեր երկրում սովետական հայրենասիրությունը զարգացող սոցիալիզմի պայմաններում խարսխված է սոցիալիզմի և ժողովուրդների բարեկամության վրա։ Սակայն հայրենասիրության զգացումը կամ գիտակցությունը առանձին անհատի մոտ երբեմն պասիվ է, չի շաղկապվում, չի հենվում սոցիալիզմի և ինտերնացիոնալիզմի վրա, կտրվում է նրանցից, լավագույն դեպքում մնում է դեմոկրատական հայրենասիրության շրջանակներում։ Մինչդեռ, սոցիալիստական հայրենասիրությունը, իր մեջ ընդգրկելով դեմոկրատական հայրենասիրության առաջադեմ կողմերը՝ սեր առ հայրենի հողը, բնությունը, մայրենի լեզուն, ազգային ավանդույթները, կենցաղը, պատմական անցյալում ժողովրդի մղած պայքարն իր սոցիալական և ազգային ազատագրության համար, ժողովրդի մշակած կուլտուրայի դեմոկրատական և սոցիալիստական տարրերը և այլն, ամենից առաջ և գերազանցապես ընդգրկում է սերը սոցիալիստական հասարակարգի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական հասարակարգը ղեկավարող և նրա նվաճումները կազմակերպող ու ոգեշնչող ուժի՝ կոմունիստական կուսակցության նկատմամբ։ Սա՛ է սովետական երկրում տիրապետող և շարունակաբար արմատավորվող հասարակական գիտակցությունը։ Առանձին դեպքերում, սակայն, անհատական գիտակցությունը, կարող է չհամընկնել, անգամ հակասել հասարակական գիտակցությանը։

Այստեղից էլ անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել ինտերնացիոնալ դաստիարակության հարուստ փորձը, նոր ուղիներ, ձևեր ու մեթոդներ գտնել ավելի կատարելագործելու աշխատավորական զանգվածների, երիտասարդության ու մտավորականության կոմունիստական դաստիարակության գործը։

ՍՄԿԿ XXIV համագումարը շեշտեց հակակոմունիզմի գաղափարախոսության դեմ պայքարի ուժեղացման անհրաժեշտությունը։ Այսօր հակակոմունիզմի, հակասովետիզմի կառքին են լծված աջ և «ձախ» ռևիզիոնիստները։ Այսօր «քարանձավային» հակակոմունիզմը նույնպես ապրում է իր «զարգացման» նոր փուլը. նա համակերպվել է պատմական նոր իրադրությանը և անցել ազգային հարցի մարքս-լենինյան տեսության ու քաղաքականության կեղծարարության ավելի նուրբ ձևերի ու մեթոդների։

Սովետական գիտնականների պարտքն է՝ ուժեղացնել հակահարվածը հակակոմունիզմի, հակասովետիզմի, ռևիզիոնիստական բոլոր ոտնձգությունների դեմ։



# ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Կոմունիստական կուսակցության բազմաբեղուն գործունեությունը, մասսաների վրա ունեցած մեծ ազդեցությունը ներկուսակցական դեմոկրատիայի լենինյան սկզբունքների անշեղ կենսագործման արդյունք են։ Այդ սկզբունքները հատուկ են միայն կոմունիստական կուսակցությանը և կազմում են նրա գործունեության ու զարգացման անսասան հիմքը։*

*Սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ընթացքում, ժամանակի ոգուն համապատասխան, ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքները զարգացան ու ընդլայնվեցին։ Դրանք ամրապնդված են ՍՄԿԿ Կանոնադրության մեջ, կանոնադրություն, որով առաջնորդվում են բոլոր կուսակցական կազմակերպությունները և նրանց ղեկավար օրգանները։*

*Համաձայն ՍՄԿԿ Կանոնադրության, կուսակցության քաղաքականության հարցերի ազատ ու գործարար քննարկումը առանձին կուսկազմակերպություններում և, ամբողջությամբ վերցրած, կուսակցությունում, կուսակցության յուրաքանչյուր անդամի անկապտելի իրավունքն է։ Կանոնադրական այդ իրավունքի հետևողական իրագործումը բոլոր կոմունիստների մարտունակությունը բարձրացնելու, ներկուսակցական կյանքի, տնտեսական ու կուլտուրական շինարարության հարցերի վերաբերյալ որոշումներ ընդունելու և իրականացնելու գործում նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու կարևոր պայմաններից է։*

*Մեր կուսակցության դեմոկրատական կառուցվածքը սերտորեն կապված է դեմոկրատական ցենտրալիզմի հետ, որը լինելով նրա կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքը, ապահովում է կուսակցական կազմակերպությունների ջանքերի ու գործողությունների միավորումը, կուսակցության միասնական, կենտրոնացված ձևով ղեկավարումը, աշխատավորական լայն մասսաների կազմակերպումն ու մոբիլիզացումը, կուսակցության հետ ունեցած նրանց կապերի ուժեղացումն ու ամրապնդումը։ Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի հետևողական կիրառումն ու նոր պայմանների համեմատ զարգացումը, բոլոր կազմակերպություններին ու կոմունիստներին դրա ոգով*



*դաստիարակումը եղել և մնում է կուսակցության միասնության ու համախմբվածության գլխավոր պայմաններից մեկը, կուսակցության ու նրա անդամների հաջող գործունեության անփոխարինելի միջոցը։ Կյանքը, տասնամյակների հարուստ փորձը ցույց են տվել, որ միայն հեղինակավոր կենտրոնի առկայությունը՝ ի դեմս Կենտկոմի, կարող է սերտորեն միավորել կուսակցության բոլոր կազմակերպությունների գործունեությունը և այն ուղղել միասնական նպատակի իրականացմանը։*

*Սակայն կուսակցության մեջ ղեկավարության կենտրոնացումը ընդհանուր ոչինչ չունի վարչարարության, բյուրոկրատական կենտրոնացման հետ, որը կասեցնում է կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության զարգացումը։ Կոմունիստական կուսակցությանը խորթ են ղեկավարման ձևական, շաբլոն մեթոդը, տեղական առանձնահատկությունների անտեսումը։ Դեմոկրատական ցենտրալիզմը, որպես գերագույն սկզբունք, միաժամանակ ենթադրում է կուսակցական կազմակերպությունների ինքնուրույնությունը տեղական հարցերի լուծման, դրանց առթիվ որոշումների ընդունման գործում, երբ այդ որոշումները չեն հակասում կուսակցության միասնական գծին։ Պահպանելով կենտրոնացված միասնական ղեկավարությունը, դեմոկրատական ցենտրալիզմը լիակատար հնարավորություն է տալիս լայնորեն զարգացնելու տեղական կուսակցական կազմակերպությունների ու կոմունիստների նախաձեռնությունը, ավելի լավ օգտագործելու նրանց ուժերն ու փորձը, ապահովելու տեղական հարցերի լուծման ձևերի ու միջոցների բազմազանությունը, որոնք արագացնում են առաջադրված խնդիրների լուծումը և դրանով իսկ մեծապես նպաստում կուսակցության միասնական քաղաքականության կենսագործմանը։*

*ՍՄԿԿ XXIV համագումարին կուսակցության Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ ասված է, որ «...կուսակցության ուժը, նրա գործունակությունը մեծապես որոշվում է նրանով, թե որքան հետևողականորեն և ճշտորեն է կենսագործվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Մարքս-լենինյան կուսակցության համար հավասարապես վնասակար են ինչպես անարխիստական անկարգապահությունը, որը ներկայացվում է դեմոկրատիայի փոխարեն, այնպես էլ բյուրոկրատական կենտրոնացումը, որը կասեցնում է կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971, էջ 126)։*

*Ելնելով կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանի առանձնահատկություններից, ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացմանը։ Դեմոկրատիզմը, որը բնորոշ է մեր կուսակցությանը, արդի էտապում ձեռք է բերել առաջնակարգ նշանակություն։ Դա, ամենից առաջ, բացատրվում է նրանով, որ զարգացած սոցիալիստական հասարակարգի դեմոկրատիան ընդլայնելու առումով, այժմ սրությամբ է դրվում ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման, կոմունիստների ստեղծագործական ակտիվության բարձրացման անհրաժեշտությունը։ Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումն ու զարգացումը հնարավոր են կուսակցության, նրա բոլոր ղեկավար օրգաններում ու կազմակերպություններում լայն դեմոկրատիայի առկայության պայմաններում միայն, և դա հասկանալի է։ Չէ՞ որ ներկուսակցական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը մի կողմից մեծապես նպաստում*

է աշխատավորական մասսաների հետ կուսակցության ունեցած ամենօրյա կապի ընդլայնմանն ու ամրապնդմանը, նրանց արգասաբեր նախաձեռնության ու ինքնագործունեության ծավալմանը, մյուս կողմից, նրա, որպես քաղաքական ու հասարակական կազմակերպությունների բարձրագույն ձևի, որպես սովետական ժողովրդի փորձված ղեկավարի ու մարտական ավանգարդի՝ հեղինակության բարձրացմանը։

Ներկուսակցական դեմոկրատիան բոլոր կոմունիստներին լայն հնարավորություն է տալիս ակտիվորեն մասնակցելու ղեկավար օրգանների ընտրությանը, բյուրոների, կոմիտեների, պլենումների և մյուս ղեկավար օրգանների կազմում ընտրելու ձեռնհաս, սկզբունքային, հեղինակություն վայելող ընկերների, որոնք ունակ են պատվով կատարելու իրենց վստահված գործը։ Կոմունիստների այդպիսի ակտիվություն դրսևորվեց, օրինակ, հանրապետության կուսակցական կազմակերպությունների անցած հաշվետու-ընտրական ժողովներում։ Դրանք ամենուրեք ընթացան կուսակցության անդամներին, մեր բոլոր աշխատավորներին մոբիլիզացնելու և ՍՄԿԿ XXIV ու ՀԿԿ XXV համագումարի որոշումներն անշեղորեն կենսագործելու նշանաբանով։

Հավանություն տալով կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությանը, կոմունիստները մեծ ակտիվությամբ քննարկում էին իրենց առջև դրված խնդիրները, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում կոլեկտիվի կոնկրետ անելիքները։

Հարցերի գործարար քննարկումը, կոլեկտիվ ստեղծագործական մտքի դրսևորումը հանգեցրեց կոլեկտիվ որոշումների ընդունման, առաջիկա անելիքների մշակման։ Կոմունիստների ակտիվությունը չի սահմանափակվում միայն ժողովներին մասնակցելու և որոշումներ ընդունելու մեջ։ Հիմնականը՝ որոշումների, կուսակցության դիրեկտիվների կատարումն է, որի ասպարեզում առավել մեծ է կոմունիստների դերը, նրանց ակտիվության բարձրացումը։ Ջեռնամուխ լինելով ընդունված որոշման կատարմանը, յուրաքանչյուր կոմունիստ գիտակցում է, որ ինքը պատասխանատու է ո՛չ միայն իր կոլեկտիվի, այլև կուսակցության համար, երկրի բախտի համար։ Դա կուսակցության ամեն մի անդամի պարտականությունն է, որը նրանից պահանջում է աշխատանքում լինել ազնիվ, օրինակելի, առավել կարգապահ, առաջավոր ու նախաձեռնող։ Հենց դրանց գիտակցումով էլ կոմունիստները պրակտիկայում հետևողականորեն կենսագործում են ինչպես սեփական, այնպես էլ վերադաս օրգանների որոշումները։

Կոմունիստների և աշխատավորական բոլոր կոլեկտիվների գործունեության գլխավոր չափանիշը եղել ու մնում է արտադրության արդյունավետության բարձրացումը, նյութական բարիքների արտադրության աճը։ Այս առումով ոգևորիչ են հանրապետության աշխատավորների նվաճումները։ Բավական է ասել, որ 1971 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, հանրապետության արդյունաբերության արտադրանքի համախառն արտադրությունն ավելացավ 9 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 6,1 տոկոսով։ Արդյունաբերության աշխատողները նման հաջողությունների հասան նաև հնգամյակի երկրորդ տարվա առաջին եռամսյակում։ Գործի վերաբերվելով սոցիալիստական պարտավորությունները, նրանք պլանից դուրս



երկրին տվին տասնյակ միլիոնավոր ռուբլու լրացուցիչ արտադրանք, տնտեսեցին մեծ քանակությամբ հումք, նյութեր և էլեկտրաէներգիա։

Չնայած բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, հաջողություններ որոշակի են նաև գյուղատնտեսության ասպարեզում։ 1971 թվականին հանրապետության գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը կազմեց 430 միլիոն ռուբլի, որը 10 տոկոսով ավելի է նախորդ հնգամյակի տարեկան միջին մակարդակից։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների հաջող կատարման շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզները պատվով կատարեցին պետության հանդեպ ունեցած իրենց պարտքը և պլանից դուրս իրացրին 17,2 միլիոն ռուբլու մթերքներ։

Կոմունիստները, նկատի ունենալով ներկայիս տնտեսական շինարարության լայն մասշտաբները, նոր հնգամյա պլանով նախատեսված խոշոր պրոբլեմների լուծման բարդությունը, ավելի են բարձրացնում իրենց ակտիվությունը։ Նրանք որոնում ու գտնում են աշխատանքի արդյունավետ ձևեր ու մեթոդներ, հանդես գալիս նորարարական առաջարկություններով, եղած ռեզերվները գործի դնելու նախաձեռնությամբ։

Ահա նրանցից մեկը՝ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի փականագործ-գործիքագործ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոլանդ Մովսիսյանը։ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից հետո նա առաջիններից մեկն էր, որը մրցության մեջ մտավ, պարտավորվելով աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ իններորդ հնգամյակի իր անձնական առաջադրանքները կատարել երեք և կես տարում, ներկայացնելով առնվազն 35 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ ապահովելով ավելի քան 20 հազար ռուբլու տնտեսական արդյունք, պարապել երկու աշակերտի հետ և օգնել ընկերների տեխնիկական գիտելիքների հարստացմանը։

Ակտիվ, ձեռներեց, ընդհանուրի շահերով ապրող կոմունիստի խոսքը գործից չի տարբերվում։ Վերջերս, երբ ամփոփում էին մրցության արդյունքները, պարզվեց, որ Ռ. Մովսիսյանը 4 ամսում կատարել է 6 ամսվա նորմա։ Սա ցցուն, բայց եզակի օրինակ չէ։ Կոմունիստների ակտիվությունը, հայրենանվեր գործերն աչքի են ընկնում ամենուրեք, և դա օրինաչափ է։

ՍՄԿԿ Կանոնադրության պահանջների կատարումը, ներկուսակցական դեմոկրատիայի լենինյան սկզբունքների ընդլայնումը, կուսակցական պրոպագանդայի հաջող կազմակերպումը կուսակցության քաղաքականության մշակմանը և դրա իրագործմանը բոլոր կոմունիստներին մասնակից դարձնելու կարևոր պայման են։ Այդ գործում մեծ է կուսկազմակերպությունների դերը։ Նրանք են, որ պետք է հոգան, որպեսզի կոմունիստները հետևողականորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմին, ուսումնասիրեն և գործնականում կիրառեն կուսակցության քաղաքականությունը, ղեկավար օրգանների դիրեկտիվներն ու որոշումները։

Ներկուսակցական դեմոկրատիան, որպես մեծամասնության կամքի արտահայտություն, չի կարող արդյունավետ լինել առանց բարձր կազմակերպվածության և գիտակցված կարգապահության։ Այստեղից հետևում է՝ որքան զարգանա ներկուսակցական դեմոկրատիան, այնքան բարձր կլինեն կոմունիստների կազմակերպվածությունը և գիտակցական կարգապահությունը, որոնք ինքնին ներկուսակցական դեմոկրատիայի արտահայտությունն են։

Կարգապահությունն իսկական կոմունիստի համար գիտակցված անհրա-

ժեշտություն է, ներքին պահանջ։ Առանց այդպիսի կարգապահության չի լինի և չի կարող զարգանալ ներկուսակցական դեմոկրատիան։ «Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— անբաժանելի է կուսակցական կարգապահության ամրապնդումից», որ «Կարևոր է այսուհետև ևս ամրապնդել կարգապահությունը կուսակցության մեջ, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ անպայման կատարի ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971, էջ 126—127)։

Չնայած այս պարզ ու որոշակի պահանջին, մի քանի կազմակերպություններում դեռևս կան առանձին կոմունիստներ, որոնք չեն արդարացնում իրենց կոչումը, խախտում են աշխատանքային, պետական ու կուսակցական կարգապահությունը։ Օգտվելով կուսկազմակերպության թույլ պահանջկոտությունից և լիբերալ վերաբերմունքից, այդպիսի կոմունիստները սիստեմատիկ կերպով չեն մասնակցում ներկուսակցական կյանքին, պասսիվություն են հանդես բերում և նույնիսկ լքում աշխատանքը։ Դրա տիպիկ օրինակ է Մարտունու շրջանի Զորագյուղի սովխոզի կուսկազմակերպության անդամներ Մ. Սաֆարյանի, Վ. Սարդարյանի, Հ. Ավետիսյանի և Գ. Գասպարյանի վարքագիծը, որոնք գյուղատնտեսական աշխատանքների եռուն շրջանում լքել են գործը և մեկնել հեռավոր վայրեր։

Կուսակցական կարգապահության խախտում էր թույլ տալիս Երևանի 26 կոմիսարների շրջսովետի գործկոմի բնակարանային շահագործման № 2 գրասենյակի կուսկազմակերպության անդամ Վ. Մանուկյանը։ Անտեսելով կուսկազմակերպության պահանջները և կտրվելով կուսակցական կյանքից, նա 10 ամիս անդամավճար չէր մուծել, որի համար էլ կուսկազմակերպության և կուսշրջկոմի բյուրոյի որոշմամբ դուրս համարվեց ՍՄԿԿ շարքերից։

Կարգապահությունը խախտում են ո՛չ միայն որոշ կոմունիստներ, այլև առանձին ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներ, ովքեր չեն ապահովում պետական պլանների կատարումը։ Նրանք մոռանում են, որ պլանի կատարումը բոլորի պարտքն է։

Երբեմն լինում են կարգապահության նաև այլ բնույթի խախտումներ։ Ախուրյանի շրջանի Ազատանի, Մուսայելյանի, Ախուրյանի, Հայկավանի և ուրիշ կուսկազմակերպություններում կոմունիստները խիստ քննադատության են ենթարկել այն սխալ պրակտիկան, երբ «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքը տնտեսություններին բաց թողնելով որևէ պահեստամաս, ձևակերպում է որպես մեքենայի նորոգում և այդպիսով ավելի գումար ստանում տնտեսություններից, զբաղվում աչքակապությամբ ու հավելագրումներով։ Ներելի չէ, երբ Մուսայելյանի կոլտնտեսության մեկ շարժիչի նորոգման դիմաց ձևակերպված է մեկ տրակտորի նորոգում։

Կոմունիստը բոլոր դեպքերում օգտվում է ներկուսակցական դեմոկրատիայի ընձեռած հնարավորություններից, ՍՄԿԿ կանոնադրության տված լայն իրավունքներից։ Բայց իրավունքի հետ միասին նա ունի նաև պարտականություններ։ Այլ կերպ ասած, նա ոչ միայն պահանջող, այլև կատարող է։ Կանոնադրական իրավունքների ու պարտականությունների ճշտորեն իրագործումը բարձրացնում է կոմունիստի, որպես քաղաքական մարտիկի, դերն ու հեղինակությունը։ Այս հանգամանքին ՍՄԿԿ XXIV համագումարը լուրջ ուշադրություն նվիրեց։ «Մեր կուսակցության ուժը,— համագումարում ասաց Լ. Ի.



Բրեժնևը,— կոմունիստների գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության մեջ է։ Այժմ կուսակցությունը ժողովրդին տանում է դեպի ստեղծարար մեծ խնդիրների լուծում։ Նրա բարոյական հեղինակությունը նույնքան բարձր կլինի, որքան բարձր գաղափարական ու բարոյական հատկություններ ունենա յուրաքանչյուր կոմունիստ։

Դժբախտաբար, մեզանում դեռևս կան կուսակցության անդամներ, որոնք իրենց չեն դրսևորում որպես իսկական քաղաքական մարտիկներ։ Հանդիպելով թերությունների և բացասական երևույթների, նրանք ձևացնում են, թե իբր ոչինչ չեն նկատում, բռնում են քաղքենիական դիրք. «Դա ինձ չի վերաբերում, թող այդ մասին մտածեն ուրիշները»։ Պատահում են նաև այնպիսիները, որոնց ակտիվությունը ցուցադրական բնույթ է կրում, նկատի է առնվում արտաքին էֆեկտի համար։ Նրանք ուրիշներից շատ են խոսում այս կամ այն գործը ձեռնարկելու անհրաժեշտության մասին, միշտ և ամենքին ինչ-որ բան են ուսուցանում, ինչ-որ բանի կոչ անում։ Բայց հենց որ գալիս է պրակտիկորեն գործելու ժամանակը, նրանք կարողանում են մի կողմ քաշվել, մնալ ստվերում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971, էջ 127)։

Կուսակցական մասսաները, բնականաբար, դատապարտում են նման երևույթները, որովհետև «Թե՛ աշխատանքում, թե՛ հասարակական կյանքում, թե՛ ուսման մեջ, թե՛ կենցաղում՝ միշտ և ամենուեք, կոմունիստը պետք է մնա կոմունիստ, արժանապատվությամբ կրի մեր լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը» (նույն տեղը, էջ 128)։

●

Ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքներից մեկն էլ կոլեկտիվ ղեկավարությունն է, որն իր արտահայտությունն է գտնում կենտրոնում և տեղերում կուսակցական կոլեկտիվ օրգանների դերի բարձրացման մեջ։

Ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքների, կոլեկտիվ ղեկավարության իրագործման փայլուն օրինակ է տալիս ՍՄԿԿ լենինյան Կենտկոմը։ Ներկուսակցական դեմոկրատիայի հետագա համակողմանի զարգացման, կոլեկտիվ ղեկավարության հիմունքների ընդլայնման համար XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման և համագումարի որոշումների մեջ համապատասխան միջոցներ են նշված, որոնք ամենուր, այդ թվում և մեր հանրապետությունում, արդեն գործի են վերածվում։ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո հանրապետության կուսակցական կազմակերպություններում և նրանց ղեկավար օրգաններում ավելի հետևողականորեն են պահպանվում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները։ Կուսակցության քաղկոմների, շրջկոմների պլենումները, բյուրոների նիստերը, ինչպես նաև սկզբնական կուսկազմակերպությունների ժողովները, կոմիտեների ու բյուրոների նիստերը հիմնականում հրավիրվում են ժամանակին, նախապատրաստված։ Տնտեսական, կուլտուրական շինարարության, ներկուսակցական կյանքի հրատապ հարցերի քննարկումն ու լուծումը կատարվում է կոլեկտիվորեն։

Սկզբնական կուսկազմակերպությունների կոմիտեներից ու բյուրոներից շատ-շատերը սեփական և վերադաս օրգանների որոշումները հաջող կատարելու շնորհիվ, հասնում են լավագույն արդյունքների։ Այսպես, օրինակ, Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկոմիտեն (քարտուղար Սարգսյան), սոցմրցման ծավալման և ստանձնած պարտավորությունների կատար-

ման առթիվ որոշում ընդունելուց հետո, սկզբնական կուսկազմակերպությունների, կուսակցության ակտիվի և տնտեսական ղեկավարների միջոցով մոբիլիզացրեց ամբողջ կոլեկտիվին՝ առաջադրված խնդիրները լուծելու համար։ Մրցության հրապարակայնության, նյութական ու բարոյական խթանումների ճիշտ զուգակցման, առաջավոր փորձի արմատավորման և կարգապահության ամրապնդման միջոցով կուսկոմիտեն հասավ ընդունված որոշման կատարմանը։ Ձեռք բերված լավագույն ցուցանիշների համար կոմբինատի կոլեկտիվը 1971 թվականի առաջին եռամսյակում արժանացավ հանրապետական, իսկ երրորդ և չորրորդ եռամսյակներում՝ միութենական մրցանակի։ Կոլեկտիվը միութենական մրցանակի արժանացավ նաև ընթացիկ տարվա առաջին եռամսյակում։

Կուսակցական կազմակերպության օգնությամբ սոցիալիստական մրցությունում լավագույն արդյունքների են հասել նաև Հրազդանի շրջանի Մեղրաձորի կոլտնտեսության աշխատավորները։ Նրանք 1971 թվականին պետությանը հանձնեցին 7540 ցենտներ միս, 1000 ցենտներ ծխախոտ, կաթի վաճառքի պլանը կատարեցին 110, հացահատիկինը՝ 168 տոկոսով։ Տնտեսության համախառն արտադրանքը կազմեց 854 հազար ռուբլի, իսկ օգուտը՝ 147 հազար ռուբլի։

Ձեռք բերած այդ հաջողությունների համար կոլտնտեսությունը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի ու ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին կարգի դրամական պարգևի։

Կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի հետևողական կիրառումը կարևոր նշանակություն ունի կուսակցության բոլոր օղակների հաջող գործունեության համար։ Համատեղ մշակված որոշումը, որպես կոլեկտիվ կամքի արտահայտություն, պետք է կատարվի համատեղ աշխատանքով, բոլորի ակտիվ մասնակցությամբ։ Դա, իհարկե, բնավ չի բացառում ամեն մեկի պատասխանատվությունը հանձնարարված որոշակի գործի համար։ Անդրադառնալով կոլեկտիվ ղեկավարությանը, Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ քննարկումը, որոշման ընդունումն ընդհանուր է, իսկ պատասխանատվությունը՝ միանձնյա։ Նա ընդգծում էր, որ «Համենայն դեպս և առանց բացառության բոլոր հանգամանքներում կոլեգիալությանը պետք է զուգակցված լինի յուրաքանչյուր անձի անձնական պատասխանատվության ամենաճշգրիտ սահմանումը՝ ճշտիվ որոշված գործի համար» (Երկեր, հ .29, էջ 537)։

Կոլեգիալ ղեկավարության և անձնական պատասխանատվության ճիշտ զուգակցման շնորհիվ շատ ու շատ կուսակցական կազմակերպություններում ապահովվում է որոշումների ժամանակին կատարումը։ Բայց դեռևս կան առանձին կազմակերպություններ, որոնք տարվում են միայն որոշումներ ընդունելով և անտեսում մարդկանց անձնական պատասխանատվության բարձրացումը դրանց կատարման համար։ Բնավ պատահական չէ, որ այդպիսի դեպքերում որոշումները մեծ մասամբ մնում են թղթի վրա, արդյունք չեն տալիս։ Օրինակ, Երևանի կահույքի № 1 ֆաբրիկայի կուսկազմակերպության բյուրոն (քարտուղար՝ Գ. Դավթյան) մի քանի անգամ քննարկել է արտադրանքի որակի բարձրացման հարցը և որոշումներ ընդունել։ Կուսկազմակերպության ժողովն էլ այդ նույն հարցի առթիվ քննարկել է Օրջոնիկիձեի կուսշրջկոմի բյուրոյի որոշումը, հավանություն տվել դրան ու իր հերթին որոշում



ընդունել։ Եվ այսպես, որոշումներ ու դարձյալ որոշումներ, իսկ արտադրանքի որակը արմատապես չի բարելավվում, ֆաբրիկան ետ է մնում։ Դրա հիմնական պատճառը գործի նկատմամբ մի շարք մարդկանց անպատասխանատու վերաբերմունքն է, մարդիկ, որոնք անտեսում են կոլեգիալ որոշման կատարումը։

Նման քիչ փաստեր չկան առանձին շինտրեստներում ու վարչություններում, ուր կոլեգիալությունը չի զուգակցվում ճշգրիտ որոշված գործի համար յուրաքանչյուր անձի պատասխանատվության հետ, որի հետևանքով էլ շատ օբյեկտների կառուցման ժամկետները խախտվում են, իսկ որակի ասպարեզում շարունակվում են աղաղակող թերությունները։ Կարծում ենք, որ այս երևույթները լուրջ անհանգստություն կպատճառեն շինարարության մինիստրությունների ղեկավարներին, որոնք բոլոր միջոցները պետք է ձեռք առնեն շինարարության առթիվ կոլեգիալ կերպով ընդունված որոշումների կատարումն ապահովելու համար։

●

Ներկուսակցական դեմոկրատիայի կարևոր սկզբունքներից են նաև քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որոնց զարգացումը համապատասխանում է կուսակցության գործունեության բնույթին ու նպատակներին, օգնում կոմունիստների ակտիվության բարձրացմանը, դաստիարակմանը, թերությունների ու սխալների ժամանակին բացահայտմանն ու վերացմանը։

Մեր կուսակցությունը միշտ էլ առանձնահատուկ նշանակություն է տվել քննադատությանն ու ինքնաքննադատությանը, որոնք անհրաժեշտ են նրա զարգացման ու շարքերի ամրապնդման համար։

Կուսակցության XXIV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ «Կուսկազմակերպությունների գործունեության մեջ հետագա զարգացում է ստացել քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ թերությունները շտկելու, գործը բարելավելու փորձված մեթոդը։ Կուսակցական կոմիտեները մեծ մասամբ սկսել են ավելի լավ հաշվի առնել կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկները, ուժեղացրել են վերահսկողությունը դրանց իրականացման նկատմամբ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971, էջ 126)։

Ծավալելով քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կուսակցությունն այն ուղղում է ամբողջ ժողովրդի շահերն արտահայտող իր քաղաքականությունը կենսագործելու և գործողությունների միասնությունն ամրապնդելու նպատակին։ Դա բխում է դեմոկրատական ցենտրալիզմի բուն ոգուց։ «Դեմոկրատական ցենտրալիզմի և տեղական հիմնարկների ավտոնոմիայի սկզբունքը,— ուսուցանում է Լենինը,— հենց նշանակում է քննադատության ազատություն, լիակատար ու ամենուրեք, քանի որ դրանով չի խախտվում որոշակի գործողության միասնությունը,— և անթույլատրելիություն որևէ քննադատության, որը խախտում է կամ դժվարացնում կուսակցության որոշած գործողության միասնությունը» (Երկեր, հ. 10, էջ 562)։

Յուրաքանչյուր կոմունիստ գիտե, որ ինքն իրավունք չունի լռությամբ անցնելու թերությունների կողքով, որ պարտավոր է զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, համարձակորեն բացահայտել թերությունները, պայքարել պարադայնության, գոռոզամտության, ինքնահանգստացման,

տեղայնության դեմ, վճռական հակահարված տալ քննադատության ճնշման բոլոր փորձերին, հանդես գալ կուսակցությանն ու պետությանը վնաս հասցնող ամեն տեսակ գործողությունների դեմ։

Քննադատությունը պետք է լինի օբյեկտիվ, ճշմարտացի, գործին օգնող, ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքներին համապատասխանող։ Դժբախտաբար կան առանձին կոմունիստներ, որոնք քննադատության քողի տակ արծարծում են իրենց անձնական շահերը, հրաժարվում շարքային աշխատանք կատարելուց, մեծամտաբար կարծում են, որ իրենք կոչված են միայն ղեկավար պոստերի համար։ Կան նաև այնպիսիք, որոնք անձնական դրդապատճառներից ելնելով, առանց հաստատուն փաստի, ընդհանուր խոսքերով քննադատում, երբեմն էլ զրպարտում են այս կամ այն ընկերոջը։ Դրանով նրանք վարկաբեկում են ոչ միայն անհիմն քննադատվողին, այլև քննադատության կոչումը, որի համար պետք է կուսակցական պատասխանատվության ենթարկվեն։

Լինում է և այնպես, երբ կոմունիստի առողջ, համարձակ ու տեղին քննադատությունը դուր չի գալիս հիմնարկության ղեկավարին. նա դրա մեջ տեսնում է իր հեղինակության նսեմացում, ինքնասիրության վիրավորում, որի համար տարբեր ձևերով ու առիթներով սկսում է քննադատողին ճնշել, որը համարձակվել է իր պետին ասելու, թե աչքիդ վերև հոնք կա։ Ցածրորակ արտադրանք թողարկելու և այդ գործում մեղավորներին պատասխանատվության չենթարկելու համար Գորիսի սպորտային կոշիկների ֆաբրիկայի կուսկազմակերպության ժողովում կոմունիստ Մ. Հակոբյանը քննադատում է ընկերոջ ֆաբրիկայի դիրեկտոր Ժ. Հարությունյանը փոխանակ տեղին քննադատությունից հետևություն անելու, որոշում է հարցը լուծել այլ կերպ. Մ. Հակոբյանին աշխատանքից ազատելու հրաման է արձակում։ Իհարկե, կուսշրջկոմը պաշտպանել է Հակոբյանի իրավունքը, նրան վերականգնել աշխատանքում, բայց փաստը մնում է փաստ, թե ինչպես ձեռնարկության կոմունիստ ղեկավարը կոպիտ կերպով ճնշել է քննադատությունը։ Այստեղ տեղին է հիշեցնել Լ. Ի. Բրեժնևի խոսքերը. «Որոշ ղեկավարների պակասում է զսպվածությունն ու տակտը, քննադատական դիտողությունները ուշադիր լսելու, քննադատությանը ճիշտ վերաբերվելու կարողությունը։ Բայց նա, ով թերագնահատում է քննադատությունը, անտեսում այն, վաղօրոք իրեն դատապարտում է ձախողման» (նույն տեղը)։

Հանդես գալով քննադատությամբ, կոմունիստները ուրիշ նպատակ չունեն, բացի իրենց տեղամասերում՝ արտադրական ձեռնարկություններում ու հիմնարկություններում, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների գործունեության մեջ եղած թերությունների ու բացերի վերացումը, այս կամ այն տեղում նկատվող անօրինականությունների ու չարաշահումների իսպառ վերացումը։ Այդ ոգով էին տոգորված կուսկազմակերպությունների անցած հաշվետու-ընտրական ժողովներում ու շրջանային կուսկոնֆերանսներում կոմունիստների քննադատական դիտողությունները, նրանց առաջարկությունները, որոնք իրենց արտացոլումը գտան որոշումներում ու բանաձևերում։

Կուսակցության շրջկոմները, սկզբնական կազմակերպությունների կոմիտեներն ու բյուրոները հետևել ու հետևում են կոմունիստների քննադատական դիտողությունների կատարմանը։ Այդ ասպարեզում անցած ժամանակամիջոցում զգալի գործ է կատարված, որի շնորհիվ կուսկազմակերպությունները դարձել են ավելի մարտունակ, բարձրացել է կոմունիստների ակտիվությունը և կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, ուժեղացել է տեղական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը։ Դրանք, բնականաբար, տվել են իրենց դրական արդյունքը, որոնք ակնառու են, գոհացուցիչ։



Սակայն, հարկ է ասել, բոլոր տեղերում չէ, որ լուրջ ուշադրություն են նվիրում կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների ժամանակին կատարմանը։ ՀԿԿ Երևանի Սպանդարյանի շրջկոմի վերջերս կայացած պլենումում, օրինակ, մատնանշվեց, որ Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության և առևտրի մինիստրությունները համապատասխան միջոցների չեն դիմում կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները մինչև վերջ կենսագործելու համար։ Դա այն պատճառներից մեկն է, որ թեթև արդյունաբերության առանձին ձեռնարկություններ շարունակում են թողարկել ցածրորակ արտադրանք, որ առևտրի ու հասարակական սննդի ցանցում իսպառ չեն վերացված թերաչափումները, թերակշռումներն ու դրամաշորթությունը։

Անշեղորեն կենսագործելով ներկուսակցական դեմոկրատիայի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները դրանով իսկ ավելի կզարգացնեն կոմունիստների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, ավելի հաջողությամբ կլուծեն իրենց առջև դրված լուրջ ու պատասխանատու խնդիրները։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԵՏԸ

Բ. Ա. ԳՅՈՋԱԼՅԱՆ

ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար

Թումանյանի շրջանն իր բարդ ռելիեֆին ու հողա-կլիմայական պայմաններին համապատասխան, ունի յուրահատուկ բազմաճյուղ գյուղատնտեսություն, որի զարգացման գործում մեծ է մասնագետների դերը։ Նրանք այսոր ծանրակշիռ տեղ են գրավում գյուղի մտավորականության կազմում։ Այժմ շրջանի սովխոզներում, կոլտնտեսություններում և գյուղատնտեսական հիմնարկություններում աշխատում են բարձրագույն կրթությամբ 14 գյուղատընտես, 35 զոոտեխնիկ, 16 անասնաբույժ։ Բացի այդ, բարձրագույն կրթությամբ 5 զոոտեխնիկներ անասնապահության բնագավառումստանձնել են բրիգադավարի պարտականությունը։ Եթե դրան ավելացնենք միջնակարգ-մասնագիտական կրթությամբ տասնյակ ագրոտեխնիկներին, զոոտեխնիկներին ու անասնաբուժակներին, սերմնավորող տեխնիկներին, բուսաբուծության բրիգադավարներին, ապա մասնագետների թիվն ավելի պատկառելի և տպավորիչ կերևա։ Միայն Օձունի սովխոզում աշխատում է 35 մասնագետ, կամ այնքան, որքան տասը տարի առաջ ամբողջ շրջանում։

Մասնագետը տնտեսության կենտրոնական դեմքն է։ Հարկ է այս կապակցությամբ հիշել ուսանողների համամիութենական հավաքում (1971 թ., հոկտեմբեր) Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն կարևոր միտքը, որ սովետական մասնագետն այսօր մի հմուտ կազմակերպիչ է, որն ունակ է գործնականում կիրառելու աշխատանքի գիտական կազմակերպման սկզբունքները։ Նա կարողանում է աշխատել մարդկանց հետ, գնահատում է կոլեկտիվ փորձը, ունկընդրում ընկերների կարծիքին, քննադատաբար արժեքավորում ձեռք բերածը։

Մասնագետները խթանում են հանրային էկոնոմիկայի զարգացումը։ Տնտեսության հաջողությունը պայմանավորված է նաև նրանց հմտությամբ, կազմակերպչական ունակություններով։ Ահա դիպուկ օրինակ մեր պրակտիկայից։ Շնողի և Ճոճկանի սովխոզները հարևաններ են, ունեն միևնույն հողա-կլիմայական պայմանները։ Սակայն, Շնողում հեկտարից մեկ երրորդով ավելի



շատ պտուղ է արտադրվում, քան Ճոճկանում։ Արտադրված պտղի ինքնարժեքը Շնողում զգալիորեն ցածր է Ճոճկանից։ Այս օրինակը հաստատում է, որ այնտեղ, ուր աշխատանքը կազմակերպվում է գիտականորեն, բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և դրան համապատասխան՝ նվազում մթերքների ինքնարժեքը։ Այդ գործում, ինչ խոսք, որոշիչ դեր են կատարում մասնագետները։ Շնողի սովխոզի հաջողությունների մեջ նրանք ունեն մեծ ներդրում, որի մասին կխոսվի ստորև։

Անժխտելի է մասնագետների վճռական դերը գյուղատնտեսության առաջընթացի ապահովման գործում։ Առաջին հերթին նա է նորի ու առաջավորի ոչ միայն ջատագովը, այլև՝ արմատավորողը։ Ահա թե ինչու մենք մեծ կարևորություն ենք տալիս մասնագետների ընտրությանը։ Հատկապես վերջին տարիներին կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հետևողական աշխատանք կատարեցին գյուղատնտեսական արտադրության տեղամասերը համապատասխան մասնագետներով ապահովելու համար։ Բնականաբար, գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների, տնտեսագետների, ինժեներների ակտիվ մասնակցությամբ որոշակիորեն բարելավվել են գործերն ինչպես դաշտավարության ու այգեգործության, այնպես էլ անասնաբուծության բնագավառում։ Պատահական չէր, որ անգամ 1971 թ. անբարենպաստ, ուժեղ երաշտի պայմաններում պահպանվեց հացահատիկի նախորդ տարիների կայուն բերքատվությունը, արտադրության պլանը գերակատարվեց 40 տոկոսով։ Տոշափելի են նաև անասնապահների հաջողությունները։

Կուսշրջկոմը կուսկազմակերպությունների ուշադրությունը բևեռել է մասնագետների դերը ճշտորեն գնահատելու և բարձրացնելու վրա։ Այժմ մեզանում հաստատվել է մի այնպիսի պրակտիկա, երբ մասնագետների նկատմամբ վստահությունն ու հարգանքը զուգորդվում են սկզբունքային պահանջկոտության հետ։ Ստեղծվել է գործարար ու փոխադարձ վստահության բարենպաստ մթնոլորտ, որի շնորհիվ մասնագետներն ավելի լրիվ չափով են դրսևորում իրենց ունակությունները, օգտագործում փորձն ու գիտելիքները։

Մասնագետների հետ տարվող ամենօրյա աշխատանքում շրջկոմը կիրառում է բազմազան ձևեր ու մեթոդներ, որոնք մեծ չափով նպաստում են նրանց քաղաքական ու արտադրական ակտիվության աճին, նախաձեռնության զարգացմանը։ Պարբերաբար կազմակերպվում են շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարների հանդիպումները մասնագետների հետ։ Նրանք մասնակցում են գյուղատնտեսության զարգացման խնդիրների մշակմանն ու դրանց լուծմանը։

Շրջանի գյուղատնտեսության մասնագետներն այժմ ավելի մոտիկից են զբաղվում էկոնոմիկայի հարցերով։ Նրանցից շատերը, գործի գիտակ լինելուց բացի, արտադրության մեջ հանդես են բերում կազմակերպչական ձիրք, կատարում էկոնոմիկական վերլուծություններ, նպաստում տնտհաշվարկի ներդրմանը։ Այդ ամենը բարերար է ներգործում արտադրական գործերի վրա։ Այսպես, Օձունի սովխոզի կազմակերպման առաջին օրից Ռ. Նալբանդյանն աշխատում է որպես գլխավոր տնտեսագետ։ Բարձրագույն ուսումնական հաստատությունում ձեռք բերած գիտելիքները ծառայեցնում է տնտեսության առաջընթացին, հանդես է գալիս խելացի նախաձեռնություններով։ Աշխատանքի և աշխատավարձի հաշվառման մատյանի շնորհիվ նա պարզություն և հստակություն է մտցրել դրամական վճարումների ու ծախսումների մեջ։ Նրա

նախաձեռնությամբ սովխոզում արմատավորվել է տնտհաշվարկը, կիրառվում են արտադրության արդյունավետության բարձրացման միջոցառումներ։ Մի քանի տարի առաջ նա տնտեսական վերլուծությամբ պարզեց, որ մեկ ցենտներ գնովի կերը, սեփական արտադրության կերի համեմատությամբ, 4,5 անգամ թանկ է նստում տնտեսության վրա։ Երրորդ տարին է, ինչ այստեղ հրաժարվել են գնովի կեր ձեռք բերելու պրակտիկայից։ Տնտհաշվարկի ճիշտ իրականացման, խնայողության ռեժիմի կիրառման և մյուս միջոցառումների շնորհիվ տնտեսությունը 1971 թ. փակեց 220 հազար ռուբլի օգուտով։

Բարդ է գյուղատնտեսի մասնագիտությունը։ Նա պետք է տիրապետի գյուղատնտեսական մեքենաներին, լինի համակողմանի զարգացած և, որ ամենակարևորն է, հմուտ կազմակերպիչ։ Այս պահանջները հավասարապես վերաբերում են նաև զոոտեխնիկներին։ Շրջանում աշխատող մասնագետներից շատերը կանգնած են այդ պահանջների բարձրության վրա։ Ճիշտ է, դիպլոմի հետ նրանց հեղինակություն չի տրվել, բայց այն նրանք նվաճում են ամենօրյա քրտնաջան աշխատանքով։ Այդպիսին են Շնողի սովխոզի և Ղաչաղանի կոլտնտեսության գյուղատնտեսներ Կ. Գիգոյանը և Ժ. Հովհաննիսյանը։ Ղաչաղանի կոլտնտեսությունը վերջին տարիներին հացահատիկային կուլտուրաների ամեն մի հեկտարից ստանում է 40—44 ցենտներ բերք։ Ինչո՞վ բացատրել այս հաջողությունը։ Առաջին հերթին նրանով, որ տնտեսության ղեկավարներն ունկնդրում են գյուղատնտեսին, հաշվի առնում նրա առաջարկությունները, օգնում՝ կյանքի կոչելու նրա մտահղացումները։ Այստեղ հետևողականորեն է կիրառվում ցանքաշրջանառությունը, մշակության և պարարտացման աշխատանքները կատարվում են կոմպլեքսային ձևով։ Ժ. Հովհաննիսյանի նախաձեռնությամբ ներդրվել է «Անքիստ—1» ցորենի բարձր բերքատու սորտը, որը լավ քննություն է բռնել, արմատավորվել է ցանքադաշտերի քիմիական եղանակով քաղհանը, ցանքը, մշակությունն ու բերքահավաքը կատարվում են օրացուցային պլանին խիստ համապատասխան։

Հանրածանոթ է հանրապետության վաստակավոր գյուղատնտես Կիմ Գիգոյանի անունը։ Շարքային կոլտնտեսականից նա աճել և արդեն 15 տարի հայրենի գյուղի՝ Շնողի, խոշոր պտղաբուծական սովխոզի գյուղատնտեսն է։ Հայրենանվեր գործ է արել Կ. Գիգոյանը հարազատ տնտեսության բարգավաճման համար։ Երբ նա ստանձնեց գլխավոր գյուղատնտեսի պարտականությունը, տնտեսությունն ուներ ընդամենը 150 հեկտար այգի։ Նրա ակտիվ մասնակցությամբ քարքարոտ ու պապակ հողերը վերածվեցին այգեստանների և այժմ դրանք հասնում են 720 հեկտարի։

Այցելելով «Դղի այգիներ» կոչվող հարյուրավոր հեկտարանոց այգեստանը, զգում ես, որ այստեղ գործել է մասնագետի միտքն ու եռանդը, այստեղ տանտիրոջ ձեռք է դիպել, ու ագրոտեխնիկան իր լիահնչյուն խոսքն է ասել. սովխոզը յուրաքանչյուր հեկտարից 120—125 ցենտներ պտուղ է ստանում։

Ամեն պատեհ առիթով սովխոզի դիրեկտոր Կ. Նորեկյանը նշում է.

— Կիմն անհանգիստ մարդ է, միշտ որոնումների մեջ է։

Եվ նա սկսում է թվարկել բազմահմուտ մասնագետի լավ գործերը. նա էր «Բոլգար» բարձր բերքատու և «Իտալական կարդինալ» վաղահաս խաղողի նոր տնկարկների հիմնման առաջին ջատագովը, տնտեսության սեփական պտղատու տնկարանի ստեղծման նախաձեռնողը։ Այժմ էլ նախապատրաստական աշխատանք է տանում մի նոր արդյունավետ՝ պալմետային (արմավենա-



կերպ) եղանակը այգիներում արմատավորելու համար, որի շնորհիվ պտղի բերքը կաճի երեք և նույնիսկ չորս անգամ։

Սովխոզի ղեկավարը գովեստով է խոսում նաև գլխավոր զոոտեխնիկ Վ. Թունյանի մասին։ Նրա գործադրած ջանքերը լավ պտուղներ են տվել։ Բավական է նշել, որ 1971 թ. կովերի միջին կաթնատվության պլանը գերակատարվել է 250 կգ-ով, ամեն մի ածան հավից ստացվել է 154 ձու. թռչնաֆերման պլանով նախատեսված 390 հազարի փոխարեն, ձվի համախառն արտադրությունը հասցրել է 948 հազար հատի։ Թվերը պերճախոս են, վկայությունը նաև մասնագետի խելացի գործունեության։ Ճիշտ է, տնտեսության կովերը չունեն տոհմային լավ հատկանիշներ, բայց դրանց մթերատվության բարձր ցուցանիշները ձեռք են բերվում զոոտեխնիկական արդյունավետ եղանակների կիրառմամբ. հմուտ զոոտեխնիկի նախաձեռնությամբ հետևողականորեն կիրառվում է կովերի լիակթում, հերթափոխ և գիշերային արածեցում, արհեստական սերմնավորման միջոցով ստեղծվում է տոհմային կորիզ։

Օձունի սովխոզի գլխավոր անասնաբույժ Մ. Պապոյանին մտատանջում էր կովերի անկման հարցը։ Յուրաքանչյուր տարի 40—50 կով էր սատկում՝ կերի հետ ստամոքս թափանցած օտար մարմիններից։ Նա հաջողությամբ կիրառեց մագնիսական զոնդի մեթոդը և անկումները հասցրեց նվազագույնի։ 3—4 տարի առաջ թունավոր լուծի հետևանքով զգալի քանակությամբ հորթ էր սատկում։ Անասնաբույժն առաջարկեց մատղաշներին ջերմուկ խմեցնել։ Արդյունքը գոհացուցիչ էր. գրեթե լրիվին կանխվել են հորթերի անկումները։

Կուսշրջկոմը ձգտում է ամեն կերպ զարգացնել մասնագետների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, աջակցել նրանց՝ առաջավոր փորձը տարածելու գործում։ Ահա այդ բանը հավաստող կոնկրետ մի օրինակ։ Օձունի սովխոզում առաջինն արմատավորվեց կարտոֆիլի և ծխախոտի մեքենայական մշակությունը։ Շրջկոմն այստեղ կազմակերպեց շրջանի տնտեսությունների ղեկավարների, գյուղատնտեսների և մեխանիզատորների մշտական գործող սեմինար։ Գյուղատնտեսները, ցանքից սկսած մինչև բերքահավաքը, Օձունում ուսումնասիրեցին կարտոֆիլի մշակման մեքենայացման եղանակները, որոնք հետագայում կիրառեցին իրենց տնտեսություններում։ Ներկայումս շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում կարտոֆիլի ցանքն ու մշակությունը կատարվում են մեքենաներով։

Օձունի սովխոզի մասնագետները շրջանում «Բեզոստայա—1» հացահատիկի սորտի առաջին արմատավորողն էին։ Այստեղ ստեղծվել է 100 հեկտար տարածությամբ հացահատիկի սերմնատնտեսություն, որտեղից յուրաքանչյուր տարի ստացվում է 4500—5000 ցենտներ էլիտա և առաջին վերարտադրության բարձր բերքատու անքիստ ցորենի սերմացու։

Գյուղատնտեսության մասնագետը կատարում է պետական նշանակություն ունեցող աշխատանք։ Անհրաժեշտ է բոլոր պայմաններն ստեղծել, որպեսզի նրա գործունեությունը լինի արգասաբեր։ Ուստի, մենք կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն ենք համարում նրանց համար ապահովելու աշխատանքային ու կենցաղային բավարար պայմաններ։

Շատ կարևոր է նաև այն, թե ինչպես են երիտասարդ մասնագետներին ընդունում տեղերում։ Ճոճկանի, Շնողի, Օձունի սովխոզների դիրեկտորներն ու կուսկազմակերպությունները բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծում են ինստիտուտների շրջանավարտների համար, հարկ եղած դեպքում նրանց

ապահովում բնակարանով, մտահոգվում վարձատրության, սննդի, վառելիքի հարցերով։ Հոգատարությանը երիտասարդ մասնագետը պատասխանում է նվիրված աշխատանքով։ Ցավոք, երբեմն տնտեսությունների որոշ ղեկավարներ սխալ վերաբերմունք են ցուցաբերում մասնագետների հանդեպ։ Նրանց ուժերը թերագնահատելու և անուշադրության մատնելու հետևանքով Հաղպատի, Մարցի, Լոռուտի սովխոզներում և Մղարթի կոլտնտեսությունում զգալի է մասնագետների հոսունությունը։

Կյանքը նոր պահանջներ է դնում գյուղատնտեսության մասնագետների առջև։ Բնականաբար, անհրաժեշտ է հետևողականորեն բարձրացնել նրանց որակավորումը, քաղաքական ու տեսական պատրաստականությունը։ Մեզ համար գործողության ուղեցույց պետք է լինի ուսանողների համամիութենական հավաքում Լ. Ի. Բրեժնևի՝ մասնագետներին տված գնահատականը. «Սովետական մասնագետն այսօր այն մարդն է, որը լավ է տիրապետել մարքս-լենինյան ուսմունքի հիմունքներին, պարզ տեսնում է կուսակցության ու երկրի քաղաքական նպատակները, ունի գիտական ու պրակտիկ լայն պատրաստություն, կատարելապես տիրապետում է իր մասնագիտությանը»։

Կուսակցության նոր պահանջների առումով մենք շոշափելի գործ ենք կատարել։ Նախապես կազմված պլանի համաձայն շրջանի մեծ թվով մասնագետներ վերջին երեք տարում անցել են Երևանի գյուղատնտեսական ինստիտուտին կից եռամսյա և Կիրովականի գյուղտեխնիկումին կից 1—3-ամսյա դասընթացները, միջին որակավորման շատ մասնագետներ, առանց արտադրությունից կտրվելու, ձեռք են բերել բարձրագույն կրթություն։ Այժմ շրջանի 20 գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, տնտեսագետներ աշխատանքին զուգահեռ հեռակայում են բարձրագույն ուսումնական հաստատությունների համապատասխան բաժիններին։

Կադրերի մասնագիտական և տնտեսագիտական գիտելիքների հարստացմանը նպաստում է նաև հասարակական հիմունքներով գործող գյուղատնտեսության էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման շրջանային համալսարանը, որը ղեկավարում է շրջսովետի գործկոմի գյուղվարչության պետ Ա. Էվոյանը։ Այստեղ ընդգրկված են շրջանի գյուղատնտեսության բոլոր մասնագետները։ Ունկնդիրների տնտեսագիտական իմացությունը խորացնելու նպատակով համալսարանի պարապմունքներին դասախոսներ են հրավիրվում նաև գյուղատնտեսության էկոնոմիկայի ինստիտուտից։

Շրջկոմը և կուսկազմակերպությունները մասնագետներին լայնորեն ներգրավում են քաղաքական-հասարակական աշխատանքում։ Նրանցից 15-ը կուսակցության լուսավորության ցանցի, 13-ը՝ կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստներ են, 23-ը՝ քաղինֆորմատորներ, շատերը՝ «Գիտելիք» ընկերության դասախոսներ։ Նրանք ակտիվորեն պրոպագանդում են կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը, նպաստում աշխատավորների ստեղծագործական աճին։ Մասնագետներից շատերը ակտիվ մասնակցում են գյուղի կուլտուրական կյանքին։

Խրախուսելը, աշխատանքն ըստ արժանվույն գնահատելը հաջողության երաշխիք են։ Արտադրության խթանման այդ գործոնները մենք կիրառում ենք նաև մասնագետների նկատմամբ։ Նախընթաց տարիներին մեծ թվով մասնագետներ արժանացել են կառավարական պարգևների, ստացել պատվոգրեր։ Շնորհալի մասնագետների մասին դրվատանքի ջերմ խոսք է ասվում շրջանային թերթում։ Արժանավորներն ընտրվում են դեպուտատներ, կուսկազմակերպությունների բյուրոների անդամներ։ Իրենց լավ դրսևորած, կազմակերպչական ունակություններով օժտված մասնագետներին կուսշրջկոմն առաջ է քաշում ղեկավար աշխատանքի։ Ներկայումս շրջանի 16 տնտեսություններից 12-ը ղեկավարում են մասնագետները։ Ահա նրանցից մեկը՝ Ծաթերի կոլտնտեսության նախագահ Ա. Վիրաբյանը, որը մասնագիտությամբ զոոտեխնիկ է։ Ընդամենը մեկ տարի է, ինչ տնտեսության ղեկը վստահվել է նրան, սակայն այդ կարճ ժամանակամիջոցում նա կարողացել է դրսևորել կոլտնտեսային կազմակերպչի իր ընդունակությունները։ Վերջերս կուսշրջկոմի պլենումում, որտեղ քննարկվում էր շրջանային կուսկազմակերպության XXXVII կոնֆերանսի որոշումների կատարման ընթացքը, նա պատմեց, որ իրենց տնտեսությունը հացահատիկի արտադրության բնագիծը գերազանցել է 82 տոկոսով, շրջանում հավաքել կարտոֆիլի ամենաբարձր բերքը, գոհացուցիչ արդյունքներ ձեռք բերել անասնաբուծության բնագավառում։ Տնտհաշվարկը ճիշտ կիրառելու, նոր ռեզերվներ գործադրելու, նյութական ու աշխատանքային ծախսումները կրճատելու շնորհիվ նկատելիորեն աճել են տնտեսության եկամուտները։ Հաջողությունները բացատրվում են նաև նրանով, որ կոլտնտեսությունում ծավալվում են աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը։ Լիովին մեքենայացվել են հացահատիկի, եգիպտացորենի, կարտոֆիլի և ցանովի խոտաբույսերի արտադրությունը։ Առաջընթացը շարունակվում է։



Տարիներ շարունակ Լոռուտի կաթնանասնապահական սովխոզում փոխվում էին դիրեկտորները, մինչդեռ տնտեսության մեջ էական տեղաշարժ չէր նկատվում։ Շրջկոմն անցած տարի սովխոզի ղեկավարությունը վստահեց զոոտեխնիկ Յ. Սարգսյանին։ Նա երիտասարդական եռանդով նվիրվեց սովխոզային արտադրության վերելքին։

Առաջին հերթին, նա ուշադրությունը բևեռեց կերի բազայի ամրապնդման վրա։ Միայն անցած տարի ցանվեց 157 հեկտար կերային կուլտուրա։ Այս տարի կոլտնտեսությունը 81 հեկտարով ընդարձակել է ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունը, արտադրության մեջ ներդրել եգիպտացորենը։ Կերի բազայի ամրապնդման շնորհիվ անասնապահությունը նկատելի վերելք ապրեց և 1971 թ. առաջին անգամ տարին փակեց օգուտով, որը հասնում է 92 հազար ռուբլու։ Ուրախալի են նաև այս տարվա արդյունքները։

Աշխատանքում իրեն լավ է դրսևորում նաև շրջկոմի նախկին հրահանգիչ, այժմ Աթանի սովխոզի դիրեկտոր Ժ. Մեչլումյանը, որը մասնագիտությամբ գյուղատնտես է։

Կուսշրջկոմը և կուսկազմակերպությունները մշտապես հոգում են, որպեսզի մասնագետները ձեռք բերեն ղեկավարման հմտություն, խորամուխ լինեն արտադրության հարցերի մեջ, նախաձեռնություն հանդես բերեն տնտեսական խնդիրների լուծման գործում, ապրեն կոլտնտեսության ու սովխոզի էկոնոմիկայի զարգացման շահերով։ Դրանով մենք միաժամանակ հետապնդում ենք տնտեսության ղեկավարների ռեզերվ ստեղծելու նպատակը։

Կուսակցության XXIV համագումարը մշակեց գյուղատնտեսության զարգացման ծավալուն ծրագիր։ Այդ ծրագրի իրականացման գործում մեծ են գյուղատնտեսության մասնագետների անելիքները։

—•—

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ


**Կ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար


ՍՄԿԿ XXIV համագումարը կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը համարեց կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը:

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ վերլուծելով Ախուրյանի շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների գործունեությունը՝ դժվար չէ նկատել, որ հնգամյակի տարիներին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք բերված հաջողությունների արդյունք են այն բանի, որ շրջանային կոմիտեն իր գործունեության ընթացքում առանձնահատուկ ուշադրություն է նվիրել և նվիրում է կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման հարցերին: Կուսշրջկոմն այն դիտում է որպես շրջանի առջև դրված տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների հաջող կատարման նախապայման:

Այժմ արագանում են գիտա-տեխնիկական առաջընթացի տեմպերը, աճում են արտադրության մասշտաբները, բարդանում տնտեսական կապերը: Այս ամենը պահանջում է հանձնարարված գործի, պլանային առաջադրանքների ու պարտավորությունների կատարման, սոցիալիստական բարձր կարգապահության դաստիարակելու համար ղեկավարների պատասխանատվության բարձրացում: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց, որ «Հարկավոր է բարձրացնել կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել նրանց նկատմամբ, ովքեր խախտում են կարգապահությունը, քննադատությունից հետևություններ չեն անում, ճիշտ վարքագիծ չեն ցուցաբերում: Ամեն մի աշխատող պետք է հիշի, որ սոցիալիստական կարգապահությունը միասնական է ու պարտադիր բոլորի համար» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 277—278):

Որպես կանոն, շրջանային կոմիտեն ամենօրյա վերահսկողություն է իրագործում սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի նկատմամբ: Շրջկոմի բյուրոներում, պլենումներում և սեմինար-խորհրդակցություններում պարբերաբար քննարկվում են կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման հարցերը: Թերթելով մեր աշխատանքի պլանները՝ դժվար չէ համոզվել, որ սոցիալիստական կարգապահության դաստիարակումը, կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների անշեղ կատարումը, քննադատության ու ինքնաքննադատության զարգացումը և ուրիշ շատ խնդիրներ միշտ դիտվել են որպես կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման կարևոր նախապայմաններ:



Կյանքը ցույց է տալիս, որ կարգապահության ամրապնդման, մարդկանց մոտ բարձր պատասխանատվություն դաստիարակելու գործում մեծ դեր է խաղում այն, թե կուսկազմակերպություններն աշխատանքում ինչպե՞ս են ընտրում գլխավոր ուղղությունը և նրա վրա կենտրոնացնում կոլեկտիվների ուշադրությունը: Մի ժամանակ, գյուղատնտեսության զարգացման հետ համեմատած, շրջանում զգալիորեն ետ էին մնում կուլտուրական շինարարության տեմպերը: Մանրամասն ուսումնասիրելով ամեն մի գյուղի իրավիճակը՝ կուլտուրական շինարարության և բնակավայրերի բարեկարգման հարցը քննարկվեց շրջանային կոմիտեի պլենումում, մշակվեցին կոնկրետ միջոցառումներ՝ կուլտուրական շինարարության տեմպերն արագացնելու, բնակավայրերը բարեկարգելու համար: Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական մարմինների ուշադրությունը բևեռվեց կուլտուրական շինարարության հարցերին, ամեն մի գյուղի համար տրվեց կոնկրետ առաջադրանք: Անցավ որոշ ժամանակ և գործերի վիճակը զգալիորեն բարելավվեց: Ութերորդ հնգամյակի տարիներին շրջանում կառուցվեց կուլտուրայի 11 տուն, 6 դպրոց, 13 բաղնիք, 8 մանկապարտեզ, 10 կապի տուն և բազմաթիվ այլ կուլտուր-կենցաղային օբյեկտներ: ՀԿԿ Կենտկոմը ուսումնասիրեց, հավանություն տվեց ու ընդհանրացրեց շրջանի կուսկազմակերպությունների աշխատանքի դրական փորձը:

Արտադրության և սոցիալական հարաբերությունների զարգացման արդի մակարդակը պահանջում է, որպեսզի կյանքի և աշխատավորական կոլեկտիվների գործունեության բոլոր հարցերի լուծման նկատմամբ ցուցաբերվի համակողմանի մոտեցում: Իսկ երբ խոսքը կուսակցական ու պետական կարգապահության մասին է, այդպիսի մոտեցումն առավել անհրաժեշտ է:

Կոմունիստների կարգապահությունը, ինչպիսի պաշտոն էլ որ նրանք զբաղեցնեն, անմիջական կախման մեջ է նրանց գաղափարական համոզվածությունից, գործարար որակավորումից, կուսակցության և ժողովրդի հանդեպ ունեցած պարտքի խոր ըմբռնումից: Հանրահայտ է, որ գիտակցական կարգապահության ապահովման համար պետք են գիտակից, կուլտուրական և քաղաքականապես կոփված մարդիկ, որոնք ունակ են ըմբռնելու իրադարձությունները, պատասխանատվության բարձր զգացումով կատարելու իրենց պարտականությունները: Կուսշրջկոմի ամենօրյա ուշադրության շնորհիվ շրջանում տարեցտարի բարելավվում է կուսակցական, սովետական և տնտեսական կադրերի, մասնագետների որակական կազմը: Այժմ, օրինակ, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների 60, կոլտնտեսությունների, սովխոզների և հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների 70 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, կուսակցական և սովետական աշխատանքի երկարամյա փորձ ու հմտություն:

Հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների ավելի քան 60, կոլտնտեսությունների նախագահների՝ 75, սովխոզների դիրեկտորների՝ 90 տոկոսը մասնագետներ են: Աստիճանաբար ստվարանում է արտադրության տարբեր

ոլորտներում աշխատող բարձրագույն կրթություն ունեցող ղեկավար և միջին օղակի մասնագետների ջոկատը։

Ղեկավարվելով աշխատավորության տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտկոմի որոշումներով՝ կուսկազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում կադրերի գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման, պրոֆեսիոնալ պատրաստականության, աշխատանքի գիտական կազմակերպման ու արտադրության կառավարման առաջավոր եղանակներին նրանց ծանոթացնելու հարցերին։ Շրջանի կոլտնտեսային և սովխոզային սկզբնական կուսկազմակերպություններին առընթեր գործում են կոմունիստական աշխատանքի 20 դպրոցներ, բազմաթիվ ագրոզոոխմբակներ, ուր արտադրության հարյուրավոր մարդիկ յուրացնում են տնտեսավարման հմտությունները։ Մեծ թիվ են կազմում նաև հեռակա բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողները։

Ղեկավար կադրերի որակական կազմի բարելավմանը, նրանց քաղաքական-պրոֆեսիոնալ մակարդակի, կազմակերպվածության և ինքնակարգապահության աճին զգալիորեն նպաստում է տեղերում ռեզերվ կադրերի հետ տարվող աշխատանքը։ Այդ մարդիկ, որպես կանոն, ընտրվում են կուսբյուրոների, կոլտնտեսությունների վարչությունների, ԼԿԵՄ կոմիտեների և արհմիության տեղկոմների կազմում, ներգրավվում են պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական գործունեության ոլորտը։ Նրանցից շատերը կոփվում են հասարակական գործունեության մեջ, դառնում կուսակցական ու պետական շինարարության փորձ ունեցող, մասսաներին իրենց ետևից տանելու հմտություններով օժտված աշխատողներ։

Սկզբնական կուսկազմակերպություններում վերջին շրջանում կադրերի ընտրության, դաստիարակության և տեղաբաշխման ասպարեզում կատարված դրական տեղաշարժերը զգալիորեն նպաստեցին կուսակցական և պետական կարգապահության ամրապնդմանը, կոմունիստների ու անկուսակցականների գործողությունների միասնությանը։ Շրջանի շատ կոլտնտեսությունների, սովխոզների և հիմնարկ-ձեռնարկությունների կուսկազմակերպություններ մեծ գործիմացությամբ են մոբիլիզացնում աշխատավորության ուժերը՝ արտադրական բարձր ցուցանիշների հասնելու համար։

Այս տեսակետից ուսանելի է Հոլոնիի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության փորձը։ Նրա անմիջական օգնությամբ կոլտնտեսությունն անցյալ տարի նկատելի հաջողություններ ձեռք բերեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի գործում. հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 34,5 ցենտներ բերք, զգալիորեն գերակատարվեցին բանջարեղենի, կերի, մսի, կաթի, ձվի, բրդի արտադրության առաջադրանքները։ Գործին պետական մոտեցում և պարտքի բարձր պատասխանատվություն ցուցաբերելու շնորհիվ կոլտնտեսությունը գերակատարեց վաճառքի առաջադրանքները։

Հաջողություններն արդյունք են այն բանի, որ կոլտնտեսության կուսկազմակերպությունը մշտապես ուշադրության կենտրոնում է պահում էկոնոմիկայի հարցերը, արտադրության մեջ ճիշտ տեղաբաշխում կոմունիստների ուժերը, ձգտում, որպեսզի ամեն մի կոմունիստ ճշտորեն կատարի ՍՄԿԿ կանոնադրության պահանջները։



Կադրերի պատասխանատվության բարձրացումը պայմանավորված է սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությամբ, այն բանով, թե նրանք որքանով ճիշտ են իրականացնում վերահսկողության ֆունկցիան ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, մի բան, որը նպաստում է կուսակցական և պետական կարգապահության ամրապնդմանը, կուսակցության և կառավարության դիրեկտիվների հաջող կատարմանը։ Կուսշրջկոմը պարբերաբար անդրադառնում է այս հարցերին, օգնում կուսկազմակերպություններին՝ վերահսկողության ֆունկցիայի իրականացման գործում։

Համոզմունքների և գործողությունների, խոսքի ու գործի միասնություն— ահա այն չափանիշը, որով ստուգվում է ամեն մի աշխատողի և, ամբողջությամբ վերցրած, կոլեկտիվի պարտքի ըմբռնումը կուսակցության և ժողովրդի հանդեպ, նրանց հաստատակամությունը առաջադրված խնդիրների լուծմանը պետական մոտեցում ցուցաբերելու գործում։ Ընդ որում, չի կարելի մոռանալ, որ կուսակցության վերադաս մարմինների և սեփական որոշումների կատարման ստուգումը եղել և մնում է կադրերի դաստիարակության, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման կարևոր միջոց։ Վերջին տարիներին շրջանի կուսկազմակերպությունները զգալիորեն ուժեղացրել են վերահսկողությունը տնտեսական կադրերի և ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ։ Բերենք մի այսպիսի օրինակ։ Ախուրյանի կոլտնտեսությունը բավական նպաստավոր պայմաններ ունի հացահատիկից, բազմամյա խոտաբույսերից և մյուս կուլտուրաներից առատ բերք ստանալու համար։ Սակայն տարիներ շարունակ դրանց բերքատվությունը ցածր էր։ Երբ խոսք էր լինում այդ մասին, տեղի ընկերներն անհիմն պատճառաբանում էին, արդարանում, թե այդ հարցը շատ են քննարկել, բազմաթիվ որոշումներ ընդունել։ Եվ, իրոք, կուսկազմակերպության արձանագրությունները լեփլեցուն էին ելույթների շարադրանքներով ու որոշումներով։ Կուսշրջկոմը միջամտեց գործին. շուտով կուսկազմակերպությունը փոխեց իր աշխատանքի ոճը, դիմեց գործնական քայլերի, նույն հարցի մասին բազմաթիվ որոշումներ ընդունելու փոխարեն, անցավ որոշումների կատարման ստուգմանը, կոլտնտեսության վարչության հետ միասին դաշտավարության բնագավառը համալրեց գործիմաց կադրերով, հետևեց դաշտերի պարարտացմանն ու ոռոգմանը, ապահովեց վերահսկողությունը հանձնարարված գործի կատարման նկատմամբ։ Դրությունը շտկվեց։ Վերջին տարիներին Ախուրյանի կոլտնտեսությունը հացահատիկի բերքատվությունը հեկտարից հասցրել է 24—25, բազմամյա խոտաբույսերինը՝ 40—50 ցենտների։

Կադրերին բարձր պահանջկոտության, կուսակցական ու պետական կարգապահության պահպանման, թերությունների նկատմամբ անհաշտելիության ոգով դաստիարակելու կարևորագույն միջոց է կոմունիստների հաշվետվությունների ունկնդրումը կուսկազմակերպությունների ժողովներում, բյուրոների նիստերում։ Այս առումով դրական օրինակ է տալիս հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության № 2 տրեստի սկզբնական կուսկազմակերպությունը։ Այստեղ, նախօրոք մշակված աշխատանքային պլանին համապատասխան, պարբերաբար լսվում են կոմունիստների հաշվետվությունները։ Վերջերս, օրինակ, լսվեց շինվարչության պետ Վ. Հակոբյանի հաշվետվությունը՝ շինմոնտաժային աշխատանքների պլանների կատարման մասին։

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները, աշխատավորական

կոլեկտիվները պարտքի ու պատասխանատվության խոր ըմբռնումով են կատարում կուսակցության առաջադրանքները: Սակայն կան առանձին կոմունիստներ, որոնք զերծ են պահում իրենց համընդհանուր պայքարից, չեն մտահոգվում կոլեկտիվների առջև դրված արտադրական խնդիրների լուծմամբ, չեն ապահովում իրենց ավանգարդային դերը: Տարիներ շարունակ Թռչնաբուծական ֆաբրիկան չի կատարում իր արտադրական պլանները, մեծ չափերի են հասնում անկումները: Տեղում գործերի իրական վիճակը ուսումնասիրելուց պարզվեց, որ ֆաբրիկայում ընկած է կուսակցական ու պետական կարգապահությունը, որոշ կոմունիստներ՝ գլխավոր անասնաբույժ Ռ. Բարսեղյանը, արտադրամասի պետ Մ. Շառոյանը, տարիներ շարունակ աշխատելով ֆաբրիկայում, անպատասխանատվություն են հանդես բերել իրենց հանձնարարված գործի նկատմամբ, չեն ապահովել արտադրական առաջադրանքների կատարումը, իսկ ֆաբրիկայի կուսկազմակերպությունը միշտ ներողամիտ և հանդուրժողական վերաբերմունք է ցուցաբերել նրանց հանդեպ: Կուսշրջկոմի բյուրոն, վերջերս քննարկելով Թռչնաբուծական ֆաբրիկայում կուսակցական և պետական կարգապահության մասին հարցը, Ռ. Բարսեղյանին և Մ. Շառոյանին ազատեց աշխատանքից:

Ամեն մի կոմունիստ պատասխանատու է իր կազմակերպության և ամբողջ կուսակցության գործերի համար: Նա կողմնակի դիտող ու քննադատ չէ, այլ կուսակցության ակտիվ մարտիկ: Սակայն, առանձին կոմունիստներ, չենթարկվելով մեծամասնությանը, խանգարում են կուսակցական ու աշխատանքային կարգապահությունը, խախտում ներկուսակցական կյանքի հիմնական օրենքի՝ կանոնադրության պահանջները: Ախուրիկի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության անդամ Ռ. Մանուկյանը, Առափիից՝ Ա. Փանոսյանը, Կամոյից՝ Հ. Մովսիսյանը երկար ժամանակ կտրվել էին կուսակցական կյանքից, արտադրության մեջ չէին աշխատում, չէին ենթարկվում կուսկազմակերպության որոշումներին: Կոմունիստները խստորեն դատապարտեցին նրանց վարքագիծը, ենթարկեցին կուսակցական խիստ տույժի, որին հավանություն տվեց շրջանային կոմիտեի բյուրոն:

Հանձնարարված գործի համար կոմունիստների և կադրերի պատասխանատվության բարձրացումը դժվար է պատկերացնել առանց քննադատության և ինքնաքննադատության, որովհետև դրանք թերությունները բացահայտելու և շտկելու, կադրերին կուսակցական ու պետական կարգապահությամբ դաստիարակելու փորձված մեթոդ են: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ բոլշևիկյան քննադատությունը և ինքնաքննադատությունը տոգորված են գործի բարելավման նկատմամբ հոգատարությամբ, իսկական տիրոջ պատասխանատվության զգացումով այն ամենի համար, ինչ տեղի է ունենում երկրում և կուսակցությունում: Քննադատությունն ուղղել չլուծված հարցերը լուծելու, թերությունները վերացնելու, կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու նպատակին— ահա թե ինչ էր սովորեցնում Վ. Ի. Լենինը: Եվ, իրոք, «Սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացումը,— ասվում է ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտկոմի տրված հաշվետու զեկուցման մեջ,— կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության, նրա կողմից կուսակցության հանդեպ, ժողովրդի հանդեպ իր պարտքի ճիշտ ըմբռնման նշանն է»:

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները, ամենօրյա ուշադրություն նվիրելով քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, համոզված են, որ դրանց ժամանակին արձագանքելը, դիտողություններին ընթացք տալը քննադատության կենսագործման անվերապահ պայմանն են:



Սակայն, դեռևս մի շարք սկզբնական կուսկազմակերպություններ պատշաճ չափով հաշվի չեն առնում կոմունիստների քննադատությունն ու առաջարկությունները, չեն մտահոգվում դրանց իրականացմամբ: Առանձին կազմակերպությունների ժողովներում իրավացի պահանջներ են ներկայացվել շրջանային սպառողական կոոպերացիայի՝ առևտրի բնագավառում սպասարկման կուլտուրայի բարձրացման, աշխատավորության հարաճուն պահանջմունքների բավարարման համար: Շրջկոոպի կուսկազմակերպությունը մեկ անգամ չէ, որ անդրադարձել է քննադատական այդ դիտողությունների ու առաջարկությունների կատարումն ապահովելու հարցերին: Սակայն արդյունքները գոհացուցիչ չեն: Դեռևս լուրջ թերություններ գոյություն ունեն առևտրի կազմակերպման գործում, ցածր է սպասարկման կուլտուրան, թույլ են տրվում առևտրի կանոնների խախտումներ, առանձին օբյեկտներ գտնվում են սանիտարական ոչ բարվոք վիճակում:

Գյուղական շինարարության մինիստրության № 4 տրեստի կուսկազմակերպության ժողովներում հաճախ է խոսվում այն մասին, որ տրեստի առանձին շինվարչություններում ու մի շարք կազմակերպություններում ընկած է աշխատանքային կարգապահությունը, ոչ բոլոր կոմունիստներն են, որ պատասխանատվության բարձր զգացումով են կատարում իրենց վրա դրված պարտականությունները, ցածր է շինմոնտաժային աշխատանքների որակը, արդյունավետ չեն օգտագործվում եղած տեխնիկան և բանվորական ժամանակը, բոլոր տեղամասերում չէ, որ ապահովվում է խնայողության ռեժիմը: Սակայն, ինչպես կուսկազմակերպությունը, այնպես էլ տրեստի և շինվարչությունների առանձին ղեկավարներ դեռևս գործնական միջոցներ չեն ձեռնարկում՝ եղած թերությունների վերացման, շինարարների շրջանում աշխատանքային կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ կադրերի պատասխանատվության բարձրացման համար:

Կադրերի մոտ գործի նկատմամբ կուսակցական ու պետական մոտեցում մշակելուն նպաստող պայմանները, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, ինքն իրեն և անմիջապես երևան գալ չեն կարող: Եթե կուսկազմակերպությունները ժամանակին չեն հայտաբերում թերությունները, չեն ասում սխալները, ուրեմն փչացնում են աշխատողին: Աշխատողների նկատմամբ մեր կուսակցության շարքերում վերջին տարիներին ամուր հաստատված վստահության ու հարգանքի մթնոլորտը պետք է հմտորեն զուգակցել նրանց նկատմամբ սկզբունքային պահանջկոտության բարձրացմանը, այն հաշվով, որպեսզի որոշակի անձը, ինչպես մատնանշում էր Լենինը, ամբողջովին պատասխան տա որոշակի աշխատանքի կատարման համար:

Շրջանի առջև այժմ դրված են առավել բարդ խնդիրներ: Դրանք գործի վերածելու հաջողությունը պայմանավորված է ամեն մեկի աշխատանքային ներդրումից, նրա ձեռներեցությունից, ընդունակություններից, կազմակերպվածությունից ու կարգապահությունից:

4. «Լենինյան ուղիով», № 8

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԱՌԱՎԵԼ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը և սովխոզների աշխատողները, կենսագործելով ՍՄԿԿ XXIV և ՀԿԿ XXV համագումարների որոշումները, ծավալելով գործարար սոցիալիստական մրցություն, զգալի հաջողություն են ձեռք բերել գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման, քիմիացման, կոմպլեքսային մեքենայացման, հողերի մելիորացման և գյուղատնտեսական արտադրության շահութաբերության բարձրացման գործում:*

*Զգալիորեն ավելացել են կոլտնտեսությունների և սովխոզների հիմնական արտադրաֆոնդերը, բարձրացել է ֆոնդահատույցը: Գյուղատնտեսության զարգացման համար պետության և կոլտնտեսությունների կապիտալ ներդրումները 1971 թ. կազմել են 151 մլն ռուբլի կամ, 1970 թ. համեմատությամբ, ավելացել 21 տոկոսով:*

*Մեքենա-տրակտորային պարկը համալրվել է ժամանակակից բարդ և հզոր տրակտորներով ու գյուղատնտեսական այլ մեքենաներով: Ներկայումս կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են 9678 տրակտոր, 1450 կոմբայն, 7650 բեռնատար ավտոմեքենա: Մեքենայացվել են հողի նախացանքային մշակության, հացահատիկային կուլտուրաների ցանքի, բերքահավաքի, ոչխարների խուզի, ինչպես նաև մի շարք այլ աշխատատար պրոցեսներ:*

*1971 թ., 1970 թ. համեմատությամբ, զգալիորեն բարձրացել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը: Մսի արտադրությունն ավելացել է 5,7 տոկոսով կամ 28,3 հազար ցենտներով, կաթինը, համապատասխանաբար՝ 7,9, 170,7, ձվինը՝ 6,5 կամ 6,8 մլն հատով, բրդինը՝ 11,1 տոկոսով կամ 3,1 հազար ցենտներով: Համախառն արտադրանքի արտադրությունն ավելացել է 15 մլն ռուբլով: Գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը 1971 թ. կազմել է 430 մլն ռուբլի, որը 10,8 տոկոսով բարձր է նախորդ հնգամյակի արտադրության տարեկան միջին մակարդակից:*

*Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները, հաջողությամբ կատարելով գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքները, պետությանը մթերքների վաճառման և հանձնման պլանները կատարեցին ժամանակին: Կոլտնտեսությունները գյուղատնտեսական մթերքների իրացման պլանը կատարեցին 107, իսկ սովխոզները՝ 103,7 տոկոսով, պլանից ավելի իրացվեցին 17,2 մլն ռուբլու մթերքներ:*

*Անցած տնտեսական տարում զգալի աշխատանք կատարվեց խոտհարքների և արոտավայրերի մակերեսային և արմատական բարելավման, սեփական կերի արտադրության ավելացման հաշվին կերի բազայի ամրապնդման և անասունների գլխաքանակի ավելացման պլանների կատարման համար: Խոտի կուտակման պլանը կատարվեց 108,6, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացմանը՝ 102,8, մանրինը՝ 101,2, խոզերինը՝ 102,6, թռչուններինը՝ 109,3 տոկոսով:*

*Կայունացել է կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասի ֆինանսական դրությունը: Բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ դարձել են շահութաբեր ձեռնարկություններ: 308 կոլտնտեսություն և 173 սովխոզ իրենց 1971 թ. գործունեությունն ավարտել են 40,6 մլն ռուբլի օգուտով: 9,5 տոկոսով բարձրացել է կոլտնտեսությունների, 7,9 տոկոսով՝ սովխոզների արտադրության շահութաբերությունը: Այն բարձր է հատկապես Արարատի, Արտաշատի, Շամշադինի, Ղափանի, Կալինինոյի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի և էջմիածնի շրջանների տնտեսություններում:*

*Որոշ հաջողություններ են ձեռք բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: 1971 թ., 1970 թ. համեմատությամբ, կոլտնտեսություններում այն բարձրացել է 6,7, իսկ սովխոզներում (1969 թ. համեմատությամբ)՝ 17 տոկոսով:*

*Որոշ աշխատանք է կատարվել տնտհաշվարկային հարաբերությունները զարգացնելու, կոլտնտեսությունները ներտնտեսային, իսկ սովխոզները լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրելու ասպարեզում: Կատարված վերլուծությունը ցույց է տվել, որ պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում աշխատող տնտեսություններն առավել բարձր ցուցանիշներ են ձեռք բերել գյուղատնտեսական արտադրության շահութաբերության բարձրացման գործում: Նրանք հաջողությամբ են կատարել 1971 թ. արտադրական-ֆինանսական առաջադրանքները:*

*Ներտնտեսային հաշվարկի փոխադրված 32 կոլտնտեսություններ, պլանով նախատեսված 3.116,0 հազար ռուբլու դիմաց, ստացել են 3.226,4 հազար ռուբլու շահույթ: էջմիածնի շրջանի ներտնտեսական հաշվարկի փոխադրված 11 կոլտնտեսություններում 1971 թ. համախառն արտադրանքի արտադրությունը 21 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 23, աշխատանքի վարձատրությունը՝ 22 տոկոսով ավելի բարձր է եղել, քան մնացած կոլտնտեսություններում, որոնք չեն փոխադրվել ներտնտեսական հաշվարկի: Ն. Ջեյվա գյուղի կոլտնտեսությունում համախառն արտադրանքն ավելացել է 37, զուտ եկամուտը՝ 46 տոկոսով. աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 31 տոկոսով:*

*Մեր հանրապետությունում լրիվ տնտեսական հաշվարկի փոխադրված 35 սովխոզների գործունեության ուսումնասիրությունը ցույց է տվել, որ վերջին երեք տարվա ընթացքում նրանց համախառն արտադրանքի արտադրությունն ավելացել է 40,5 տոկոսով կամ 9 մլն ռուբլով, աշխատանքի արտադրողակա-*

նությունը բարձրացել 44 տոկոսով։ Արտադրության շահութաբերությունը կազ-
մել է 64,4 տոկոս։ Ավելացել է ֆոնդահատույցը։ 100 ռուբլու հիմնական ար-
տադրաֆոնդերի դիմաց արտադրվել է 45 ռուբլու արտադրանք։ 1971 թ. նա-
խատեսված 11.290,0 հազար ռուբլու դիմաց, ստացվել է 11.434,0 հազար ռուբ-
լի շահույթ։

Կալինինոյի շրջանի Կալինինի անվան կաթնաանասնապահական սովխո-
զը համախառն արտադրանքի արտադրության 1971 թ. պլանը կատարել է
126,5, իսկ իրացմանը՝ 136,3 տոկոսով։ Պլանից ավելի արտադրվել են 376,5
հազար և իրացվել 651,6 հազար ռուբլու մթերքներ։ Հիմնական մթերքների
ինքնարժեքի իջեցումը պլանի հանդեպ կազմել է 21 տոկոս, կամ, դրամական
արտահայտությամբ, 358,5 հազար ռուբլի։ Տնտեսությունն իր գործունեու-
թյունն ավարտել է 991,6 հազար ռուբլի շահույթով, պլանով նախատեսված
438 հազարի դիմաց։ Արտադրության շահութաբերությունը կազմել է 72
տոկոս։

Հոկտեմբերյանի շրջանի Ա. Խանջյանի անվան խաղողագործական-պտղա-
բուծական սովխոզը համախառն արտադրանքի արտադրության պլանը կատա-
րել է 143,8, իսկ իրացմանը՝ 155,2 տոկոսով։ Պլանից ավելի են արտադրվել
321,3 հազար, իրացվել 393,5 հազար ռուբլու մթերքներ։ Տնտեսությունն իր
գործունեությունն ավարտել է 564 հազար ռուբլի շահույթով, պլանով նախա-
տեսված 324 հազար ռուբլու դիմաց։ Արտադրության շահութաբերությունը
կազմել է 48,4 տոկոս։

Հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների հաջողություն-
ներն առավել մեծ կլինեին և արտադրության շահութաբերությունը ավելի
բարձր, եթե նրանց մի մասի գործունեության մեջ չլինեին լուրջ թերություն-
ներ։ 167 կոլտնտեսություններ, 108 սովխոզներ արտադրական անբավարար
գործունեության և արտադրանքի ինքնարժեքի բարձրացման հետևանքով
իրենց 1971 թ. գործունեությունն ավարտել են 14,4 մլն ռուբլու վնասով, որից
կոլտնտեսությունները՝ 6,1, սովխոզները՝ 8,3 մլն ռուբլու։

Նշված տնտեսությունների անբավարար գործունեության հետևանքով
հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները, ընդհանուր առ-
մամբ, չկատարեցին շահույթի պլանը։ Նախատեսված 36,5 մլն ռուբլու փո-
խարեն, նրանք ստացան միայն 26,3 մլն ռուբլու շահույթ։

Մարտունու, Ապարանի և Մեղրու շրջանների սովխոզները, Թալինի շրջա-
նի կոլտնտեսությունները տարին փակել են վնասով։ Մարտունու շրջանի սով-
խոզների վնասը կազմել է 984 հազար, Ազիզբեկովինը՝ 578, Թալինի շրջանի
կոլտնտեսություններինը՝ 1,098,0, Սպիտակինը՝ 806 հազար ռուբլի։ Վնասները
մեծ չափերի են հասնում նաև Ամասիայի, Ապարանի, Սպիտակի, Ստեփանա-
վանի, Արթիկի շրջանների սովխոզներում, Կրասնոսելսկի շրջանի կոլտնտե-
սություններում։

Հրազդանի շրջանի Հանքավանի սովխոզի (դիրեկտոր՝ Ռ. Հարությունյան)
վնասը կազմել է 214 հազար, Ամասիայի շրջանի Ամասիայի սովխոզինը (դի-
րեկտոր՝ Դ. Մարգարյան)՝ 205,8 հազար ռուբլի։ Դրա գլխավոր պատճառն այն
է, որ հիշյալ տնտեսություններում արդյունավետ չեն օգտագործվում հիմնա-
կան արտադրաֆոնդերը, վատ է կազմակերպված աշխատանքը, որոշ մարդ-
կանց մոտ բացակայում է պատասխանատվության զգացումը հանձնարարված



գործի նկատմամբ։ Ավելին, կուսակցական կազմակերպությունները և տնտե-
սական ղեկավարները անհրաժեշտ ձեռներեցություն չեն ցուցաբերում գիտու-
թյան նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման, ներքին ռեզերվների
օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։
Նույնը կարելի է ասել նաև Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուրի, Թալինի
շրջանի Մաստարայի, Մարտունու շրջանի Ջոլաքարի, Ազիզբեկովի շրջանի
Բարեկամության, Արարատի շրջանի Սովետաշենի սովխոզների մասին, որոն-
ցից յուրաքանչյուրի վնասը կազմել է 180,5—191,2 հազար ռուբլի։

Վնասով աշխատող կոլտնտեսություններն ու սովխոզները ֆինանսական
ծանր դրության մեջ են։ Կոլտնտեսությունները շրջանառու միջոցների համա-
լրման համար գրեթե միջոցներ չեն հատկացրել, դրանք գոյացել են պետբան-
կի կարճատև վարկի հաշվին։ Սովխոզներում, 1972 թ. հունվարի մեկի դրու-
թյամբ, առաջացել է սեփական շրջանառու միջոցների 7,4 մլն ռուբլու ճեղք-
վածք։ Այն հատկապես մեծ է Ամասիայի, Արթիկի, Վարդենիսի, Կրասնո-
սելսկի, Սպիտակի և Թալինի շրջանների կոլտնտեսություններում, Ստեփա-
նավանի, Թումանյանի, Ապարանի, Ազիզբեկովի և Մարտունու շրջանների
սովխոզներում։

Վնասով և ցածր շահութաբերությամբ աշխատող կոլտնտեսություններն
իրենց արտադրական գործունեությունը հիմնականում իրականացրել են պետ-
բանկի վարկերի հաշվին։ Նման գործելակերպի հետևանքով աստիճանաբար
մեծացել է պետբանկի վարկերի տեսակարար կշիռը կոլտնտեսությունների
հիմնական և շրջանառու միջոցների կառուցվածքում։

Թեև կոլտնտեսությունների և սովխոզների զգալի մասում առաջացել է
սեփական շրջանառու միջոցների ճեղքվածք, սակայն դա չի խանգարել
նրանց, որպեսզի այդ միջոցների հաշվին կատարեն արտապլանային շինա-
րարություն, առանց ֆինանսական աղբյուրների ձեռք բերեն պլանից ավելի
հիմնական միջոցներ և թույլ տան սեփական շրջանառու միջոցների 5.248,0
հազար ռուբլու անշարժացում (իմմոբիլիզացիա) կապիտալ շինարարության
մեջ։

Այս ամենը հետևանք է նրան, որ որոշ տնտեսավարներ (ինչպես, օրինակ,
Նոյեմբերյանի շրջանի Հոկտեմբեր սովխոզի դիրեկտոր Ս. Ավագյանը և մյուս-
ներ) խորամուխ չեն եղել տնտեսության էկոնոմիկայի մեջ, թույլ են տվել
ֆինանսական կարգապահության խախտումներ, անօրինական դուրսգրում-
ներ, գերածախսեր և անարտադրողական ծախսեր։ Սովխոզներում անարտա-
դրողական ծախսեր կատարելու և բանկի ժամկետանց վարկի տոկոսներ վճա-
րելու պատճառով վերադիր ծախսերն ավելացել են 1,1 մլն ռուբլով։ Սով-
խոզների վնասներով դուրս են գրվել 523 հազար ռուբլու դեբիտորական
պարտքեր։ 1972 թ. հունվարի մեկի դրությամբ դրանք կազմել են 10,3 մլն
ռուբլի, այդ թվում կոլտնտեսություններում՝ 7,4, սովխոզներում՝ 2,9 մլն ռուբ-
լի։ Դեբիտորական պարտքերից 846 հազարը գոյացել է նյութական արժեք-
ների պակասորդներից և վատնում-յուրացումներից։ Դեբիտորական պարտքե-
րը զգալիորեն բարձր են Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի և Վարդե-
նիսի շրջանների կոլտնտեսություններում, Մարտունու, Իջևանի Ամասիայի և
Աշտարակի շրջանների սովխոզներում։

Կոլտնտեսությունների և սովխոզների վերոհիշյալ խախտումները, անօրի-

նական դուրսգրումները և դեբիտորական պարտքերը վերացնելու դեպքում նրանց եկամուտները կավելանան ավելի քան 17,2 միլիոն ռուբլով. այս միջոցառումը հնարավորություն կընձեռի նրանց ո՛չ միայն լրացնելու սեփական շրջանառու միջոցների ճեղքվածքը, այլև դրանց հաշվին կատարելու մի շարք այլ ձեռնարկումներ։

Ինչպես նշված, այնպես էլ մի շարք այլ շրջանների կուսակցական, սովետական կազմակերպություններ և գյուղատնտեսական օրգաններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրել տնտեսագիտական կրթության արմատավորմանը, չեն գործադրել տնտեսական լծակները, ժամանակին չեն վերլուծել վնասով և ցածր շահութաբերությամբ աշխատող կոլտնտեսությունների և սովխոզների, ինչպես նաև դրանց ստորաբաժանումների գործունեությունը, չեն հայտաբերել և վերացրել թերությունները, վնասի և ցածր շահութաբերության պատճառները, անտնտեսավարության երևույթները։

Հետևողականություն հանդես չի բերվել ագրոզոոտեխնիկական կանոնները ճիշտ կիրառելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունն ավելացնելու, հակաէրոզային, կուլտուրտեխնիկական աշխատանքների, ինչպես նաև թեք լանջերի դարավանդման պլանները կատարելու, հողագործության և անասնապահության կուլտուրան, արտադրության շահութաբերությունը բարձրացնելու գործում։

Կոլտնտեսություններն ու սովխոզները անցյալ տարի չեն կատարել կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և պտղի բերքատվության, համախառն բերքի ստացման և մթերման, իսկ սովխոզները՝ նաև անասնաբուծական մթերքների համախառն արտադրության պլանները։ Համախառն արտադրանքի արտադրության պլանը սովխոզներում կատարվել է 92,9 տոկոսով։ Պլանից պակաս է արտադրվել 9 մլն ռուբլու արտադրանք։

Անհանդուրժելի թերություններ կան անասնաբուծության զարգացման բնագավառում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները չեն կատարել կովերի գլխաքանակի ավելացման, մատղաշների պահպանման և մսի քաշաճի պլանները։ Նախրում ցածր է կովերի տեսակարար կշիռը։ Անբավարար աշխատանք է կատարվել անասունների ցեղը բարելավելու, բարելավված բարձր մթերատու անասունների գլխաքանակն ավելացնելու, ստերջությունը, անկումները, հարկադիր մորթը նվազագույնի հասցնելու համար։

Անասունների խնամքն ու կերակրումը վատ կազմակերպելու հետևանքով Թումանյանի, Անիի և Ախուրյանի շրջանների տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների անկումները կազմել են 2—3,3, Հոկտեմբերյանի և Թալինի շրջանների տնտեսություններում մանր եղջերավոր անասուններինը՝ 3,5—4,6, Արթիկում և Անիում՝ խոզերինը՝ 18,9—20,4 տոկոս։ Անասունների անկումներից առաջացած կորուստը միայն սովխոզներում կազմել է 1.058 հազար ռուբլի։ Տնտեսությունները մեծ չափերի հասնող կորուստներ են կրել նաև անասունների մորթից և պետությանը ցածրորակ անասուններ վաճառելուց ու հանձնելուց։

Պետությանը կոլտնտեսությունների վաճառած յուրաքանչյուր գլուխ խոշոր եղջերավոր անասունի կենդանի քաշը կազմել է 226, մանրինը՝ 39, խոզինը՝ 84 կգ։ Վիճակը համարյա նույնն է սովխոզներում։ Տնտեսությունները



սահմանված նորմայից ցածր գիրությամբ անասունների վաճառքից զգալի կորուստ են կրել։

Կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ եթե կոլտնտեսություններում կիսով չափ կրճատվեն անասունների մորթից և պետությանը ցածրորակ միս վաճառելուց, իսկ սովխոզներում՝ նաև անկումներից և կերի գերածախսերից առաջացած կորուստները, մսի արտադրությունը կոլտնտեսություններում կավելանա 7,1, սովխոզներում՝ 4,8 տոկոսով։ Արտադրության շահութաբերությունը համապատասխանաբար կբարձրանա՝ 2,2 և 3,1 տոկոսով։ Դա անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման չափազանց կարևոր ռեզերվ է, որի օգտագործման համար բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում պետք է հետևողական աշխատանք կատարել։

ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները լուրջ միջոցառումներ պետք է ձեռնարկեն անասնաբուծության զարգացման գործում եղած թերությունները և անարտադրողական ծախսերը արագ վերացնելու, խնայողության ռեժիմը ուժեղացնելու, կորուստները կանխելու և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։

Արտադրության շահութաբերության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի տեխնիկայի արդյունավետ օգտագործումը։ Փորձը ցույց է տալիս, որ այն տնտեսություններում, որոնցում արդյունավետ են օգտագործվում մեխանիզմներն ու սարքավորումները, քիչ ծախսումներով ավելի շատ մթերքներ են արտադրվում, ցածր է արտադրանքի ինքնարժեքը, բարձր է արտադրության շահութաբերությունը և, ընդհակառակը։

Տեխնիկայի անբավարար օգտագործման հետևանքով շատ տնտեսություններում, ինչպես, օրինակ, Թումանյանի շրջանի Մարցի սովխոզում (դիրեկտոր՝ Գ. Եղինյան) գյուղատնտեսական մի շարք աշխատանքներ հիմնականում կատարվում են ձեռքով։ Որոշ տնտեսություններում, առանձնապես Սպիտակի շրջանի Սպիտակավանի սովխոզում, տեխնիկայի մի մասը տարիներ շարունակ չի օգտագործվում։ Չօգտագործվող տեխնիկայի համար սովխոզներում 1971 թ. հաշվարկվել են բավականաչափ ամորտիզացիոն հատկացումներ, որը, ըստ էության, բարձրացրել է արտադրանքի ինքնարժեքը։ Անբավարար աշխատանք է կատարվել տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների արտադրողականությունը բարձրացնելու, մասնակի մեքենայացումից կոմպլեքս մեքենայացման անցնելու, աշխատապրոցեսներն առավելագույն չափով մեքենայացնելու ասպարեզում։

Արտադրապլանները թերակատարելու, տեխնիկան անբավարար օգտագործելու, անարտադրողական ծախսումներ, շռայլումներ, գերածախսեր և կորուստներ թույլ տալու հետևանքով, արտադրանքի ինքնարժեքը, պլանի համեմատ, կոլտնտեսություններում թանկացել է 15,3 տոկոսով կամ 28,6 մլն ռուբլով, սովխոզներում՝ 11,6 տոկոսով կամ 14,5 մլն ռուբլով։ Արտադրանքի ինքնարժեքը բարձր է հատկապես Մարտունու, Սպիտակի, Ազիզբեկովի, Մեղրու, Կրասնոսելսկի, Անիի, Ապարանի, Ստեփանավանի և Ախուրյանի շրջանների սովխոզներում։

Գյուղատնտեսության հետագա զարգացման և արտադրության շահութաբերության բարձրացման համար կարևոր նշանակություն ունեն հիմնական

արտադրաֆոնդերի ստեղծումը և դրանց արդյունավետ օգտագործումը։ Մնացած կոլտնտեսությունների և դրանց բազայի վրա կազմակերպված սովխոզների մեծ մասն ապահովված չէ տեխնիկայով, շենքերով և արտադրական այլ միջոցներով, թույլ է նյութա-տեխնիկական բազան և զգալիորեն ցածր է ֆոնդահագեցվածությունը, սակայն, անցյալ տարի անբավարար են իրացվել պետության և կոլտնտեսությունների կողմից կատարվող ներդրումները։

Շարունակվում է շինարարական միջոցների փոշիացման և կառուցվող օբյեկտների շինարարական աշխատանքների ավարտման համար պահանջվող միջոցները չտրամադրելու և բազմաթիվ կոլտնտեսությունների կողմից անբաժանելի ֆոնդին հատկացում չկատարելու սխալ պրակտիկան։ Բավական է ասել, որ 1971 թ. 200 կոլտնտեսություններ այդ նպատակի համար հատկացում չեն կատարել։ Ներելի չէ, երբ Թալինի և Կրասնոսելսկի շրջանների կոլտնտեսություններից և ոչ մեկը անբաժանելի ֆոնդին հատկացում չի կատարել։ Հասկանալի է, որ համախառն եկամտի բաշխման նման պայմաններում խոսք անգամ լինել չի կարող կուտակման ֆոնդերի ավելացման և արտադրության շահութաբերության բարձրացման մասին։

Կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան ամրապնդելու և գյուղատնտեսական արտադրության շահութաբերությունը բարձրացնելու համար, ամենից առաջ, անհրաժեշտ է հետևողականորեն պահպանել կուտակման ու սպառման ֆոնդերի գիտականորեն հիմնավորված համամասնությունը, ժամանակին իրացնել կապիտալ ներդրումները և ցածր շահութաբեր և վնասով աշխատող տնտեսությունների ֆոնդահագեցվածությունը հասցնել մյուս տնտեսությունների մակարդակին։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է 1973—1975 թթ. տարեկան, միջին հաշվով, 23 մլն ռուբլու լրացուցիչ կապիտալ ներդրումներ կատարել կոլտնտեսությունների բազայի վրա կազմակերպված սովխոզներում հիմնական արտադրաֆոնդերն ավելացնելու համար։

Հայտնի է, որ հանրապետության նախալեռնային և լեռնային գոտիներում գտնվող կոլտնտեսություններն ու սովխոզներն անհրաժեշտ պայմաններ չունեն գյուղատնտեսական արտադրության ըստ ամենայնի զարգացման և շահութաբերության բարձրացման համար։ Այստեղ արտադրությունը սիստեմատիկաբար տուժում է անբարենպաստ եղանակների և բնական աղետների հետևանքով։ Այդ գոտիների տնտեսությունների արտադրության տնտեսական պայմանները հավասարեցնելու, նրանց շահութաբեր գործունեության համար նորմալ պայմաններ ստեղծելու նպատակով, անհրաժեշտ է շերտավորել նրանց վաճառած և հանձնած մթերքների գնման գները։ Բնական-տնտեսական դժվար պայմաններում գտնվող տնտեսությունների համար, մեր կարծիքով, պետք է սահմանել հիմնական մթերքների գնման գների հավելումներ, կամ այնպիսի գներ, որոնք ամբողջովին հատուցեն այդ մթերքների արտադրության վրա կատարված ծախսերը և ապահովեն շահույթի ստացում։

Ապահովագրական ֆոնդի սահմանափակ միջոցներով հնարավոր չէ ծածկել լեռնային և նախալեռնային գոտիներում գտնվող սովխոզներում բնական աղետներից առաջացած հսկայական վնասները։ Դրա հետևանքով ստեղծվում է սեփական շրջանառու միջոցների ճեղքվածք, տնտեսություններն ընկնում են ֆինանսական ծանր դրության մեջ, աշխատողները կորցնում են իրենց վարձատրության այն մասը, որ պետք է ստանային սովխոզների աշխատանքի



վերջնական արդյունքների համար։ Այստեղից էլ թուլանում է աշխատողների նյութական շահագրգռությունը արտադրության հետագա զարգացման գործում։ Սովխոզներն այդ վիճակից դուրս բերելու, նրանց գործունեության համար նորմալ պայմաններ ստեղծելու և ֆինանսական դրությունը կայունացնելու նպատակով անհրաժեշտ է նրանց վարկ տալ՝ ապահովագրական ֆոնդի միջոցները լրացնելու, բնական աղետներից առաջացած վնասները և սեփական շրջանառու միջոցների ճեղքվածքը ծածկելու համար։ Վարկը կարելի է մարել ապահովագրական ֆոնդի միջոցների հաշվին, այդպիսին չլինելու դեպքում՝ բյուջեի հաշվին։

Ցածր շահութաբեր և վնասով աշխատող սովխոզները փաստորեն զրկված են աշխատողներին նյութապես խրախուսելու հնարավորությունից, քանի որ նյութական խրախուսման ֆոնդում միջոցներ չունեն։ Ուստի, նպատակահարմար է այդպիսի սովխոզներում պլանային վնասները պակասեցնել և դրանից գոյացած գումարների հաշվին ստեղծել նյութական խրախուսման ֆոնդ, այդ գումարների 15 տոկոսի չափով, բայց ոչ ավելի աշխատավարձի տարեկան պլանային ֆոնդի 12 տոկոսից։ Կասկածից վեր է, որ այդ միջոցառումը կբարձրացնի աշխատողների նյութական շահագրգռվածությունը, որը կնպաստի գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանն ու սովխոզների արտադրական-ֆինանսական պլանների հաջող կատարմանը։

Արմատավորելով առաջավոր տնտեսությունների փորձը և գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները, հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները կարող են և պետք է ապահովեն իններորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքների կատարումն ու գերակատարումը, հաստատուն բազա ստեղծելով հետագա առավել առաջընթացի համար։

Ա. Գ. ՄԱՐԴՈՅԱՆ
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության
կոլտնտեսությունների և սովխոզների գործերի
գլխավոր վարչության պետ



# ԳԻՆԸ ԵՎ ԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ*

*ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշման հիման վրա կոլտնտեսությունների և սովխոզների նյութական շահագրգռվածության հետագա խթանման նպատակով բարձրացվեցին մթերման գները։ Միաժամանակ զգալի չափով իջեցվեցին կոլտնտեսություններին վաճառվող մեքենաների, պահեստամասերի և արտադրության այլ միջոցների գները։ ՍՄԿԿ ԿԿ հոկտեմբերյան (1968 թ.) պլենումում նորից հարց դրվեց մթերման գների հետագա բարձրացման և, հատկապես, դրանց ըստ երկրի առանձին գոտիների դիֆերենցացման համար։*

*ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1970 թ. մարտի 30-ի հատուկ որոշմամբ բարձրացվեցին մսի և կաթի գնման գները։ Կիրառվում են անասունների գնման նոր գներ՝ ներառելով անցյալում սահմանված հավելումները։ Միաժամանակ կոլտնտեսությունների և սովխոզների կողմից պետական պլանից դուրս անասնապահական մթերքների վաճառքի համար գնման գների վրա սահմանված է հավելում՝ 50 տոկոսով։*

*Գնման գների բարձրացումը անասնապահական մթերքների արտադրության ավելացման կարևոր խթան հանդիսացավ։ 1966—1970 թթ. մսի արտադրության միջին տարեկան աճը, 1961—1965 թթ. համեմատությամբ, կազմել է 24,7, կաթինը՝ 24,4, բրդինը՝ 9,1 տոկոս։ 1970 թ. մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) հասավ 12,3 մլն, կաթինը՝ 82,9 մլն, բրդինը՝ 415 հազար տոննայի։*

*Չնայած անասնապահական մթերքների արտադրության այդպիսի չափերով ավելացմանը, դրա զարգացման տեմպերը դեռևս չեն բավարարում բնակչության աճող պահանջմունքները։ Անհամեմատ բարձր է անասնապահական արտադրանքի ինքնարժեքը և շատ ցածր շահութաբերությունը, իսկ որոշ տնտեսական շրջաններում դրա արտադրությունը նույնիսկ եկամտաբեր չէ։ 1970 թ. հանրապետության կոլտնտեսությունները և սովխոզները տավարի մսի արտադրությունից և իրացումից ունեցել են 1805 հազար ռուբլու վնաս, որն իրացված արտադրանքի ինքնարժեքի համեմատությամբ կազմում է 6 տոկոս։ 1970 թ. տավարի մսի արտադրությունը ՀՍՍՀ 35 շրջաններից 20-ի կոլտնտեսություններում եղել է վնասով, այդ թվում՝ Հոկտեմբերյանում՝ 38,6, Արարատում՝ 35,9, Ապարանում՝ 34,6, Արտաշատում՝ 27,1, Թալինում՝ 24 տո-*

** Տպագրվում է հարցադրման կարգով. Խմբ.։*



*կոսով և այլն։ Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները, ընդհանուր առմամբ վերցրած, վնաս են ունեցել նաև կաթի ու բրդի արտադրությունից։*

*Իհարկե, անասնապահական մթերքների արտադրությունը ոչ բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում է վնասաբեր։ Առանձին շրջաններում այն վաղուց դարձել է գյուղատնտեսության բարձր շահութաբեր ճյուղերից մեկը։ Օրինակ, 1970 թ. Հրազդանի շրջանի կոլտնտեսությունների արտադրած տավարի մսի շահութաբերությունը կազմել է 41,4, Սևանինը՝ 36,2, Անիինը՝ 28,6, Սիսիանինը՝ 25,2 տոկոս և այլն։*

*Մեր ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հանրապետության սովխոզների արտադրած անասնապահական մթերքների ինքնարժեքը, հատկապես վերջին տարիներում, ոչ թե իջել, այլ զգալի չափով բարձրացել է։*

*Չնայած այդ ժամանակաշրջանում մեծ չափերով բարձրացել են գնման գները (տավարի մսինը՝ 6,3, խոզինը՝ 1,9, ոչխարինը՝ 3,3, կաթինը՝ 1,8, բրդինը՝ 3,1 անգամ), բայց ինքնարժեքի բարձրացման հետևանքով անասնապահական մթերքների արտադրությունից և վաճառքից ստացված վնասը ո՛չ միայն չի պակասել, այլ մեծացել է։*

*Անասնապահական արտադրանքի ինքնարժեքը հիմնականում բարձրացել է աշխատավարձի և կերի ծախսերն ավելանալու պատճառով։*

*Անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողների նյութական շահագրգռության բարձրացման նպատակով, հատկապես վերջին տարիներին, զգալի չափով ավելացել է անասնապահների աշխատավճարը։ Բայց դրան համաչափ չբարձրացավ անասնապահների աշխատանքի արտադրողականությունը (մեքենայացման և մասնագիտացման ցածր մակարդակի պատճառով), նույնիսկ միավոր արտադրանքի վրա կատարված ծախսերն ավելացել են, որը բացասաբար է անդրադարձել արտադրանքի ինքնարժեքի վրա։ Այսպիսով, մի կողմից՝ սիստեմատիկաբար ավելանում են անասնապահական մթերքների գնման գները՝ նպատակ ունենալով բարձրացնել գյուղատնտեսության այդ ճյուղի շահութաբերությունը և խթանել անասնապահական մթերքների ավելացմանը, մյուս կողմից՝ արտադրանքի ինքնարժեքի բարձրացմամբ իջնում է շահութաբերությունը։ Հարց է ծագում, անհրաժե՞շտ է արդյոք ընթացիկ հնգամյակում ևս բարձրացնել անասնապահական արտադրանքների մթերման գները, թե՞ ոչ։ Ճիշտ է, անասնապահական մթերքների ավելացման գործում կոլտնտեսությունների և սովխոզների նյութական շահագրգռության, ինչպես նաև անասնապահության արագ զարգացման համար պետք է բարձրացնել գյուղատնտեսության այդ ճյուղի շահութաբերությունը, այն դարձնելով ժողովրդական տնտեսության ամենաբարձր շահութաբերություն ունեցող ճյուղերից մեկը։ Սակայն, մեր կարծիքով, դա անհրաժեշտ է կատարել ո՛չ թե մթերման գների բարձրացմամբ, այլ ինքնարժեքի իջեցմամբ։*

*ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է լայն չափով ստեղծել մասնագիտացված անասնապահական տնտեսություններ և արդյունաբերական հիմունքներով անասնապահական մթերքներ արտադրել։ Դա հնարավորություն կընձեռի մեքենայացնել աշխատատար պրոցեսները, կազմակերպել անասունների ինտենսիվ բտումը, կրճատել աշխատանքային և կերի ծախսերը։ Օրինակ, Ղրիմի մարզի «Կրասնովկա» մասնագիտացված*

սովխոզում, որտեղ տավարի մսի արտադրությունը կատարվում է արդյունաբերական հիմունքներով, մեկ մարդը խնամում է 500 անասուն: Այդ սովխոզում մեկ անասունի միջին քաշը հասնում է 400—420 կգ, իսկ 1 ցենտներ մսի ինքնարժեքը 1970 թ. կազմել է ընդամենը 78 ռ. 22 կ. (տե՛ս «Экономическая газета», 1971 г., № 33, стр. 19):

Անասնապահական մթերքների արտադրության շահութաբերությունն անփոփոխ գների պայմաններում, պայմանավորված է ո՛չ միայն ինքնարժեքով, այլև պետությանը վաճառվող արտադրանքի որակով: Գործող գների սիստեմում հաշվի է առնված որակի բարձրացումից ստացվող տնտեսական արդյունավետությունը:

ՀՍՍՀ կոլտնտեսությունների և սովխոզների հաշվետվությունների վերլուծությունը ցույց է տվել, որ վերջին 5 տարիների ընթացքում որոշ չափով բարելավվել է պետությանը վաճառված անասնահումքի որակը: Եթե 1966 թ. հանրապետության կոլտնտեսություններից և սովխոզներից գնված խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր թվի 8,5 տոկոսն էր բարձր գիրության, ապա այն 1970 թ. կազմել է 12,7 տոկոս, համապատասխանաբար՝ միջին գիրությանը 59,3 և 64,7 տոկոս, իսկ միջինից ցածր գիրության անասունների տեսակարար կշիռը 27,1-ից իջել է 20,2 տոկոսի, նիհար անասուններինը՝ 5,1-ից մինչև 2,4-ի: Զգալի չափով բարձրացել է նաև պետությանը վաճառած ոչխարի և խոզի մսի որակը: Չնայած դրան, ՀՍՍՀ կոլտնտեսությունների և սովխոզների կողմից պետությանը վաճառած անասնահումքի որակը, միութենական մյուս հանրապետությունների համեմատությամբ, դեռևս ցածր է: Եթե ՍՍՀՄ-ում բարձր գիրության խոշոր եղջերավոր անասունների տեսակարար կշիռը մթերված ամբողջ քանակի մեջ 1970 թ. կազմել է 22, Լիտվական ՍՍՀ-ում՝ 61, Էստոնական ՍՍՀ-ում՝ 49, Լատվիական ՍՍՀ-ում՝ 45, ապա՝ Հայկական ՍՍՀ-ում՝ ընդամենը 12,7 տոկոս:

Անասնապահական մթերքների գնման գները հետագայում պետք է կատարելագործվեն այնպես, որ բազմակողմանի հաշվի առնվի որակի բարձրացումից ստացվող արդյունավետությունը: Կաթի գնման գներում հաշվի է առնված միայն որակական մեկ ցուցանիշ՝ յուղայնությունը: Իսկ մի շարք որակական ցուցանիշներ, ինչպիսիք են՝ սպիտակուցների քանակը, թթվության աստիճանը, մաքրությունը և այլն, հաշվի չի առնված: Հասկանալի է, որ գների այսպիսի սիստեմը բավարար չափով չի խթանում կաթի որակի բարձրացմանը: 1969 թ. հանրապետության շատ շրջանների (Ամասիայի, Ապարանի, Կարմիրի և այլն) կոլտնտեսությունների և սովխոզների՝ պետությանը վաճառած կաթի 50 տոկոսից ավելին կեղտոտության պատճառով չի համապատասխանել պետական ստանդարտին:

Գյուղատնտեսական արտադրության յուրահատկություններից մեկը նրա սեզոնային բնույթն է: Միևնույն աշխատանքը տարվա տարբեր ժամանակներում ստեղծում է տարբեր ծավալի սպառողական արժեքներ: Հատկապես դա բնորոշ է անասնապահությանը: Այստեղ ձմռան ամիսներին աշխատանքի համեմատաբար մեծ ծախսումներով քիչ արտադրանք է ստացվում, քան ամռանը և գարնանը: Դրա պատճառով տարվա ընթացքում բնակչության մատակարարումը կատարվում է անհամաչափ, ինչպես նաև բացասաբար է անդրադառնում կաթի և մսի արդյունաբերության ձեռնարկությունների աշխատանքի վրա: Անասնապահական մթերքների արտադրության սեզոնայնության մեղ-



մացումը ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունի: Այդ գործում
որոշակի դեր կարող են խաղալ սեզոնային գների կիրառումը:
Գնման գների հետագա կատարելագործման կարևորագույն խնդիրներից
մեկը դրանց ավելի խոր դիֆերենցացումն է՝ ըստ առանձին բնակլիմայական
գոտիների: Գնման գների գոտային դիֆերենցացման անհրաժեշտությունը
բխում է նրանից, որ բնակլիմայական և տնտեսական պայմանների տարբե-
րության պատճառով երկրի առանձին շրջաններում գյուղատնտեսական ար-
տադրանքի միևնույն քանակի արտադրության համար տարբեր չափի
ծախսեր է պահանջվում: Դրա հետևանքով տնտեսությունները նյութական և
աշխատանքային հավասար ծախսումների դիմաց անհավասար եկամուտներ
են ստանում:
ՍՄԿԿ ծրագրում խնդիր է դրված երկրի շրջանների կոլտնտեսությունների
և սովխոզների համար հավասար տնտեսական պայմաններ ստեղծել, որպեսզի
նրանք, անկախ բնակլիմայական պայմանների տարբերությունից, հավասար
աշխատանքի դիմաց հավասար եկամուտներ ստանան:
Կենտրոնացված կարգով, ըստ առանձին հանրապետությունների, սահ-
մանված գները պետք է դիֆերենցացնել առանձին գոտիների համապատաս-
խան, հաշվի առնելով նրանց բնական-տնտեսական պայմանների տարբերու-
թյունը:
Չնայած ՀՍՍՀ տերիտորիայի փոքրությանը, նրա առանձին շրջանների
բնակլիմայական պայմանները խիստ բազմազան են: Բնակլիմայական և տնտե-
սական պայմանների տարբերության պատճառով հանրապետության առան-
ձին շրջաններում արտադրված անասնապահական մթերքների ինքնարժեքը
տարբեր է: 1965—1969 թթ. արտադրված 1 ցենտներ խոշոր եղջերավոր անա-
սունի մսի ինքնարժեքը Ղափանի շրջանում կազմել է 103 ռ. 11 կ., Կամոյի
շրջանում՝ 103 ռ. 23 կ., Ղուկասյանում՝ 104 ռ. 01 կ., իսկ Արարատում՝
170 ռ. 16 կ., Մասիսում՝ 167 ռ. 53 կ., Շահումյանի շրջանում՝ 164 ռ.
32 կ.: Մեծ տարբերություն կա նաև հանրապետության առանձին շրջաննե-
րում արտադրված ոչխարի մսի ինքնարժեքի միջև: 1965—1969 թթ. 1 ցենտ-
ներ ոչխարի մսի միջին ինքնարժեքը կազմել է Արտաշատի շրջանում 122 ռ.
84 կ., Շամշադինում՝ 121 ռ. 47 կ., Կալինինոյում՝ 73 ռ. 81 կ., Նոյեմբերյա-
նում՝ 76 ռ. 03 կ. և այլն: Ինքնարժեքների այդպիսի մեծ տարբերություններ
կան առանձին շրջաններում արտադրված խոզի մսի, կաթի և անասնապահա-
կան մյուս մթերքների գծով: Սակայն ՀՍՍՀ-ում հաշվի չեն առնված այդ տար-
բերությունները և շրջանների համար սահմանվել է մեկ միասնական գին,
դրանով իսկ անհավասար տնտեսական պայմաններ են ստեղծված բնակլի-
մայական տարբեր պայմաններում գտնվող կոլտնտեսությունների և սովխոզ-
ների համար:
Միութենական կառավարության կողմից առանձին հանրապետություննե-
րի համար սահմանված գնման գները պետք է դիտել որպես դիրեկտիվ, սահ-
մանային գներ: Դրանք միութենական հանրապետությունները պետք է դիֆե-
րենցացնեն ըստ առանձին շրջանների, հաշվի առնելով բնակլիմայական և
տնտեսական այն պայմանների տարբերությունը, որ կա հանրապետությու-
նում: Մթերման գների դիֆերենցացման համար հանրապետության շրջանն-
րը պետք է խմբավորել ըստ գնային գոտիների, հիմք ընդունելով առանձին
շրջանների մի քանի տարվա միջին ինքնարժեքը: Ինքնարժեքը համեմատա-

բար լավ է արտահայտում բնակլիմայական և տնտեսական պայմանների այն տարբերությունները, որ կան առանձին շրջաններում։ Ճիշտ է, ինքնարժեքի մակարդակի վրա կարող են ազդել նաև սուբյեկտիվ գործոնները, անտնտեսվարությունը, աշխատանքի վատ կազմակերպումը և այլն. անհրաժեշտ է գների սահմանման ընթացքում հնարավորին չափ հաշվի առնել դրանք։

Անասնապահության կարևորագույն արտադրանքներից մեկը կաշվեհումքն է։ Անասնապահության և մսի արդյունաբերության շահութաբերությունը զգալի չափով պայմանավորված է անասնահումքի գների մակարդակով։ Գյուղատնտեսական ձեռնարկությունները կաշվեհումքը մթերման կազմակերպություններին հանձնում են Միության հանրապետությունների համար սահմանված միասնական գնման գներով։ Մսի կոմբինատներն անասունների մորթից հետո ստացված կաշվեհումքը հանձնում են կաշվի վերամշակման բազաներին կամ անմիջապես կաշվի ձեռնարկություններին՝ մեծածախ գներով։ Ներկայումս գործող գնացուցակի համաձայն խոշոր եղջերավոր անասունների 1 կգ կաշվի գինը, միջին հաշվով, 1 ռուբլի է, մանր եղջերավոր անասունի մորթունը՝ 10 դմ$^{2}$— 60 կ. և խոզինը՝ 10 դմ$^{2}$— 40 կ.։

Ինչպես գնման, այնպես էլ մեծածախ գները չեն նպաստում այդ խիստ դեֆիցիտային հումքի ռացիոնալ օգտագործմանը։ Գլխավոր թերությունն այն է. որ անհամեմատ ցածր է սահմանված հասարակական անհրաժեշտ ծախսերի մակարդակից և շատ դեպքերում նույնիսկ չի ապահովում տնտեսությունների՝ դրա արտադրության վրա կատարված ընթացիկ ծախսերը։

Կաշվեհումքի և մսամթերքների գների միջև եղած անհամապատասխանությունը հետևանք է այն բանի, որ վերջին տարիներին մի քանի անգամ բարձրացել են ինչպես անասնահումքի մթերման, այնպես էլ մսամթերքների մեծածախ գները, իսկ կաշվեհումքինը մնացել են անփոփոխ։ Ներկայումս 1 կգ տավարի մսի մեծածախ գինը սահմանված է 1 ռ. 54 կ., իսկ 1 կգ տավարի կաշվինը՝ 1 ռ., կամ կաշվի գինը, մսի համեմատությամբ, ցածր է 35 տոկոսով, այն դեպքում, երբ արտասահմանյան շատ երկրներում կաշվեհումքի գները հավասարեցված են մսի գներին։ Օրինակ՝ Մեծ Բրիտանիայում կաշվեհումքի գինը կազմում է մսի գնի 93 տոկոսը։ Պետք է նկատի ունենալ հետևյալ և ոչ պակաս կարևոր նշանակություն ունեցող հանգամանքը։ Պետական բյուջեն տարեկան մոտ 7 մլրդ ռուբլի տրամադրում է մսի արդյունաբերության ձեռնարկություններին մսի վաճառքից ստացվող վնասը հատուցելու համար։ Միաժամանակ պետական բյուջեն կաշվե կոշիկի և այլ կաշվե արտադրանքների իրացումից շրջանառության հարկի ձևով տարեկան գանձում է մոտ 2 մլրդ ռուբլի (Гос. бюджет СССР за 1970 г. и статистический сборник ЦСУ СССР при Совмина СССР и структура розничных цен на товары народного потребления за 1968 г.): Մեր կարծիքով, նպատակահարմար է բարձրացնել կաշվեհումքի մեծածախ գները, այն հավասարեցնելով մսի գներին, այսինքն՝ 1 կգ տավարի կաշվի մեծածախ գինը սահմանել, միջին հաշվով, 1 ռ. 54 կ., համապատասխանաբար բարձրացնելով խոզի կաշվի, ոչխարների և այծերի մորթիների գները։ Միաժամանակ պետք է վերանայել և բարձրացնել կոլտնտեսություններից, ինչպես նաև բնակչությունից մթերվող կաշվեհումքի և մորթիների գները։ Դա հնարավորություն կընձեռի վերանայել, իջեցնել մսի կոմբինատներին հանձնվող անասնահումքի հաշվարկային գները և պակասեցնել մսի և մսամթերքների վաճառքից առաջացող վնասները հատուցելու համար պետական բյուջեից ստացվող հատկացումները։



Կաշվի գործարանների և կոշիկի ֆաբրիկաների տնտհաշվարկային շահույթի ապահովման նպատակով անհրաժեշտություն կզգացվի բարձրացնել նաև կաշվի և կոշիկի մեծածախ գները։

Վերջին տասնամյակում մսի արտադրության ավելացման գործում կոլտնտեսությունների և սովխոզների նյութական շահագրգռվածության բարձրացման նպատակով, ինչպես ասացինք, պետության կողմից բարձրացվել են անասնահումքի գնման գները։ Աշխատավորության կենսամակարդակը պահպանելու, նրանց գնողունակ պահանջարկը մսի և մսամթերքների նկատմամբ չիջեցնելու նպատակով մանրածախ գները թողնվել են անփոփոխ։ Դրա հետևանքով ներկայումս գործող մանրածախ գները չեն ծածկում մսի և մսամթերքների արտադրության և իրացման վրա պետության կատարած ծախսերը։ Մսի արտադրությունից և իրացումից պետության կրած վնասը տարեցտարի ավելանում է։ Այն 1967 թ. կազմել է 4,6 մլրդ ռուբլի, 1968 թ.՝ 5,3, 1969 թ.՝ 5,6, 1970 թ.՝ 6,7 մլրդ ռուբլի, իսկ ընթացիկ հնգամյակի վերջում կկազմի մոտ 8 մլրդ ռուբլի։

Մսի և մսամթերքների առանձին տեսակների մանրածախ գները սահմանելիս հաշվի են առնվում արտադրության և իրացման ծախսերը, մթերքների սննդարարությունը, պահանջարկը և առաջարկը, գնորդների ճաշակը և այլն։

Ներկայումս մսի և մսամթերքների առանձին տեսակների մանրածախ գների միջև անհամապատասխանություն է ստեղծվել։ Այդ արտահայտվում է նրանում, որ համեմատաբար բարձր գին է սահմանված խոզի մսի համար, քան տավարի։ Դա, իհարկե, չի կարելի հիմնավորված համարել։

Եվրոպական երկրներում տավարի միսը թանկ է խոզից։ ԱՄՆ-ում տավարի մսի գինը մանրածախ առևտրի ցանցում 10—15 տոկոսով բարձր է խոզի մսից։ Ճիշտ է, խոզի մսի կալորիականությունը բարձր է տավարի մսից, որովհետև այն անհամեմատ մեծ քանակությամբ ճարպ է պարունակում։ Սակայն պետք է նկատի ունենալ, որ մսի սննդարարությունը գնահատվում է ոչ թե ճարպերի քանակությամբ, այլ, առաջին հերթին, սպիտակուցների պարունակությամբ։ Կենդանի ճարպը մսի հիմնական սննդային հատկության որոշիչը չէ, քանի որ այն մարդու օրգանիզմում համեմատաբար վատ է մարսվում և յուրացվում, քան ճարպերի մյուս տեսակները (կարագը)։ Դրա համար մսի առանձին տեսակների մանրածախ գների միջև ճիշտ հարաբերակցություն ստեղծելու նպատակով չի կարելի հիմք ընդունել միայն կալորիականությունը։ Պետք է նկատի ունենալ նաև այն, որ պետության կողմից 1 կգ տավարի մսի արտադրության և իրացման վրա կատարված ծախսերը համեմատաբար բարձր են, քան խոզինը, իսկ գինը, ինչպես ասացինք, ընդհակառակը, համեմատաբար ցածր է խոզի մսից։ Մեր կարծիքով, նպատակահարմար է խոզի մսի մանրածախ գների մակարդակը հավասարեցնել տավարի մսին, իսկ խոզի մսի ճարպոտ տեսակների գները պետք է, միջին հաշվով, 10 տոկոսով ցածր սահմանել։

Նորմալ հարաբերակցություն չկա նաև տավարի մսի I և II կատեգորիաների միջև։ Տավարի մսի I կատեգորիայի մանրածախ գինը 66 տոկոսով բարձր է, քան II-ինը։ I և II կատեգորիաների սննդային օգտակարությունն իրարից շատ քիչ են տարբերվում և դրանց գների միջև տարբերությունը 20 տոկոսից ավելի չպետք է լինի։

Տավարի մսի մանրածախ գների մակարդակը թողնելով անփոփոխ, նպատակահարմար է մոտ. 10 տոկոսով իջեցնել I կատեգորիայի գինը և համապատասխանաբար բարձրացնել II-ինը:

Ելնելով անասնահումքի որակից (գիրությունից), մսի մանրածախ գները դիֆերենցացված են նաև ըստ կատեգորիաների: Տավարի և ոչխարի մսի գները սահմանված են 2 տեսակի համար: Օրինակ, տավարի մսի I տեսակի 1 կգ մանրածախ գինը սահմանված է 1 ռ. 80 կ.: Հաշվի առնելով անասնահումքի առանձին մասերի օգտակարությունը (մսի ելքը, կալորիականությունը, սննդարարությունը և այլն), մսի մանրածախ գները դիֆերենցացված են. տավարի մսինը՝ 3, ոչխարինը, այծինը և խոզինը՝ 2 տեսակների: Օրինակ՝ տավարի մսի I տեսակի մեջ մտցված են անասունի մեջքի, հետևի և կրծքի մասերը, 2-րդի մեջ՝ թիակի, ուսի և փորի, 3-րդի մեջ՝ վզի և ոտքի ծայրերի մասերը:

Դրան համապատասխան մանրածախ գները դիֆերենցացված են հետևյալ կերպ: Տավարի մսի I կատեգորիայի I տեսակի համար մանրածախ գինը սահմանված է 1 կգ-ը՝ 2 ռ., II-ինը՝ 1 ռ. 60 կ., 3-րդինը՝ 60 կ.: Մսի գների այդպիսի բարդ դիֆերենցիացիան (ըստ գոտիների, կատեգորիաների և տեսակների) պրակտիկայում մեծ դժվարություններ է ստեղծում, իսկ որոշ դեպքերում տեղիք է տալիս չարաշահումների: Առևտրի որոշ աշխատողներ, օգտվելով մսի պակասից, այն չեն տեսակավորում և անասունի մարմնի բոլոր մասերը վաճառում են I տեսակի գնով: Պետք է պայքարել մանրածախ գների ամեն տեսակ խախտման դեմ և խստորեն պատժել չարաշահողներին: Սակայն վարչական և հասարակական միջոցառումների կիրառումը հարցի մի կողմն է: Անհրաժեշտ է այնպիսի պայմաններ ստեղծել, որ առանձին անազնիվ մարդկանց համար հնարավոր չլինի խախտել մանրածախ գները: Մսի մանրածախ գների խախտման դեմ պայքարելու կարևոր միջոցներից մեկը, մեր կարծիքով, կլինի այն, որ միսը նախօրոք տեսակավորվի, փաթեթավորվի, նշանակվեն գները մսի կոմբինատներում և հետո բաց թողնվի առևտրական կազմակերպություններին: Դա հնարավորություն կընձեռի բարձրացնելու առևտրի աշխատողների աշխատանքի արտադրողականությունը և առևտրի կուլտուրան: Հնարավորություն կստեղծվի խանութներից դուրս նետել կացինն ու քյոթուկը, դրանց հետ մեկտեղ ազատվել ֆիզիկապես առողջ զգալի թվով տղամարդ վաճառողներից, որոնց աշխատանքը, անհամեմատ, օգտակար կլինի ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում, իսկ այդ աշխատանքում ընդունել միայն կանանց և հաշմանդամներին: Միաժամանակ, ինչպես ասացինք, մսի նախնական տեսակավորման և փաթեթավորման շնորհիվ հնարավոր կլինի վերացնել մանրածախ գների խախտումները:

Շ. Գ. ՆԱԶԱՐՅԱՆ



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, Հայաստանի ֆիզիոլոգիական ընկերության նախագահ

# Լ. Ա. ՕՐԲԵԼԻ

(ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



Հայ ժողովրդի պանծալի զավակ Լևոն Աբգարի Օրբելին XX դարի ֆիզիոլոգիական գիտության ամենակարկառուն դեմքերից մեկն է: Նրա անունը ոսկե տառերով է գրված հայրենական և համաշխարհային ֆիզիոլոգիայի պատմության մեջ: Լ. Ա. Օրբելին ապրեց մի աչքանչելի, զարմանալի բեղմնավոր ստեղծագործական կյանք և սերունդներին թողեց բազմահարուստ գիտական ժառանգություն, միշտ կենդանի իդեաների անսպառ շտեմարան: Հայ ֆիզիոլոգների համաստեղության մեջ իր տաղանդի մեծությամբ փայլում էր Լևոն Օրբելին՝ Ի. Պավլովի մերձավորագույն աշակերտը և հավատարիմ զինակիցը, համաշխարհային անուն վաստակած գիտնականը, որը վիթխարի ավանդ ներդրեց հայրենական ու համաշխարհային ֆիզիոլոգիայի զարգացման բնագավառում:

Լևոն Աբգարի Օրբելին սերում է հայ տոհմիկ ընտանիքից, ծնվել է 1882 թ. հունիսի 25-ին (հին տոմարով), նախկին Երևանյան նահանգի Դարաչիչագ (այժմ Ծաղկաձոր) գյուղում. հայրն անվանի իրավաբան Աբգար Հովսեփի Օրբելին էր: Լ. Ա. Օրբելու ծնողները կրթված, զարգացած, ժամանակի առաջադեմ գաղափարներին հարող խավին էին պատկանում: Նրանք բացառիկ նվիրվածությամբ էին դաստիարակում ու կրթում իրենց զավակներին՝ Ռուբենին, Լևոնին, Հովսեփին: Ուստի, պատահական չէ, որ երեքն էլ հետագայում դարձան ականավոր գիտնականներ:

Լևոն Օրբելին աճեց հայ մտավորական միջավայրում: Նրա կենսագիրները պատմում են, որ դեռ պատանի հասակից Լևոնը ցուցաբերում էր բազմակողմանի ընդունակություններ. զարմանալի աշխատասեր, օրինակելի աշակերտ էր, հրապուրվում էր երաժշտությամբ, թատրոնով: 1899 թ. ոսկե մեդալով ավարտելով Թիֆլիսի III գիմնազիան, մեկնում է Պետերբուրգ և ընդունվում ռազմա-բժշկական ակադեմիա: Առաջին կուրսում մեծ հետաքրքրասիրություն է ցուցաբերում բժշկության տեսական հիմունքների նկատմամբ, հափշտակված լսում հայտնի հյուսվածքաբան, պրոֆեսոր Մ. Դ. Լավդովսկու դասախոսությունները: Լ. Օրբելին անգամ գիտական փորձեր դրեց Լավդովսկու լաբորատորիայում, բայց նրա կյանքի ու գիտական գործունեության ուղին որոշեց մի ուրիշ գիտնական՝ Ի. Պ. Պավլովը, որը ռազմա-բժշկական ակադեմիայի երկրորդ կուրսում դասախոսություններ էր կարդում ֆիզիոլոգիայից: Դեռ երրորդ կուրսում Օրբելին խնդրում է Պավլովին՝ նրա լաբորատորիայում գիտական աշխատանք կատարել: Պավլովն ընդառաջում է Օրբելու ցանկությանը և առաջարկում ուսումնասիրել թափառող նյարդի ազդեցությունը ստամոքսի գործունեության վրա: Նա հաջողությամբ կատարեց իր առջև դրված խնդիրը և 1903 թ. հոկտեմբերի 25-ին ռուս բժիշկների ընկերության նիստում հանդես եկավ իր առաջին գիտական զեկուցմամբ, որն արժանացավ բարձր գնահատականի, և ռազմա-բժշկական ակադեմիայի կոնֆերանսը, Պավլովի առաջարկությամբ, այդ հետազոտության համար Օրբելուն պարգևատրեց ոսկե մեդալով:

Ավարտելով ռազմա-բժշկական ակադեմիան՝ Օրբելին ցանկանում էր մնալ այնտեղ որպես ասպիրանտ, բայց այդ նրան չհաջողվեց. նա ստիպված էր աշխատել որպես բժիշկ, սկզբում Կրոնշտադի, ապա Պետերբուրգի ծովային հոսպիտալներում: Այստեղ նա կարողացավ ժամանակ գտնել գիտահետազոտական աշխատանք կատարելու փորձարարական բժշկության ինստիտուտում՝ Պավլովի առաջարկած թեմայով: Այս անգամ նրա խնդիրն էր պարզել թե առարկաների ինչպիսի օպտիկական հատկությունների միջոցով կարելի է մշակել շների մոտ պայմանական ռեֆլեքսներ: Հիմնական եզրակացությունը, որին հանգեց Օրբելին, այն էր, որ շներն ունակ չեն տարբերելու առարկաների գույնը, այլ ընկալում են միայն դրանց պայծառությունը, ձևը, շարժումները: Կատարած աշխատանքն էլ դարձավ նրա դոկտորական դիսերտացիայի նյութը, որը հաջողությամբ պաշտպանեց 1908 թ.՝ 26 տարեկան հասակում: Այդ ժամանակ Օրբելին արդեն Պավլովի օգնականն էր փորձարարական բժշկության ինստիտուտի ֆիզիոլոգիական լաբորատորիայի գծով: Այդ օրերից սկսած նա ամբողջովին նվիրվեց ֆիզիոլոգիական գիտությանը:

1909 թ. սկզբներին ռազմա-բժշկական ակադեմիան, Պավլովի միջնորդությամբ, Օրբելուն երկու տարով ուղարկեց արտասահմանյան գիտական գործուղ-



ման: Իր առաջադրած թեկնածուին Պավլովը բնութագրում է հետևյալ խոսքերով. «Դ-ր Օրբելին ներկայացրել է երեք փորձարարական աշխատանք, որոնցից մեկը վերաբերում է մարսողության ֆիզիոլոգիային, իսկ երկուսը՝ պայմանական ռեֆլեքսների ուսմունքին: Այդ ուսումնասիրությունները, որոնք պահանջում էին հեղինակից երկարատև ու համառ աշխատանք, աչքի են ընկնում գիտական մեծ արժանիքներով: ...Օրբելու հետազոտությունների արդյունքներն ունեն լիակատար գիտական հավաստիության բնույթ:

Օրբելու աշխատությունների երրորդ խոշոր արժանիքն այն է, որ դրանցում զգացվում է մտքի մշտական և լարված աշխատանք, ինչպես քննադատական, այնպես էլ ընդհանրացնող: Այս ամենի հիման վրա, պետք է ընդունել, որ դոկտոր Օրբելին արտասահմանյան գործուղման համար ամենաարժանավոր թեկնածուն է»: Արտասահմանում Օրբելին հնարավորություն ունեցավ ծանոթանալու և տիրապետելու ֆիզիոլոգիական հետազոտությունների նորագույն մեթոդներին, գիտական ուսումնասիրություններ կատարելու այն ժամանակվա լավագույն լաբորատորիաներում: Լայպցիգում նա աշխատում էր տեսողության ֆիզիոլոգիայի հայտնի մասնագետ Էվալդ Գերինգի և խոշոր նեյրոհիստոլոգ Ֆլեքսիգի լաբորատորիաներում, Հիեննում՝ Հարտեկի լաբորատորիայում: Գերմանիայից նա մեկնեց Անգլիա. Քեմբրիջում աշխատեց հայտնի ֆիզիոլոգ, վեգետատիվ նյարդային համակարգի լավագույն մասնագետ Լենգլիի լաբորատորիայում, ինչպես նաև Բարկրոֆտի լաբորատորիայում, որն այն ժամանակ ուսումնասիրում էր արյան շնչառական ֆունկցիան: Որոշ ժամանակ Օրբելին եղավ նաև Իտալիայում՝ Նեապոլի կենսաբանական լաբորատորիայում: Այդ լաբորատորիաներում նա ո՛չ միայն ծանոթանում էր նորագույն սարքերին, այլև կատարում էր փորձարարական հետազոտություններ, որոնց արդյունքները հրապարակվեցին մի շարք հոդվածներում և մեծ ուշադրության արժանացան: Արտասահմանում ձեռք բերած փորձը նա լայնորեն օգտագործեց իր հետագա գիտական գործունեության ընթացքում: Գիտելիքներով և փորձով հարստացած, Օրբելին 1911 թ. վերադառնում է Պետերբուրգ և շարունակում աշխատել փորձարարական բժշկության ինստիտուտում: Միաժամանակ նա հրավիրվում է՝ ռազմա-բժշկական ակադեմիայում կարդալու զգայարանների ֆիզիոլոգիայի նոր կուրսը: 1913 թ. հրավիրվում է ղեկավարելու նաև հայտնի անատոմ և մանկավարժ Պ. Ֆ. Լեսգաֆթի անվան Պետերբուրգի կենսաբանական լաբորատորիայի ֆիզիոլոգիական կաբինետը:

1917 թ. ապրիլին ֆիզիոլոգների համառուսաստանյան առաջին համագումարում Լ. Ա. Օրբելին ընտրվում է Ռուսաստանյան ֆիզիոլոգների ընկերության վարչության և Սեչենովի անվան ֆիզիոլոգիական ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ: Ինչպես տեսնում ենք, դեռ նախահեղափոխական շրջանում Լ. Ա. Օրբելին առաջնակարգ ֆիզիոլոգ էր, փայլուն մանկավարժ, գիտա-հասարակական ակտիվ գործիչ: Սակայն նրա տաղանդն առանձնահատուկ ուժով ծաղկեց Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակից հետո, երբ գիտության զարգացման համար բացվեցին նոր հորիզոններ: Կարճ ժամանակամիջոցում Լեսգաֆթի անվան կենսաբանական կայանի բազայի վրա ստեղծվեց բնագիտական ինստիտուտ, որտեղ համեստ ֆիզիոլոգիական կաբինետը վերածվեց ֆիզիոլոգիական բաժանմունքի՝ ընդլայնված հաստիքներով և գիտա-տեխնիկական բազայով, որի ղեկավարը շարունակեց մնալ Օրբելին: Նույն

ինստիտուտի բազայի վրա կազմակերպվեց ֆիզիկական կրթության ինստիտուտը, որը նույնպես կրեց Լեսգաֆտի անունը: Այս ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնը մինչև 1927 թ. նույնպես գլխավորում էր Օրբելին:

Օրբելու ստեղծագործական մտահղացումների իրականացման, մանկավարժական տաղանդի ծաղկման գործում առանձնահատուկ նշանակություն ունեցավ 1920 թ նրա ընտրվելը պետերբուրգյան 1-ին բժշկական ինստիտուտի պրոֆեսոր: Նրա նկատմամբ ականավոր գիտնականների ցուցաբերած այդ վստահությունն Օրբելու գիտական ու մանկավարժական տաղանդի գնահատման նոր ապացույց էր: Օրբելու մատչելի, գրավիչ, բովանդակալից դասախոսությունները մեծ հետաքրքրություն էին առաջացնում ուսանողների շրջանում ֆիզիոլոգիական գիտության նկատմամբ: Նրանցից շատերը ցանկություն էին հայտնում մասնակցելու ամբիոնում կատարվող գիտական փորձերին: Դա հնարավորություն էր ընձեռում Օրբելուն՝ ընդլայնելու իր գիտական հետազոտությունների շրջանակը: Այդ հնարավորություններն ավելի մեծացան 1925 թ., երբ ռազմա-բժշկական ակադեմիայի ֆիզիոլոգիայի ամբիոնը Պավլովը հանձնեց իր լավագույն աշակերտին ու հետնորդին՝ Լ. Օրբելուն: Այսպիսով, քսանական թվականները կարևոր փուլ հանդիսացան Օրբելու ստեղծագործական կյանքում. հենց այդ տարիներին էլ նախանշվեցին նրա գիտական հետազոտությունների հիմնական ուղղությունները:

Լ. Ա. Օրբելու առաջին խոշոր նվաճումն այն էր, որ նա դրեց ֆիզիոլոգիական գիտության մի նոր բնագավառի՝ էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի հիմքը: Հենց այդ էվոլյուցիոն մոտեցումն էր, որ նրան հնարավորություն ընձեռեց ստեղծելու ինքնատիպ մի ուսմունք սիմպատիկ նյարդային համակարգի հարմարեցնող-սնուցիչ (ադապտացիոն-տրոֆիկ) գործունեության մասին: Իր աշակերտ Ա. Գ. Գինեցինսկու հետ միասին Լ. Ա. Օրբելին հայտնագործեց սիմպատիկ նյարդային համակարգի հատուկ տրոֆիկ ներգործությունը կմախքային մկանի վրա, որն ստացավ «Օրբելի-Գինեցինսկու ֆենոմեն» անվանումը և հաստատուն տեղ գրավեց ֆիզիոլոգիայի դասագրքերում: Այդ հայտնագործությանը հաջորդեցին Օրբելու և նրա մյուս աշակերտների մի շարք փորձարարական հետազոտություններ, որոնք ավելի խորացրին և նոր աստիճանի բարձրացրին Օրբելու ուսմունքը սիմպատիկ նյարդային համակարգի հարմարեցնող-սնուցիչ դերի մասին: Այդ ուսմունքը հանդիսացավ սովետական էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի հիմք հունը: Էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի արմատական պրոբլեմներից մեկը, որը նույնպես առաջ քաշեց Օրբելին, կենտրոնական նյարդային համակարգում կոորդինացիոն հարաբերությունների պրոբլեմն էր: Դեռ 1923 թ. նա գրել է. «Պատրաստի կոորդինացիոն հարաբերությունները, որոնցով մենք ծնվում ենք, ձևավորվել են հազարամյակների ընթացքում նույն հիմնական օրենքներով, որոնցով ձևավորվում են նոր պայմանական կոորդինացիոն հարաբերություններ շաբաթների, իսկ երբեմն օրերի ու ժամերի ընթացքում մեր անհատական կյանքի ընթացքում» (Լ. Ա. Օրբելի, Ընտիր երկեր, հ. 1, էջ 124, 1961, ռուս. հրատ.): Նույն տարիներին իր լաբորատորիայում կատարած հետազոտությունների հիման վրա Օրբելին ստեղծում է իր օրիգինալ պատկերացումները ողնուղեղային կոորդինացիայի և ուղեղիկի գործունեության մասին: Միաժամանակ նոր մեթոդներով ուսումնասիրվում էին երիկամների ֆունկցիայի նյարդային և հումորալ կարգավո-



րումների հարցերը: Մեծ գիտնականի ուշադրությունը գրավեց նաև ցավի պրոբլեմը, որի մշակմանը նրա լաբորատորիայում նվիրվեցին մի ամբողջ շարք գործնական նշանակություն ունեցող հետազոտություններ: Լ. Ա. Օրբելու գիտական հետազոտությունների ամենակարևոր ուղղություններից էր նաև զգայարանների ֆիզիոլոգիան: Նրա դպրոցում առաջ քաշվեցին և լուծվեցին մի շարք կարևոր հարցեր, որոնք վերաբերում էին ինչպես առանձին ռեցեպտորային համակարգերի գործունեությանը, այնպես էլ դրանց փոխազդեցությանը: Այդ հետազոտությունները նույնպես ունեին ինչպես տեսական, այնպես էլ գործնական կարևոր նշանակություն:

Օրբելու և նրա աշակերտների այլ հետազոտություններ հանգեցրին այն եզրակացության, որ բնածին պրոպրիոցեպտիվ ռեֆլեքսների ընկճումը կատարում է ուղեղիկը: Ուղեղիկի հեռացման դեպքում պրոպրիոցեպտիվ ռեֆլեքսներն այնպիսի ուժ են ձեռք բերում, որ ամեն մի կոորդինացված գործողություն խիստ դժվարանում է: Օրբելու և նրա աշակերտների կողմից ուղեղիկի ֆիզիոլոգիական դերի ուսումնասիրությունների շնորհիվ ստեղծվեց բոլորովին նոր պատկերացում ուղեղիկի ֆունկցիայի մասին: Դա Օրբելու և նրա դպրոցի խոշոր նվաճումներից մեկն էր: Դեռ 20-ական թթ. Լ. Օրբելին բեղմնավոր հետազոտություններ է կատարել երիկամային գործունեության ֆիզիոլոգիայի ասպարեզում: Այդ փորձերում նա իրեն դրսևորեց որպես փայլուն վիրահատ՝ կատարելագործելով միզածորանները դուրս բերելու պավլովյան վիրահատման եղանակը:

Լ. Ա. Օրբելու գիտական ստեղծագործության համար շատ բնորոշ էր գործնական նշանակություն ունեցող հարցերի առաջնահերթ լուծումը: Նա հետևողականորեն ընդգծում էր, որ տեսությունն օգնում է գիտնականին՝ լուծելու գործնական հարցեր, իսկ վերջիններս ընդլայնում են գիտնականի տեսական մտահորիզոնը: Դրանցից առանձնահատուկ տեղ էին գրավում բարձրության վերելքների և խորջրյա վայրէջքների ֆիզիոլոգիայի հարցերը, որոնց լուծման գործում Օրբելին և ռազմա-բժշկական ակադեմիայի նրա աշակերտները շատ էական ավանդ են ներդրել: Տիեզերական բժշկության հիմքը դնող և տիեզերքում մեր հաղթանակին նպաստող գիտնականների շարքում առաջին տեղերից մեկը պատկանում է Օրբելուն: Նույնը կարելի է ասել ջրային խորությունների յուրացման մարզում: Բեղմնավոր աշխատանք է կատարել Օրբելին նաև գործնական այլ հարցերի լուծման ոլորտում:

Լևոն Օրբելու և նրա դպրոցի նվաճումները ֆիզիոլոգիայի տարբեր բնագավառներում, նրա խորիմաստ, բովանդակալից ելույթները մամուլում, կոնգրեսներում և համագումարներում ավելի բարձրացրին մեծ գիտնականի հեղինակությունը ո՛չ միայն սովետական, այլև արտասահմանյան ֆիզիոլոգների շրջանում: Առանձնապես մեծ արձագանք գտավ նրա «Դասախոսություններ նյարդային համակարգի ֆիզիոլոգիայից» գիրքը, որտեղ շարադրված են Օրբելու հիմնական գիտական հայացքները: Այդ աշխատությունը, հանրագումարի էր բերում նրա բազմամյա հետազոտությունների արդյունքները նեյրոֆիզիոլոգիայի բնագավառում: Գրքի երկրորդ հրատարակությունն (1935 թ.) արժանացավ Ի. Պ. Պավլովի անվան մրցանակին, իսկ երրորդը՝ (1938 թ.)՝ առաջին աստիճանի պետական մրցանակի:

Նրա էվոլյուցիոն սկզբունքի մասին ֆիզիոլոգիայում հոդվածը՝ (տպա-

գրված 1933 թ. «Природа» ամսագրում), մեր երկրում ֆիզիոլոգիայի այդ նոր բնագավառի լայն զարգացման ակիզբը դրեց: Օրբելու ակտիվ մասնակցությամբ 1933 թ. ստեղծվեց փորձարարական բժշկության համամիութենական ինստիտուտ, որտեղ նա կազմակերպեց էվոլյուցիոն և հատուկ ֆիզիոլոգիայի բաժին:

Գիտական հասարակայնությունը բարձր գնահատեց Օրբելու ծառայությունները. 1931 թ. նա ընտրվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, իսկ 1935 թ. իսկական անդամ. 1939 թ. ընտրվեց նաև ՍՍՀՄ նորաստեղծ բժշկական ակադեմիայի իսկական անդամ: 1943 թ., երբ ստեղծվեց Հայաստանի գիտությունների ակադեմիան, Օրբելին ընտրվեց ակադեմիայի իսկական անդամ և հանդիսացավ նրա հիմնադիրներից մեկը:

Գիտական հարաճուն ակտիվությանը զուգընթաց, ընդլայնվեց նաև Լ. Ա. Օրբելու գիտա-հասարակական և գիտա-կազմակերպական գործունեությունը: Դեռ 1932 թ. նա ընտրվում է Ի. Մ. Սեչենովի անվան Լենինգրադի ֆիզիոլոգիական ընկերության նախագահ և ՍՍՀՄ ֆիզիոլոգիական ամսագրի խմբագրական կոլեգիայի նախագահ, միաժամանակ բեղմնավոր աշխատանք է ծավալում գիտությունների ակադեմիայի գիտա-կազմակերպական գործունեության բնագավառում:

Բարձր գնահատելով Օրբելու գիտա-հասարակական և կազմակերպական աշխատանքը, ՍՍՀՄ կենտրոնական գործադիր կոմիտեն 1934 թ. նրան շնորհում է գիտության վաստակավոր գործչի պատվավոր կոչում:

Լ. Օրբելու գիտական գործունեությունը լայն ճանաչում է գտնում նաև արտասահմանում: Դեռ 1930 թ. նա ընտրվում է Փարիզի կենսաբանական ընկերության թղթակից-անդամ, իսկ 1931-ին՝ Գերմանիայի ամենահնագույն գիտական հաստատություններից մեկի— բնագետների Լեոպոլդին-Կարոլինյան համագերմանական ակադեմիայի անդամ: Հետագայում նա ընտրվում է նաև Լոնդոնյան ֆիզիոլոգիական ընկերության պատվավոր անդամ, ֆրանսիական բժշկական ակադեմիայի արտասահմանյան անդամ, Նյու-Յորքի, Ռումինական բժշկական ակադեմիաների պատվավոր անդամ և Պրագայի Կարլովա համալսարանի պատվավոր դոկտոր:

1936 թ. Օրբելին և նրա դպրոցը թևակոխում են ստեղծագործական վերելքի նոր փուլ: Այդ թվականի փետրվարին մահանում է Ի. Պ. Պավլովը: Օրբելուն հրավիրում են գլխավորելու ֆիզիոլոգիական երկու ծանրակշիռ գիտական հաստատություններ՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ֆիզիոլոգիայի ինստիտուտը և Կոլտուշիի կենսաբանական կայանը: Բնականաբար այդ հաստատություններում նրա հետ աշխատելու են գնում նրա լավագույն աշակերտների մեծ մասը: Այսպիսով, միաձուլվում են ֆիզիոլոգիական մտքի երկու հզոր հոսանքները: Այդ շրջանում լայն թափ առացան Օրբելու հետազոտությունները էվոլյուցիոն-ֆիզիոլոգիայի ասպարեզում, որը նրան հնարավորություն ընձեռեց էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի բնագավառում ստեղծելու հայտնի գիտական դպրոցներից ամենաբազմամարդը, ամենաբեղմնավորը: Այդ դպրոցի ստեղծումը, ինքնատիպության, Օրբելու անգնահատելի ծառայությունն էր սովետական գիտությանը: Գիտական մտահղացումների մի անսպառ շտեմարան էր նա, նրա յուրաքանչյուր աշակերտ ուներ ֆիզիոլոգիայի բնագավառում իր նախասիրած ուղղությունը, ձգտում էր տիրապետել գիտական հետազոտությունների առավել առաջավոր մեթոդներին, բայց նրանք միավորված էին իրենց ուսուցչի միասնական գիտական իդեաներով:

Սկսած 1936 թ. Օրբելին ղեկավարում էր չորս խոշոր գիտական կոլեկտիվներ— ռազմա-բժշկական ակադեմիայի ֆիզիոլոգիայի ամբիոնը, ՀՍՍՀ ԳԱ Ի. Պ. Պավլովի անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտը, էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի, բարձրագույն նյարդային գործունեության ինստիտուտը (Կոլտուշիում) և Պ. Ֆ. Լեսգաֆթի անվան գիտական ինստիտուտի ֆիզիոլոգիական բաժինը:

Չնայած այդ կոլեկտիվներից յուրաքանչյուրի առաջ ծառացած էին իրենց ուրույն խնդիրները, բայց նրանք միմյանցից անկախ չէին գործում: Լ. Օրբելին կարողացավ միավորել նրանց, նպատակաուղղել ֆիզիոլոգիական գիտության առջև կանգնած առավել հանգուցային պրոբլեմների լուծմանը: Նրա շուրջը համախմբվեց մի հզոր գիտական դպրոց, որը միավորում էր մի քանի հարյուր գիտական աշխատողների, որոնց աճեցրել, դաստիարակել և գիտական սխրանքների էր ոգեկոչում նրանց մեծատաղանդ, հմայիչ ուսուցիչը: Օրբելին այն բախտավորներից էր, որը շրջապատված էր ոչ թե «աշխատակիցներով», այլ իր սեփական աշակերտներով՝ հոգևոր ժառանգներով: «Գիտության պատմության մեջ դժվար թե հնարավոր լինի գտնել այդպիսի բազմամարդ, միաձույլ մի այլ գիտական դպրոց»— գրում է Օրբելու լավագույն աշակերտներից մեկը, նրա կենսագիր Լ. Գ. Լեյբսոնը: Սովորաբար, երբ աշակերտներն աճում են, ձեռք են բերում ինքնուրույնություն, բնականորեն առաջանում են կենտրոնախույս ուժեր, որոնք քայքայում են գիտական դպրոցի միասնությունը: Օրբելու դպրոցի հետ նման բան տեղի չունեցավ, քանի որ նրա հիմքը առույգ գիտական էր, նրա բազմաճյուղ արմատները խորապես թափանցել էին բնագիտության ընդերքը, իսկ Օրբելին առաջնորդվում էր ժամանակի ամենաառաջավոր աշխարհայեցողության՝ մատերիալիստական դիալեկտիկայի դրույթներով: Օրբելու մահից հետո, նրա աշակերտների չորս սերունդները, միաձուլելով իրենց ստեղծագործ ուժերը, երկրով մեկ ծավալել են բազմաբեղուն գիտական գործունեություն և իրենց նոր նվաճումներով հարստացնում են հայրենական և համաշխարհային ֆիզիոլոգիական գիտությունը:

Վերը նշվեց, որ Օրբելին, գիտական վիթխարի գործունեությանը զուգընթաց, կատարում էր նաև կարևոր ու պատասխանատու գիտա-կազմակերպական աշխատանք, բայց այդ բնագավառում նրա տաղանդը առանձնահատուկ ուժով փայլեց Հայրենական պատերազմին նախորդած տարիներին և, հատկապես, պատերազմի ողջ ժամանակաշրջանում: 1939 թ. նա ընտրվում է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կենսաբանական բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար և երկար տարիներ նախագահում է ֆիզիոլոգների, բիոքիմիկոսների և դեղաբանների համամիութենական և Լենինգրադի ընկերությունում: Հայրենական պատերազմն սկսվելուց հետո նա նշանակվում է նաև գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ռազմա-բժշկական ակադեմիայի պետ և վարում մի շարք այլ պատասխանատու պաշտոններ:

Գիտական և գիտա-կազմակերպական այդ վիթխարի աշխատանքը պատերազմական ծանր պայմաններում նա հաջողությամբ կատարեց փորձված ու նվիրված օգնականներ ընտրելու շնորհիվ (Ա. Վ. Լեբեդինսկի, Ա. Գ. Գինեցինսկի, Ա. Վ. Տոնկիխ, Ա. Մ. Ալեքսանյան, Ն. Խ. Միխելսոն, Մ. Պ. Բրեստկին, Ս. Մ. Դիոնեսով, Ֆ. Ռ. Դունաևսկի և ուրիշներ): Օրբելու՝ տաղանդավոր

գիտնականի և իր հայրենիքին անսահման նվիրված հայրենասերի ոգեշունչ և խանդավառ գործունեությունը լայն ճանաչում գտավ գիտական հասարակայնության շրջաններում և բարձր գնահատվեց կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կողմից: Նա պարգևատրվում է բազմաթիվ շքանշաններով (այդ թվում Լենինի չորս շքանշաններով), նրան շնորհվում է ռազմա-բժշկական ծառայության գեներալ-գնդապետի ամենաբարձր ռազմա-բժշկական կոչումը, իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նրան արժանացնում է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Օրբելին հասավ փառքի գագաթին, բայց նա շարունակեց մնալ գիտության անխոնջ մշակ, համեստության մարմնացում: Նրա գիտական և գիտա-կազմակերպական գործունեության բարձր գնահատումը նորովի խթանեց անձնվեր աշխատանքն ու նոր խիզախումները: Այդ լարված գործունեությունը վերընթաց հաջողությամբ շարունակվեց մինչև 1948—1950 թվականները:

1948 թ. կայացավ Վ. Ի. Լենինի անվան համամիութենական գյուղատընտեսական ակադեմիայի սեսիան՝ նվիրված ժառանգականության հարցերին, իսկ 1950 թ. հրավիրվեց ՍՍՀՄ գիտությունների և բժշկական գիտությունների ակադեմիաների միացյալ սեսիան՝ նվիրված Ի. Վ. Պավլովի ուսմունքի մշակման հարցերին: Այդ սեսիաներում մի քանի գիտնականներ Օրբելու գործունեությունը ենթարկեցին տենդենցիոզ, անհիմն քննադատության: Նրա տրամադրության տակ մնաց միայն Պ. Ֆ. Լեսգաֆթի անվան ինստիտուտի լաբորատորիան, որտեղ Օրբելու շուրջն էին հավաքվել նրա մի քանի աշակերտներ: Բայց այդ ծանր հարվածը նա արիաբար տարավ, ոչ մի օր չընդհատեց գիտական գործունեությունը: Չնայած խիստ սահմանափակ լաբորատոր պայմաններին և հաստիքների սղությանը, Օրբելին շարունակեց հետազոտել բարձրագույն նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի, հատկապես երեխայի բարձրագույն նյարդային գործունեության դժվարին հարցերը: Երբ հաղթահարվեցին անձի պաշտամունքի հետևանքները, Օրբելու գիտական գործունեության համար կրկին լայն հնարավորություններ բացվեցին: Այդ օրերին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունը որոշեց ամեն կերպ օժանդակել Օրբելու գիտական գործունեության ծավալմանը:

1955 թ. Լեսգաֆթի անվան ինստիտուտի բազայի վրա կազմակերպվեց էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի լաբորատորիա: Մեկ տարի անց, այդ լաբորատորիան վերածվեց Ի. Մ. Սեչենովի անվան էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի ինստիտուտի, որի դիրեկտորը նշանակվեց Օրբելին: Նրա աշակերտներն ու հետնորդները վերստին կարողացան հավաքվել, որպեսզի նրա ղեկավարությամբ շարունակեն ժամանակակից ֆիզիոլոգիայի կարևորագույն պրոբլեմների ուսումնասիրությունը:

Օրբելու տոկունությունն ու ազնվությունը գիտական աշխարհի հայարավոր մարդկանց սրտերը լցրին նրա նկատմամբ սիրո, հարգանքի խոր զգացումներով: Առանձնակի ուժով այդ զգացումները դրսևորվեցին նրա 75-ամյակի տոնակատարության ժամանակ, որը մեծ շուքով կազմակերպել էին ՍՍՀՄ գիտությունների և ռազմա-բժշկական ակադեմիաները: Ակադեմիայի Լենինգրադի նիստերի դահլիճը լեփ-լեցուն էր: Մոտ հարյուր ողերձ և բազմաթիվ հուշանվերներ մատուցվեցին նրան, նրա հասցեով ստացվել էր հինգհարյուրից ավելի ողջույնի հեռագրեր: Հոբելյանական ժողովում Օրբելին իր



պատասխան ճառում շնորհակալական առաջին խոսքն ուղղեց իր ուսուցչին՝ Ի. Պ. Պավլովին, իր սիրած և հարգված աշխատանքային ընկերներին՝ անվանի ֆիզիոլոգներ Վ. Վ. Սավիչին, Ի. Ս. Ցիտովիչին, Ե. Ա. Գանիկեին, գիտության կարկառուն դեմքեր, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտներ Ա. Պ. Կարպինսկուն, Վ. Լ. Կոմարովին և լենինյան գվարդիայի պայծառ ներկայացուցիչ, ակադեմիկոս Գ. Մ. Կրժիժանովսկուն: Առանձնահատուկ ջերմությամբ նա խոսեց իր աշակերտների և աշխատակիցների անձնվեր գործունեության, անսահման նվիրվածության մասին: «Այն ամենը, ինչ գովեստով ասվեց այսօր իմ հասցեին,— ասաց նա,— ես ամբողջովին վերագրում եմ իմ սիրելի կոլեկտիվին»:

Արտահայտելով իր մեծ հարգանքը և խորին երախտագիտությունը հարազատ հայ ժողովրդի նկատմամբ, նա հույմունքով ընդգծեց, որ ինքը հպարտ է աշխարհի ամենահնագույն ազգերից մեկին պատկանելու համար. խորին շնորհակալություն հայտնեց կոմունիստական կուսակցությանը և սովետական կառավարությանը՝ իր գիտական գործունեության գնահատման համար:

Հոբելյանական օրերին, և դրանից էլ առաջ, Օրբելին արդեն թուլություն էր զգում, որը գնալով ուժեղանում էր: Այդ օրերից մեկ ու կես տարի էլ չանցած, 1958 թ. դեկտեմբերի 9-ին, դադարեց բաբախել նրա սիրտը:

Լ. Ա. Օրբելու մահը մեծ կորուստ էր սովետական և համաշխարհային ֆիզիոլոգիական գիտության համար: Հայ ժողովուրդը կորցրեց իր ամենատաղանդավոր զավակներից մեկին: Բայց նրա գիտական մտահղացումները, հոգևոր վիթխարի ժառանգությունը իր աշակերտների ու հետնորդների համար գիտական մտքի նոր խիզախումների հորդառատ աղբյուր են:

Հայրենիքը բարձր գնահատեց Օրբելու ծառայությունները գիտության, ժողովրդի առաջ: Ի հավերժացումն նրա հիշատակի Լենինգրադի փողոցներից մեկը կոչվել է Օրբելու անունով, նրա ստեղծած էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի և բիոքիմիայի ինստիտուտի բակում կանգնեցվել է նրա հուշարձանը:

Խոր հարգանք ու սեր է տածում իր արժանավոր զավակի, մեծ գիտնականի նկատմամբ և հայ ժողովուրդը: Լ. Ա. Օրբելու անունով է կոչվում ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ֆիզիոլոգիայի ինստիտուտը, Երևանի նորաբաց, գեղեցիկ փողոցներից մեկը (Օրբելի եղբայրների):

Առիթից օգտվելով, հարկ ենք համարում նշել, որ Հայաստանի ֆիզիոլոգները գիտական եռանդուն գործունեությամբ բարձր են պահում իրենց ուսուցչի պատիվը: Վերջին 10—15 տարիների ընթացքում Հայաստանում լայն թափով ծավալվեցին գիտական հետազոտությունները վեգետատիվ նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի ասպարեզում: Մի ասպարեզ, որն անխզելիորեն կապված է Օրբելու անվան հետ և անարդարացիորեն մոռացության էր մատնվել հիսնական թվականներից հետո: Լ. Ա. Օրբելու անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտն արդեն ճանաչվել է Սովետական Միությունում որպես ամենաառաջավոր գիտահետազոտական հաստատություններից մեկը: Պատահական չէր, որ 1968 թ., ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի որոշմամբ, ինստիտուտը հաստատվեց որպես գլխավորող ինստիտուտ՝ վեգետատիվ նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի գծով: Անգնահատելի է Օրբելու դերը Հայաստանում ֆիզիոլոգիական մտքի զարգացման մարզում:

Կես դար Օրբելու՝ սովետական և համաշխարհային ֆիզիոլոգիայի ամենա-

կարկառուն դեմքերից մեկի, հեղինակավոր անունը, ինչել է ռուսական և սովետական ֆիլոլոգիական գիտության հարատև վերելքին կուգընթաց: Բնական է, որ այն գրավեց նաև ազատագրված Հայաստանի մայրաքաղաքում՝ Երևանում, ստեղծված առաջին բարձրագույն ուսումնական հաստատության՝ պետական համալսարանի, կենսաբան-ուսանողների և նրանց դասախոսների ուշադրությունը: Լ. Օրբելու դպրոցով անցավ հայ երիտասարդ ֆիլոլոգների մի ամբողջ ջոկատ, որն էլ հենց ամենազործնական ավանդը ներդրեց Հայաստանում այդ գիտության կարգացման համար: Այդ ջոկատի կորիզն էին կազմում Է. Հասրաթյանը, Ա. Ալեքսանյանը, Գ. Մուշեղյանը, Ա. Քարամյանը, Մ. Դուրմիշյանը, Ռ. Բարսեղյանը, Ռ. Գյզգյանը: Նրանք բոլորն էլ հետագայում դարձան ճանաչված ֆիզիոլոգներ, իսկ Էզրաս Հասրաթյանը փայլուն տաղանդ դրսևորեց բարձրագույն նյարդային գործունեության հետազոտման բնագավառում: Նրա անունը հայտնի է ո՛չ միայն Սովետական Միության, այլև աշխարհի բազմաթիվ երկրներում:

Լ. Օրբելին ուշի-ուշով հետևում էր ֆիզիոլոգիայի կարգացմանը Հայաստանում և հատկապես ֆիզիոլոգիայի ինստիտուտի աճին և ամրապնդմանը: 50-ական թվականների կեսերին դրա կարիքը շատ խիստ էր զգացվում: Ինստիտուտը դեռ չուներ իր ինքնուրույն գիտական դեմքը, հստակ ուղղությունը: Հետազոտությունները մեծ մասամբ տարվում էին հնացած մեթոդներով: Հայաստանի գիտությունների ակադեմիայի ղեկավարությունը լուրջ մտահոգված էր ստեղծված դրությամբ: Ահա այդ ժամանակ հարկ եղավ խորհրդակցել Լևոն Աբգարովիչի հետ, խնդրել նրա օժանդակությունը: Արդյունքն այն եղավ, որ նա համաձայնեց զրկվել իր ամենասիրված և շնորհալի աշակերտ Արշակ Ալեքսանյանից, որ գիտական գծով նրա տեղակալն էր Լենինգրադի Սեչենովի անվան էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի ինստիտուտում և երաշխավորեց նրան մշտական աշխատանքի փոխադրվելու Հայաստան՝ գլխավորելու ՀՍՍՀ ԳԱ ֆիզիոլոգիայի ինստիտուտը: Միաժամանակ Օրբելին Հայաստանի ֆիզիոլոգիայի ինստիտուտին նվիրեց Մ. Ալեքսանյանի ղեկավարած վեգետատիվ նյարդային համակարգի լաբորատորիայի ողջ գիտական սարքավորումը...

Այս միջոցառումները վճռական դեր խաղացին ինստիտուտի կյանքում: Երիտասարդ կադրերը վեգետատիվ նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի բնագավառում ստացան հիմուն, որակյալ ղեկավարություն: Կարճ ժամանակում փոխվեց ինստիտուտի դեմքը, լայն հեռանկարներ բացվեցին նրա հետագա կարգացման համար: Այսօր հայ ֆիզիոլոգները խոր երախտագիտությամբ են հիշում իրենց ուսուցչի ուշադրությունն ու սրտացավ հոգատարությունը Հայաստանում ֆիզիոլոգիական գիտության կարգացման նկատմամբ:

Գեղեցիկ, իմաստավորված կյանք ապրեց մեծ ֆիզիոլոգն ու քաղաքացին: Նա սերունդներին թողեց մեծահարուստ գիտական ժառանգություն, անաղարտության, մարդասիրության, սկզբունքայնության պայծառ օրինակ, բացառիկ կենսունակ, անընդհատ աճող ու բազմացող գիտական դպրոց, որով և անմահացավ:

Լևոն Օրբելու աշակերտներն ու հետնորդները քաջ գիտակցում են, որ իրենց նվիրական պարտականությունն է բազմապատկել մեծ ուսուցչի ու դաստիարակի գիտական ժառանգությունը, ամեն կերպ կարգացնել նրա գիտական գաղափարները:



## ՀԱՂԹԱՀԱՐԵԼ ՊԱՂԵՍՏԻՆՅԱՆ ԴԻՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

ՆԱԻՄ ԱՇՀԱԲ

Հորդանանյան հրապարակախոս

Պաղեստինյան դիմադրության շարժումը (ՊԴՇ)[1] արաբական ազգային-ազատագրական շարժման այդ անկապտելի մասը, որն իր այժմյան ձևով օրինաչափ ռեակցիա է իսրայելական-սիոնիստական ագրեսիայի (1967) նկատմամբ, մեր կարծիքով, ներկայումս խոր ճգնաժամ է ապրում: Մենք կկամենայինք հայտնել մեր մի քանի նկատառումները, որոնք հիմնված են այն գնահատականի վրա, որ Հորդանանյան կոմկուսակցությունը տալիս է ստեղծված իրադրությանը:

Ճգնաժամն առաջացել է գլխավորապես նրանից, որ պաղեստինյան պարտիզանների՝ ֆիդայինների օպերատիվ բազաները Հորդանանում վերացված են ռազմական մի շարք գործողությունների հետևանքով, որ կազմակերպել են ռեակցիոն իշխանությունները՝ սերտորեն համաձայնության գալով ամերիկյան իմպերիալիզմի հետ և նրա լիակատար աջակցությամբ: Դիմադրության շարժումը զրկվել է հիմնական հենարանից. Արևելյան Հորդանանի տարածության մեծ մասը սահմանակից է թշնամու զավթած հողերին, այնտեղ ապրում է օկուպացված շրջաններից դուրս գտնվող պաղեստինցիների մեծամասնությունը:

Բացի դրանից, հորդանանյան իշխանությունների հետ կոնֆլիկտը կարգավորելու և իսրայելյան ագրեսիայի դեմ մղվող պայքարի տակտիկայի հարցերում նրա՝ հատկապես խոշոր կազմակերպությունների դիրքերի անհամատեղելիության պատճառով խորացել է դիմադրության շարքերի պառակտումը: Միասնության բացակայությունն ըստ էության նրա անցյալ ու ներկա բոլոր անհաջողությունների և պարտությունների պատճառն է:

Պաղեստինյան դիմադրության շարժման ճգնաժամը չի կարելի քննել արաբական ողջ ազատագրական շարժումից մեկուսի: Արաբական երկրների բանակների պարտությունը 1967 թ. հունիսյան պատերազմում և նրա հետևանքները վերացնելու համար մինչև այժմ ձեռնարկված փորձերի անհաջողությունը (ռազմական կամ դիվանագիտական միջոցների օգնությամբ վերադարձնել Իսրայելի օկուպացրած տերիտորիաները) պառակտել են արաբական ազատագրական շարժումը:

Երբ, մասնավորապես, տարաձայնություններ առաջացան Ռոջերսի պլանի կապակցությամբ, հորդանանյան ռեակցիան օգտվեց դրանից, ինչպես նաև դիմադրության՝ մեր կողմից արդեն իսկ նշված սխալներից, զգալի հարվածներ հասցրեց պաղեստինյան դիմադրության շարժմանը և 1970 թ. սեպտեմբերից սկսեց պլանավորված կերպով ոչնչացնել ֆիդայինների բազաները:

[1] Այդ շարժմանը մասնակցում են իրենց սոցիալական ծագումով և հայացքներով տարբեր մեծ թվով կազմակերպություններ։ Դրանցից առավել խոշորներն են՝ Պաղեստինի ազատագրության շարժումը («Ալ-ֆաթըհ»), Ժողովրդա-ազատագրական պայքարի ավանգարդը (նրա զինված ջոկատները հայտնի են «Աս-Սաիկա» անունով), Պաղեստինի ազատագրության ժողովրդական ճակատը և այլն։ Պաղեստինյան դիմադրության շարժման ջոկատների մեծ մասը մտնում է Պաղեստինի ազատագրության կազմակերպության (ՊԱԿ) մեջ։

Պաղեստինյան դիմադրության շարժումն իրեն զրկեց մեր կուսակցության հարուստ փորձն օգտագործելու հնարավորությունից, որը ձեռք էր բերվել այն ակտիվ դերի շնորհիվ, որ խաղում էր մեր կուսակցությունը երկրի ազգային շարժման մեջ, ավելի քան քսան տարի շարունակ մոբիլիզացնելով ու կազմակերպելով մասսաներին, մարտական տարբեր ելույթների ընթացքում ղեկավարելով նրանց գործողությունները: Պաղեստինյան դիմադրության շարժման ողջ գործունեությունը, սկսած 1967 թ. հունիսից, հաստատում է, թե որքա՞ն մեծ է կոմկուսակցության փորձի օգնության պահանջը: Կոմկուսակցության նկատմամբ ժխտողական դիրքը խրախուսեց ռեակցիոներներին, հնարավորություն տվեց նրանց՝ իրենց ոտընձգությունները քողարկելու հակակոմունիզմի դրոշով:

Մեր կուսակցությունը, իրոք, փոքր-ինչ ուշացավ զինված պայքարի անցնելու խնդրում: Դա բացատրվում էր մի շարք գործոններով, ամենից առաջ՝ նրա ղեկավարության մեջ աջ խմբավորման առկայությամբ: Թեև 1967 թվականի հունիսյան պատերազմից հետո կուսակցական փաստաթղթերում գրանցված բոլոր որոշումներում ընդունվում էր ագրեսիայի հետևանքների վերացման համար գործողությունների բոլոր ձևերի, ինչպես և զենքով գործելու օրինաչափությունը, ինչպես հաստատում է իրադարձությունների ընթացքը, աջ խմբավորումը գործնականորեն չէր հավատում օկուպացիայի դեմ զինված պայքարի հնարավորությանը: Դրա համար էլ աջ խմբավորումը հույսը դնում էր կոմպրոմիսների և զիջումների վրա, որպիսիք Հորդանանի իշխանությունները կարող էին հուսալ ամերիկյան իմպերիալիզմից ու Իսրայելից: Այլ խոսքով՝ նա չէր հավատում, որ ամբողջ աշխարհի պրոգրեսիվ ուժերի կողմից պաշտպանվող արաբական ազատագրական շարժումը (ինչպես և Պաղեստինյան դիմադրության շարժումը) կկարողանա իսրայելյան զավթիչներին և նրանց թիկունքին կանգնած ամերիկյան իմպերիալիստներին հարկադրել նահանջելու:

Մեր կուսակցությունը, մերկացնելով սիոնիստական էքստրեմիստների նպատակները և հաշվի առնելով 1948 թ. դառը փորձը (երբ ավելի քան մեկ միլիոն արաբներ հարկադրված էին լքել հարազատ հողերն ու բնակարանները, որոնք հետո հանձնվեցին հրեա ներգաղթողներին), միաժամանակ իր առաջնահերթ պարտքն էր համարում հունիսյան պատերազմից անմիջապես հետո օգնել օկուպացված շրջանների բնակիչներին, թույլ չտալ նրանց տեղահանումը օկուպացիոն իշխանությունների կողմից, ետ պահել փախուստից:

Սերտորեն համագործակցելով հայրենասիրական մյուս ուժերի հետ՝ կուսակցությունն զգալի հաջողությունների հասավ այդ հարցում: Շուտով ո՛չ միայն դադարեց բնակչության փախուստը զավթված շրջաններից, այլև սկսվեց փախածների վերադարձը, քանի դեռ իսրայելյան իշխանությունները չէին փակել հաղորդակցության բոլոր ուղիները Հորդանանի օկուպացված և չօկուպացված ափերի միջև:

Այս արդյունքները դժվարին պայմաններում ձեռք բերվեցին: Աջափնյա բնակիչները ո՛չ միայն ենթարկվում էին տեռորի ու հալածանքների, այլև հոգեկան ծանր ցնցում էին ապրում արաբական բանակների ռազմական պարտության առիթով: Ընդ որում, մեր ժողովրդի մեծ մասը կազմակերպված չէր, չէր պատկանում հայրենասիրական որևէ միավորման կամ քաղաքական կուսակցության, գործում էր անջատ-անջատ և տարերայնորեն: Դա բացատրվում է Հորդանանի հասարակության հետամնացությամբ, հեղափոխական և հայրենասիրական բոլոր կազմակերպությունների դեմ երկար տարիներ շարունակվող տեռորով, որ առանձնապես դաժան դարձավ հունիսյան պատերազմի նախօրեին:

Ելնելով 1967 թվականի ագրեսիայից անմիջապես հետո ստեղծված կոնկրետ իրադրությունից՝ մեր կուսակցությունը հետևություն արեց, որ օկուպացված տերիտորիաներում պայմանները դեռևս չեն հասունացել զինված պայքարի համար, որն սկզբունքորեն մեր ժողովրդի օրինական իրավունքներից մեկն է հանուն իր ազատագրության մղվող պայքարում: Այդպիսով, կուսակցությունն այն ժամանակ զինված պայքարի կոչ չէր անում՝ պարզապես տակտիկական շարժառիթներով: Սկզբում անհրաժեշտ էր մասսայական քաղաքական աշխատանք ծավալել, որպեսզի արաբ բնակչությունը մնար և ամրանար իր հողերում, բարձրանար նրա բարոյական ոգին, և նա աստիճանաբար հասներ ավելի բարձր փուլի՝ օկուպացիայի դեմ կազմակերպված զինված պայքարի:

Այդ ասպարեզում նույնպես որոշակի արդյունքների հասանք: Կուսակցությունն առաջատար դեր խաղաց մասսաների շարժումը կազմակերպելու և ղեկավարելու գործում: Օկուպացման առաջին իսկ տարվանից կազմակերպվում էին գործադուլներ, ցույցեր: Մասսայական պայքարի տարբեր ձևերին սկսեցին մասնակցել բնակչության ամենալայն խավերը: 1969 թվականի սկզբին ցույցերի հզոր ալիքն ըստ էության վերածվեց մասսայական ապստամբության՝ իսրայելական օկուպացիայի դեմ:

Այդ ժամանակ կուսակցությունը հանգեց այն եզրակացության, որ Հորդանանի երկու ափերին իրադրությունը հասունացել է պայքարի ավելի վճռական ձևերի, ինչպես և՝ զինված պայքարի համար: Սակայն կուսակցության մեջ գլխավոր դիրքեր գրավող աջ օպորտունիստական խմբավորման առկայությունը թույլ չտվեց ժամանակին՝ վերոհիշյալ որոշումն ընդունելուց անմիջապես հետո, ներգրավվելու զինված դիմադրության շարժման մեջ:

Ավելի ուշ, վերանայելով իր դիրքերը, կուսակցությունը միացավ զինված պայքարին և Իրաքի, Սիրիայի ու Լիբանանի եղբայրական կուսակցությունների համագործակցությամբ կազմակերպեց մարտական ջոկատներ, որոնք ծնվեցին հորդանանյան ռեակցիայի դեմ մղվող այդ բուռն պայքարում և շատ հաջող գործողություններ կատարեցին օկուպացիոն զորքերի դեմ: Մյուս կողմից՝ դիմադրության ղեկավար շրջաններում գնալով ավելի ցայտուն է դառնում նոր մոտեցումը խաղաղ կարգավորման պրոբլեմին: Սակայն այժմ էլ Պաղեստինի դիմադրության շարժման ղեկավարները չեն կամենում, որ մեր կուսակցությունը և «Ալ-Անսարի» ջոկատները ներկայացվեն դիմադրության շարժման և Պաղեստինի ազատագրության կազմակերպության տարբեր օրգաններում, ինչպես վայել է երկրի կյանքում և ազգային շարժման մեջ նրանց խաղացած իրական դերին: Կուսակցությունը ձգտում է արմատապես փոխել այդ վերաբերմունքը:

# III

Պաղեստինի դիմադրության շարժման մարտական կազմակերպությունների մեջ անխախտ միասնության բացակայությունը ձեռնտու էր օկուպանտներին: Դրանից օգտվեց նաև հորդանանյան ռեակցիան, որը խուսափեց կատարել 1970 թվականին Կահիրեում և Ամմանում կնքված համաձայնագրերը, որոնցով Հորդանանի կառավարությունը պարտավորվել էր չսահմանափակել ֆիդայիների ջոկատների գործողությունների ազատությունը: Միասնության բացակայության պատճառով Պաղեստինի դիմադրության շարժումը չկարողացավ լիովին օգտագործել իր հնարավորությունները օկուպացիայի և ռեակցիայի դեմ մղվող պայքարում: Հորդանանյան իշխանությունները, հատկապես 1970 թվականի սեպտեմբերի արյունալի դեպքերից հետո, շարունակ պնդում էին, թե տարբեր են «ազնիվ» և «անազնիվ» ֆիդայիները. այդ բանն արվում էր Պաղեստինի դիմադրության շարժման պառակտումը խորացնելու նպատակով, դյուրացնելու համար նրա ջոկատների ոչնչացումը զատ-զատ: Ցավոք, արաբական մի շարք երկրներում հակաիմպերիալիստական և հակասիոնիստական որոշ շրջաններ, թեև կարճ ժամանակով, ջուր էին լցնում այդ կասկածելի դասակարգման հեղինակների ջրաղացին:

Պարտիզանական կազմակերպությունների բազմաթվությունը որոշ չափով արտացոլում է հասարակության մեջ եղած դասակարգային սահմանազատումները: Միաժամանակ այդ հարցում ավելի մեծ չափով երևան են գալիս մերձավոր-արևելյան ճգնաժամի լուծման խնդրում արաբական երկրների տարբեր մոտեցումները: Այս կամ այն արաբական երկրի դիրքը նյութական, գաղափարախոսական և քաղաքական ազդեցություն է գործում ֆիդայինների կազմակերպության վրա: Թեև արաբական երկրների՝ դիմադրության շարժմանը ցույց տված օգնությունն ամբողջովին դրական գործոն է, որով պայմանավորվում է նրա բուն գոյությունը, բայց այն հանգամանքը, որ արաբական ամեն մի պետություն այդ օգնությունն առանձին ցույց է տալիս որոշակի կազմակերպության, նպաստել է պայքարող ուժերի անջատվածությանը և իջեցրել այդ իսկ օգնության արդյունավետությունը:

Միասնության բացակայությունն այն բանի արտահայտությունն է, որ զինված դիմադրությունը դեռ դուրս չի եկել իր սկզբնական փուլից, անհրաժեշտ թափ չի ստացել: Բայց, եթե հաջողվի իրոք գործուն պարտիզանական պայքար ծավալել իսրայելյան օկուպացիայի դեմ, դա կարևորագույն ազդակ կհանդիսանա միասնության հասնելու համար, որն, իր հերթին, նոր ուժով կխթանի ագրեսորի դեմ մղվող պայքարը: Միասնությունը շարժմանը հնարավորություն կտա դառնալու առավել անկախ, ավելի մեծ հաջողությամբ դիմակայելու արտաքին բացասական ազդեցություններին: Համապատասխանորեն, լիովին կդրսևորվեն արաբական երկրների օգնության դրական կողմերը:

Մեր կուսակցությունը համառ ջանքեր է գործադրում՝ հասնելու ազգային միասնության, համախմբելու այն բոլոր ուժերը, որոնք պայքարում են իսրայելյան ագրեսիայի հետևանքները վերացնելու համար: Մեր կարծիքով, հենց այդ հիման վրա, կարող է և պետք է ձեռք բերվի դիմադրության բոլոր ջոկատների միասնությունը: Ամեն մի գործողություն պետք է դիտել՝ ելնելով մեկ չափանիշից. նպաստո՞ւմ են արդյոք դրանք օկուպացիայի արագ վերացմանը: Դասակարգային սահմանափակվածության դիրքերից, սոցիալական տարբերու-

թյուններից կամ տարբեր դավանանքներից բըխող մոտեցումը ազգի կյանքի այս արտակարգ ժամանակաշրջանում պետք է ետին պլան մղվի:

## VI

Պաղեստինի դիմադրության շարժման գործունեությունն ունի նաև այլ թույլ կողմեր: Ամենից առաջ ընդգծենք, որ այդ շարժման ղեկավարները, հունիսյան պատերազմից հետո, մնացել են Հորդանանի արևելյան, չօկուպացված ափին: Այնտեղ և ոչ թե օկուպացված շըրջաններում են գլխավորապես զարգացել պարտիզանական կազմակերպությունները. դիմադրության շարժման թերությունների գլխավոր պատճառն է դա:

Սկզբնական շրջանում համեմատաբար հեշտ էր մտնել օկուպացված տերիտորիաները: Այնուհետև, իսրայելյան զորքերը, օգտվելով արաբական ռազմաճակատներում տիրող հանգըստությունից, հենվելով ամերիկյան նյութական ու տեխնիկական աջակցության վրա, ձեռք առան մի շարք միջոցներ, որոնք խիստ դժվարացրին մուտքը զավթված հողերը:

Այն հանգամանքը, որ պաղեստինյան կազմակերպությունների հրամանատարությունը և նրանց հիմնական զինված ուժերը գտնվեցին օկուպացված տերիտորիաների սահմաններից դուրս, խիստ բացասաբար ազդեց ֆիդայինների գործողությունների վրա՝ արևմտյան ափին: Չի կարելի թերագնահատել այդ գործոնի կարևորությունը: Այլ իրադրություն ստեղծվեց Գազայի հատվածում, որտեղ դեռևս հունիսյան պատերազմից առաջ Պաղեստինի ազատագրության կազմակերպության ստեղծած ու մարզած ջոկատները, որոնց գլուխ կանգնած էին սպաներ և տեղական բնիկներ, օկուպացիայից հետո ևս տեղում մնացին և անցան պարտիզանական պայքարի[1]: Դա պատճառներից մեկն է այն բանի, որ Գազայի հատվածում ֆիդայիններն առավել ակտիվ են, քան Հորդանանի արևմտյան ափին:

Դիմադրության հրամանատարությունը, փորձելով հաղթահարել վերոհիշյալ դժվարությունները, արևմտյան ափին պարտիզանների շարքերում գրանցեց համարյա բոլոր ցանկացողներին անխտիր. հրապուրվելով քանակով, հրամանատարությունն ուշադրություն չէր նվիրում մարտիկների գիտակցականությանը: Կազմակերպական հարցերում ցուցաբերվող հենց այդ, եթե կարելի է այսպես ասել՝ լիբերալիզմը, դուռ բացեց դիմադրության շարժման շարքերն անհուսալի, թույլ տարրերի, երբեմն էլ՝ հակառակորդի գործակալության ներթափանցման համար: Դրա հասցրած վնասը դժվար է գերագնահատել: Շատ խիզախ երիտասարդներ, որոնք տոգորված էին հայրենասիրությամբ, հեշտությամբ ընկան թշնամու ձեռքը: Չափազանցություն չի լինի ասել, որ իսրայելյան զնդաններն ընկած պարտիզանական ջոկատների մարտիկների ավելի քան 70 տոկոսը, չկարողանալով դեռևս ոչինչ անել, զոհ են դարձել վատ կազմակերպության, ինֆորմացիայի արտահոսի, իսկ երբեմն էլ՝ դավաճանության:

Իսրայելյան օկուպացիայի դեմ մղվող պայքարի ընթացքում Պաղեստինի դիմադրության շարժման տարբեր ջոկատներ դիմում էին արկածախնդրական գործողությունների, որոնք վարկաբեկում էին շարժման հեղինակությունը նաև հասարակական կարծիքի առաջ: (Նման գործողությունները բացառված չեն առաջիկայում, եթե դատենք ըստ ֆիդայինների մի շարք կազմակերպությունների քաղաքական հայացքների): Իմպերիալիստական և ռեակցիոն ուժերը դրանք օգտագործում էին որպես պատրվակ ողջ շարժմանը հարվածներ հասցնելու համար: Արկածախնդրական ելույթները դըժվարություններ հարուցեցին Իսրայելում պրոգրեսիվ ուժերի համար: Այդ ուժերը, որոնց ավանգարդում ընթանում է Իսրայելի կոմկուսակցությունը, սկզբից ևեթ հանդես են եկել ագրեսիայի ու նրա նպատակների դեմ, օկուպացիայի դեմ: Իսրայելում այդ ազնիվ ուժերի համար բարենպաստ պայմանների առկայության դեպքում կարող է առաջ գալ կառավարող սիոնիստական շրջանների վրա ճնշում գործադրող հզոր շարժում, որը նրանց կհարկադրի զորքերը դուրս բերել արաբական օկուպացված տերիտորիաներից և կենսագործել Անվտանգության խորհրդի բանաձևը: Պաղեստինի դիմադրության շարժումը չպետք է արհամարհի այդ պարագան:

Արկածախնդրական գործողությունները, վերջին հաշվով, ցույց են տալիս, որ մանրբուրժուազիան գլորվել է մի ծայրահեղությունից մյուսը, մակերեսայնորեն է գնահատում իրադարձությունները, ձգտում է որքան կարելի է ավելի մեծ աղմուկ հանել՝ չմտահոգվելով հետևանքներով:

Պայքարի կազմակերպման սխալ մեթոդները ո՛չ միայն նյութական, այլև բարոյական ծանր հարված հասցրին. արդեն ո՛չ միայն իսրայելցիներին, այլև օկուպացված տերիտորիաների արաբ բնակիչներին իսրայելական պատժիչ ջոկատները ներկայանում են որպես ամենազոր, ունակ՝ հայտնաբերելու և ջախջախելու դիմադրության ամեն մի կազմակերպություն: Իսրայելի հասարակայնության և գրավված հողերի բնակչության վրա հոգեբանական ներգործությունն ուժեղացնելու համար իսրայելական իշխանությունները մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ լայնորեն ռեկլամում են պարտիզանների դեմ կատարվող այդ գործողությունները:

Կազմակերպական կարգի թերություններն առանձնապես զգալի են, քանի որ արաբական օկուպացված տերիտորիաների աշխարհագրական պայմաններն անբարենպաստ են պարտիզանական պատերազմ մղելու հակառակորդի դեմ, որը զինված է ժամանակակից տեխնիկայով՝ ուղղաթիռներով, հայտնաբերման, զորք տեղափոխելու միջոցներով և այլն: Այդ հանգամանքը պարտիզանական շարժումից պահանջում է իդեալական կազմակերպվածություն, անսահման երկաթյա կարգապահություն, գաղտնապահություն, հետևաբար՝ մարտիկների ընտրության և քաղաքական դաստիարակության սիստեմի բարելավում:

Եթե դիմադրության շարժումը պատշաճ թափով չի ծավալվում, հատկապես արևմտյան ափին՝ 1970 թվականի օգոստոսից հետո, այդ չի նշանակում թե օկուպացված տերիտորիաների բնակիչները, ինչպես պնդում են իսրայելական իշխանությունները, «հաշտվել են օկուպացիայի հետ», թե դիմադրության վրա վերջակետ է դրված: Երբեք այդ չի լինի: Քանի դեռ շարունակվում է օկուպացիան, մոլեգնում է տեռորը, բնակչության կեղեքումը, բռնագրավվում են նրա հողերը, քանդվում բնակարանները՝ դիմադրությունը չի մեռնի: Ընդհակառակը, դիմադրությունը, անտարակույս, կամրապնդվի, կուժեղանա առավել ևս, եթե հաղթահարվեն այժմ այդ շարժմանը խոչընդոտող օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները:

Սրանք են Պաղեստինյան դիմադրության շարժման սխալներն ու թերությունները, որոնք հանգեցրին արդի ճգնաժամին:

Պաղեստինյան դիմադրությունը կարող է դուրս գալ ծանր վիճակից: Հասկանալի է, որ դրա համար անհրաժեշտ է հաշվի առնել անցյալ տարիների դասերը, անել անհրաժեշտ հետևություններ: Ամենագլխավորը՝ նշել հըստակ, ռեալիստական քաղաքական գիծ, ուշադրության առնելով, որ Անվտանգության խորհրդի՝ 1967 թ. նոյեմբերի 22-ի բանաձևի կենսագործումը կարևորագույն քայլ է Պաղեստինի արաբ ժողովրդի իրավունքների, առաջին հերթին՝ ինքնորոշման իրավունքի վերականգնման ճանապարհին: Միաժամանակ, Պաղեստինի դիմադրության շարժումը պետք է ուժեղացնի մասսայական զինված պայքարը օկուպացված տերիտորիաներում, ազգային միասնության հասնի Հորդանանի արևելյան ափին: Դա մեկնակետ կհանդիսանա ազգային իշխանության հաստատման համար, որը կկարողանա մոբիլիզացնել ժողովրդին և երկրի բոլոր ռեսուրսները: Ազգային իշխանությունը կպայքարի արաբական երկրների համերաշխության վերականգնման և ամրապնդման համար, արաբական ազատագրական շարժման և սոցիալիստական երկրների, ամենից առաջ՝ Սովետական Միության, մեր արդար գործը պաշտպանող բոլոր երկրների հետ սերտ հարաբերության զարգացման համար:

Ինչպես ընդգծվում էր «Правда» թերթի 1971 թվականի հոկտեմբերի 30-ի հաղորդագրության մեջ, երբ Պաղեստինի ազատագրության կազմակերպության պատվիրակությունն իր նախագահ Յասիր Արաֆաթի գլխավորությամբ ժամանել էր ՍՍՀՄ, «...սովետական հասարակայնությունը վճռականորեն հանդես է գալիս արաբական ժողովուրդների ազգայինազատագրական շարժման մասը կազմող Պաղեստինի դիմադրության շարժման պաշտպանությամբ»: Այդ կրկին հաստատում է, որ համայն աշխարհի խաղաղության և սոցիալիզմի ուժերը սկզբունքորեն պաշտպանում են մեր արդար գործը և այս է նրա հաղթանակի գրավականներից մեկը:

Այդ շարժումը վերջնականապես կհաղթանակի արաբական ժողովուրդների, արաբական ազատագրական շարժման վճռական պայքարի միջոցով:

«Проблемы мира и социализма», 1972, № 5.

---

[1] Այստեղ գերակշռում է այն համոզմունքը, որ հատվածի ճակատագիրը կապված է եգիպտական ռազմաճակատի և Սինայի թերակղզու ճակատագրի հետ: Բացի դրանից, փախստականների տոկոսն այստեղ շատ ավելի բարձր է, քան արևմտյան ափին:— Տան. հեղ.:

# ՓԱՍՏԱԹՂԹԵՐ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Ստեփան Շահումյանի փոթորկալից կյանքը լենինիզմի դրոշին ավնվորեն ծառայելու լավագույն օրինակ է։ Նրա պայծառ կերպարն այսօր էլ ոգեշնչում է կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց։*

*Ա. Ի. Միկոյանը մի առիթով գրել է. «Շահումյանի մասին շատ գրքեր են գրվել, բայց այդ թեման չի սպառվել։ Մենք իրավունք ունենք մեր պատմաբաններից սպասելու այնպիսի աշխատություններ, որոնք սովետական ընթերցողի սեփականությունը կդարձնեն Շահումյանի ստեղծագործական մտքերն ու հեղափոխական գործունեությունը՝ լրիվ ծավալով»*[1]*։*

*Շահումյանագիտությամբ զբաղվող մեր պատմաբանները գերազանցապես անդրադարձել են Ստեփան Շահումյանի հեղափոխական անլեգալ գործունեությանը, մինչդեռ նրա լեգալ գործունեությունը համեմատաբար քիչ է ուսումնասիրված։ Ինչպես հայտնի է, պրոֆեսիոնալ հեղափոխական գործիչներից շատերը, ինչպես և Շահումյանը, հեղափոխական անլեգալ գործունեությանը զուգահեռ աշխատել են նաև լեգալ պայմաններում, մի բան, որ, բացի նյութական միջոցների հայթայթումից, հաճախ ծառայել է որպես կոնսպիրացիոն միջոց՝ ցարական պահնորդական բաժանմունքի գործակալների հետապնդումներից խույս տալու համար։ Սրանով պետք է բացատրել, որ ցարական ոստիկանության ու ժանդարմերիայի արխիվներում գրեթե վավերագրեր չեն պահպանվել Ստեփան Շահումյանի լեգալ գործունեության մասին։*

*Այդ կարգի հազվագյուտ վավերագրերից է 1909 թ. հունիսի 13-ին Բաքվի ժանդարմական վարչության Ռոտմիստր Զայցևի կողմից հարցաքննվելու ժամանակ Ստեփան Շահումյանի տված հետևյալ ցուցմունքը.*

*«...1906 թ. ապրիլին ես Բեռլինից վերադարձա Թիֆլիս, բանվորների, աշակերտների և զորքի մեջ ագիտացիա չեմ մղել, այլ մինչև ուսումնական տարվա (1906/07) վերջը եղել եմ ուսուցիչ 4-րդ արական գիմնազիայում*[2]*,*

№1

Его Высокородию
Г-ну Инспектору II-ой Тифлисской Мужской Прогимназии

Тифлисского жителя, канди-
дата философии Берлинского
Университета Степана Ге-
орговича Шаумяна

Прошение.

Прошу предоставить мне во вверенной Вам прогимназии уроки армянского языка.

При сем прилагаю свидетельство об окончании Тифлисского Реального Училища и документы из Берлинского университета.

Степан Шаумян.

5-го июня 1906 г.
г. Тифлис.

Адрес: Ртищевская, № 11

*Հավլաբարում։ Իմ ինքնության վերաբերյալ տեղեկություններ տալ կարող է գիմնազիայի դիրեկտոր Յա. Ս. Գուլաձեն*[1]*»։*

*Հասկանալի է, որ Ստեփան Շահումյանը ուսուցչական աշխատանքի ընթացքում չէր կարող ընդհատել իր հեղափոխական անլեգալ գործունեությունը։ Այդ մասին են վկայում, մասնավորապես, հետևյալ փաստերը։ Հանդիսանալով բոլշևիկյան հայ առաջին լեգալ թերթի՝ «Կայծ»-ի, և ապա դրան փոխարի-*

1 Խ. Հ. Բարսեղյան — Ստեփան Շահումյան, կյանքի և գործունեության վավերագրական տարեգրություն 1878—1918, *Երևան, 1968, Ա. Ի. Միկոյանի առաջաբանից։*

2 *Ի դեպ, Ստ. Շահումյանի տված բացատրությունում իր կողմից կանխամտածված, թե՞ քննիչի տեխնիկական սխալի պատճառով արձանագրված է Հավլաբարի 4-րդ արական գիմնազիա։ Իրականում այդ ուսումնական հաստատությունը կոչվել է Հավլաբարի 2-րդ արական պրոգիմնազիա։*

1 *Ադրբ. ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 46, ց. 3, գործ. 333, թ. 96։ Տե՛ս նաև «Բանբեր Հայաստանի արխիվների», № 1, 1960, էջ 22։*

նած «Նոր խոսք»-ի[1] խմբագիրներից մեկը, Ստ. Շահումյանը 1906—1907 թթ. տարբեր ծածկանուններով գրած իր հոդվածներում և առաջնորդողներում անարգանքի սյունին էր գամում հեղափոխության բոլոր թշնամիներին։

Ստ. Շահումյանի անմիջական ղեկավարությամբ, 1906 թ. հոկտեմբերի 15-ին և դեկտեմբերի 25-ին, գումարվել են ՌՍԴԲԿ Բորչալուի կազմակերպության կոնֆերանսները։

1907 թ. ապրիլի 10-ից մինչև մայիսի 19-ը նա ակտիվ մասնակցել է ՌՍԴԲԿ V (լոնդոնյան) համագումարին՝ որպես ՌՍԴԲԿ Բորչալուի կազմակերպության պատգամավոր։

Այս փաստերը վկայում են, որ ցարիզմի համար վտանգ չներկայացնող պրոգիմնազիայի ուսուցչի պաշտոնում ևս Ստ. Շահումյանը շարունակ գտնվել է հեղափոխական աշխատանքի հորձանուտում։

Վրացական ՍՍՀ պետական կենտրոնական պատմական արխիվում ուսումնասիրություններ կատարելիս մեզ հաջողվեց հայտաբերել Ստեփան Շահումյանի՝ ուսուցիչ նշանակվելու և ուսուցչությունից ազատվելու վերաբերյալ 14 թերթից կազմված գործը։ Այդ փաստաթղթերից առավել ուշադրության արժանի են Ստ. Շահումյանի ձեռագրով 1906 թ. հուլիսի 5-ին գրած հետևյալ դիմումը՝ ուղարկված Թիֆլիսի № 2 պրոգիմնազիայի տեսչին՝ իրեն հայոց լեզվի դասաժամեր տրամադրելու մասին։

Թիֆլիսի 2-րդ արական պրոգիմնազիայի նորին
բարեծննդության պարոն տեսչին
Թիֆլիսի բնակիչ, Բեռլինի համալսարանի
փիլիսոփայության թեկնածու
Ստեփան Գեւորգի Շահումյանից

ԽՆԴՐԱԳԻՐ

Խնդրում եմ Ձեզ վստահված պրոգիմնազիայում ինձ տրամադրել հայոց լեզվի դասեր։ Կից ներկայացնում եմ տեղեկանք Թիֆլիսի ռեալական ուսումնարանն ավարտելու մասին և փաստաթղթեր Բեռլինի համալսարանից։

ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ

5 հուլիսի 1906 թ.
Ք. Թիֆլիս

Իմ հասցեն Փ. Ռտիշչևսկայա № 112։

Ստ. Շահումյանի ներկայացրած անձնական գործը, առանց հայոց լեզվի ուսուցչի կոչումը հաստատող փաստաթղթի, № 138 կից գրությամբ, հուլիսի 14-ին պրոգիմնազիայի տեսուչ Յա. Գուլաձեն[3] հանձնում է Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձու Լոպատինսկուն՝ խնդրելով բացառության կարգով թույլատրել Ստ. Շահումյանին՝ իրեն վստահված պրոգիմնազիայում հայոց լեզու ավանդելու։ Գուլաձեն միաժամանակ հավաստիացնում է ուսումնական օկրուգի հոգաբարձուին, որ Շահումյանն ընթացիկ տարվա աշնանն

1 «Կայծ»-ը լույս է տեսել Թիֆլիսում, 1906 թ. ապրիլի 1-ից մինչև օգոստոսի 7-ը, իսկ դրան փոխարինած «Նոր խոսք» թերթը՝ նույն թվականի օգոստոսի 18-ից մինչև սեպտեմբերի 20-ը։ Երկու թերթերն էլ փակվել են Թիֆլիսի նահանգապետի կարգադրությամբ։

2 Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 4։

3 Յա. Ս. Գուլաձե (1870—1921)— սոցիալ-դեմոկրատ, ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի հանձնարարությամբ Ստ. Շահումյանին վերահաս ռեակցիայի հետապնդումներից հեռու պահելու նկատառումով ուսուցչական աշխատանքի է ընդունել նրան իր կողմից ղեկավարվող պրոգիմնազիայում։



անպայման կհանձնի համապատասխան քննություն՝ հայոց լեզվի ուսուցչի կոչում ստանալու համար. հակառակ դեպքում կազատվի աշխատանքից[1]։

Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձուն նույն օրը, այսինքն՝ 1906 թ. հուլիսի 14-ին, հետևյալ պատասխանն է գրում պրոգիմնազիայի[2] տեսուչ Յա. Ս. Գուլաձեին։

«...Ես թույլատրում եմ պ-րն Շահումյանին դասավանդելու հայոց լեզու Ձեզ վստահված պրոգիմնազիայում այն պայմանով, որ նա ընթացիկ տարվա աշնանը հանձնի քննություն՝ հայոց լեզվի ուսուցչի կոչում ստանալու համար։ Վերոհիշյալի մասին հայտնում եմ Ձերդ բարեծնությանը... համապատասխան կարգադրություններ անելու համար»[3]։

Իր ձեռքի տակ ունենալով ուսումնական օկրուգի հոգաբարձուի պաշտոնական գրավոր թույլտվությունը՝ Ստ. Շահումյանին հայոց լեզվի դասաժամերով ապահովելու մասին, Գուլաձեն աշխատանքից ազատում է այդ պաշտոնն զբաղեցնող դաշնակցական Կարապետ Թեյմուրազյանցին։ Վերջինս արձակուրդից վերադառնալով՝ ստանում է պրոգիմնազիայի տեսչի գրավոր ծանուցումը իրեն աշխատանքից ազատելու մասին։

Կ. Թեյմուրազյանցը բողոքում է, գտնելով, որ տեսչի կողմից իրեն ազատելն անօրինական է և ետ է վերադարձնում տեսչի գրությունը։

Կ. Թեյմուրազյանցը բողոքով դիմում է նաև ուսումնական օկրուգի հոգաբարձուին և պահանջում, որ իր իրավունքները վերականգնվեն։ Միաժամանակ նա նշում է, որ իր փոխարեն աշխատանքի ընդունված Ստ. Գ. Շահումյանն անկարող է հայոց լեզու դասավանդել, որովհետև նա ամենևին հայկական կրթություն չի ստացել և հայոց լեզվի ուսուցչի կոչում չունի[4]։

Ուսումնական օկրուգը, հարգելով Գուլաձեի միջնորդությունը, մերժում է Կ. Թեյմուրազյանցի պահանջը։ Մեզ չհաջողվեց պարզել, թե Ստ. Շահումյանը հայոց լեզվի ուսուցչի կոչման համար պահանջվող քննությունը տվե՞լ է, թե ոչ, բայց համոզված ենք, որ նա այդ կոչումը ձեռք է բերել։ Այլ կերպ չէր էլ կարող լինել, որովհետև Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձու Լոպատինսկին (որը Կովկասի ռեակցիոն գործիչներից էր) պրոգիմնազիայի տեսուչ Գուլաձեի միջնորդությունը հարգել էր միայն այն պայմանով, որ Շահումյանը 1906 թ. աշնան ընթացքում հանձնի հայոց լեզվի ուսուցչի կոչման համար պահանջվող քննությունը։

Այսպիսով, եթե Շահումյանը համապատասխան իրավունք ձեռք բերած չլիներ, ապա այդ փաստը ևս կօգտագործվեր Կ. Թեյմուրազյանցի հետագա բողոք-դիմումներում։ Առավել ևս այն պատճառով, որ Ստ. Շահումյանի հակառակորդները նույնիսկ նամակ են գրում լուսավորության մինիստրին, Ս. Գուլաձեին մեղադրելով Շահումյանին հովանավորելու, նրա հեղափոխական հայացքները բաժանելու մեջ։ «Շահումյանն իբրև ուսուցիչ թեև քիչ է խոսում դասերի,— գրում էին նրանք,— բայց Գուլաձեի թույլտվությամբ հաճախ մեկնում է Ռուսաստանի տարբեր քաղաքները, մասնակցում հեղափոխական

1 Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 4։

2 Պրոգիմնազիան, գտնվելով Թիֆլիսի հայաշատ Հավլաբար թաղամասում, կոչվում էր նաև Հավլաբարի արական պրոգիմնազիա։

3 Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 5։

4 Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 7, 8։

*խական աշխատանքներին և կանոնավոր կերպով ստանում է իր աշխատավարձը»[1]։*

*Ստ. Շահումյանի հակառակորդների փաստարկումները կարող էին գրավել ցարական գաղտնի ոստիկանության ուշադրությունը։ Ուստի, ՌՍԴԲԿ V համագումարից դեռ չվերադարձած Թիֆլիս՝ 1907 թ. մայիսի 25-ին Շահումյանը դիմում է պրոգիմնազիայի տեսուչ Գուլաձեին իրեն աշխատանքից ազատելու։*

*Ահա Շահումյանի ձեռագրով գրված վերոհիշյալ դիմումը։*

«Հավլաբարի արական պրոգիմնազիայի ձերդ
բարեձնություն պարոն տեսչին հայոց լեզվի
ուսուցիչ Ստեփան Գևորգի Շահումյանից

*Տնտեսական պայմանների պատճառով ի վիճակի չեմ շարունակել դասեր տալ։ Խնդրում եմ ինձ ազատեք հայոց լեզվի ուսուցչի պաշտոնից։*

Ստեփան Շահումյան
25 մայիսի 1907 թ., ք. Թիֆլիս»[2]:

*Այս փաստաթղթում կասկածելի է ամսաթվի հարցը։ Հասկանալի է, որ եթե համագումարը վերջացել է մայիսի 19-ին, ապա, ժամանակի փոխադրական միջոցների պայմաններում, Ստ. Շահումյանն ի վիճակի չէր հինգ օրվա ընթացքում Լոնդոնից հասնել Թիֆլիս։ Ուստի, հավանական ենք համարում հետևյալը. կա՛մ Շահումյանն այդ դիմումը գրել է մինչև համագումար մեկնելը, չնշելով ամսաթիվը, որպեսզի վտանգի դեպքում պրոգիմնազիայի տեսուչը հնարավորություն ունենա նշելու համապատասխան ամսաթիվ և նրան համարի աշխատանքից ազատված՝ համաձայն իր դիմումի, կա՛մ դիմումը գրվել է Շահումյանի Թիֆլիս վերադառնալուց հետո և ինչ-ինչ նկատառումներով նշվել է հին ամսաթիվը։*

*Վերջինս ավելի հավանական է, որովհետև այդ դիմումի համաձայն պրոգիմնազիայի տեսուչ Գուլաձեն, 1907 թ. հունիսի 5-ի № 182 գրությամբ, Կովկասի ուսումնական օկրուգի հոգաբարձուին խնդրել է հունիսի 1-ից Ստեփան Շահումյանին ազատել ուսուցչի պարտականությունից, իսկ հոգաբարձուն, հունիսի 9-ի № 9313 գրությամբ, պրոգիմնազիայի տեսչին հայտնել է, որ Շահումյանին, իր դիմումի համաձայն, ս/թ (1907) հունիսի 1-ից ազատում է զբաղեցրած պաշտոնից։*

*Ահա այդ գրությունները։*

*«Կովկասի ուսումնական օկրուգի նորին գերազանցություն*

*պարոն հոգաբարձուին*

*Պատիվ ունեմ խորին պատկառանքով խնդրելու Ձերդ գերազանցությանը սույն թվի հունիսի 1-ից պարոն Շահումյանին համաձայն իր դիմումի ազատել ինձ վստահված պրոգիմնազիայում հայոց լեզվի դասատուի պաշտոնից, որի կատարումը Ձերդ գերազանցության կողմից թույլատրված է եղել 1906 թ. հուլիսի 14-ի № 183 կարգադրությամբ։ Հայոց լեզվի նոր դասատու նշանակելու հարցով ես պատիվ կունենամ դիմելու Ձերդ գերազանցությանը հարկ եղած միջնորդությամբ։*

Պրոգիմնազիայի տեսուչ ՅԱ. ԳՈՒԼԱՁԵ
5-ը հունիսի 1907, № 182, ք. Թիֆլիս»[1]

*Համաձայն Ձեր № 183 զեկուցագրի,— պատասխանում է հոգաբարձուն, — դասատու պարոն Շահումյանին իր դիմումի համաձայն սույն թվի հունիսի 1-ից ազատում եմ Ձեզ վստահված պրոգիմնազիայի դասատուի զբաղեցրած պաշտոնից։ Այդ առթիվ հայտնում եմ Ձերդ բարեձնությանը՝ համապատասխան կարգադրություններ անելու համար։*

9-ը հունիսի 1907 թ.
ք. Թիֆլիս»[2]:

*Ազատվելով աշխատանքից՝ Ստ. Շահումյանը մեկնում է Բաքու և բնակություն հաստատում այնտեղ։ Բաքվում ապրելու տարիներին նա ղեկավար մասնակցություն է ունենում ՌՍԴԲԿ Բաքվի բոլշևիկյան կազմակերպության գործունեությանը։*

Շ. Բ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ
Դոցենտ

## ДОКУМЕНТЫ О ПЕДАГОГИЧЕСКОЙ ДЕЯТЕЛЬНОСТИ СТЕПАНА ШАУМЯНА


(резюме)

Вся многогранная жизнь и революционная деятельность Ст. Шаумяна — лучший пример беззаветного служения ленинизму, делу Коммунистической партии Советского Союза.

Внимание наших историков до сих пор, главным образом, было сосредоточено на изучение его нелегальной революционной работе.

Однако, как показывают документы, Ст. Шаумян с большим умением и искусством сочетал свою революционную деятельность с педагогической работой.

Публикуемые ниже документы убеждают, что Шаумян, в 1906—1907 учебном году, будучи на педагогической работе в Тифлисе, одновременно являлся одним из признанных руководителей большевистской организации Закавказья и оказывал огромное влияние на революционную молодежь края.


*[1] Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 94, ց. 1, գ. 42, թ. 87։ Տես նաև Խ. Հ. Բարսեղյան— Ստեփան Շահումյան. կյանքի և գործունեության վավերագրական տարեգրություն։ 1878—1918, Երևան, 1968, էջ 229։ Ի դեպ, պրոգիմնազիայում Ստ. Շահումյանի տարեկան աշխատավարձը եղել է 650 ռուբլի։*

*[2] Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 8։*

*[1] Վրացական ՍՍՀ, ԿՊԿԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 8։*

*[2] Վրացական ՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 422, ց. 1, գ. 9278, թ. 12։*

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱՐԾԻՔԸ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներում առանձնակի ուշադրություն է հատկացվում նոր, կոմունիզմ կառուցող մարդու ձևավորմանն ու ընդհանրապես աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը: «Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմը անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110):

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը կուսակցության արդիական, հրատապ, անհետաձգելի խնդիրներից մեկն է, որի լուծմանը ի թիվս այլ գործոնների, էապես նպաստում է նաև հասարակական կարծիքը: Ուստի, սույն հոդվածում մենք կանգ կառնենք միայն աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում հասարակական կարծիքի դերի գնահատման վրա:

Հասարակական կարծիքը հասարակական գիտակցության վիճակներից մեկն է: Նրա բազմակողմանի դերի ուսումնասիրությունն այժմ տեսական ու գործնական կարևոր նշանակություն ունի: Լինելով կոլեկտիվ դատողություն, այն սոցիալական խմբերի, դասակարգերի ակտիվ վերաբերմունքն է, արտահայտում որոշակի հասարակական հարաբերությունների, հասարակական կյանքի առանձին իրողությունների նկատմամբ: Այս առումով այն գիտակցված կեցություն է:

Հասարակական կարծիքի դաստիարակչական դերի պրոբլեմների մշակման համար հիմք են ծառայում պատմության մատերիալիստական ըմբռնումը, մարքսիզմ-լենինիզմի և ՍՄԿԿ ծրագրի դրույթները այդ մասին, ՍՄԿԿ գործունեությունը և այլն:

Նոր մարդու ձևավորումը սերտորեն կապված է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության հարցի հետ: «Կուսակցության կողմից տարվող գաղափարախոսական աշխատանքի մեջ առաջին տեղերից մեկում է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ՄԵՋ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՆՈՐ, ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄԸ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110): Աշխատանքային դաստիարակության պրոցեսում կարևոր նշանակություն ունի հասարակական կարծիքի միջոցով ձևավորվող համոզմունքի, ընդօրինակման, հեղինակության ազդեցությունը: Արտադրության ամեն մի առաջավոր համոզված է, որ պլանների կատարումն ու գերակատարումը նպատակ ունի ավելի բարեկեցիկ դարձնել սովետական մարդու կենցաղը, բավարարել բնակչության հարահուն պահանջմունքները և այլն:

Ուստի, համոզմունքը խարսխված է բանականության և ոչ զգացմունքների վրա: Իսկ ընդօրինակումը դա անձի կողմից այլ անձանց գործողությունների, արարքների, հայացքների, պատկերացումների, կարծիքների փոխառումը կամ վերարտադրումն է:

Դրական օրինակը համակում է կոլեկտիվի բոլոր անդամներին և նրանց մղում նոր սխրանքների ու նվաճումների: Հեղինակությունը որպես սուբյեկտիվ գործոն նույնպես նպաստում է մարդկանց կոմունիզմի ոգով դաստիարակելու խնդրի լուծմանը:

Սոցիալիզմի ժամանակ յուրաքանչյուր նոր, առաջադիմական երևույթի զարգացումը, տնտեսության, կուլտուրայի, աշխատանքի և կենցաղի կազմակերպման բնագավառներում կատարվում է հասարակական կարծիքի ձևավորման միջոցով: Մասսաներին ասել միայն ճշմարտությունը, մշտապես խորհրդակցել նրանց հետ, ուսումնասիրել նրանց կենսագործունեության հարուստ փորձը՝ կուսակցական աշխատանքի այս սկզբունքները կարևոր դեր են կատարում հասարակական կարծիքի ձևավորման պրոցեսում: Հասարակական կարծիքի ակտիվությունը և ներգործությունը կախված են մասսաների շրջանում, յուրաքանչյուր առանձին կոլեկտիվում կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի վիճակից: Այնտեղ, ուր չկա բերությունների սկզբունքային քննադատություն, հասարակական կարծիքը «լռում է»:

Դեռևս սոցիալիստական հասարակարգի սաղմնավորման արշալույսին Վ. Ի. Լենինը գտնում էր, որ հասարակական կարծիքը պետք է լինի ի սպաս դրվի մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական ոգով դաստիարակելու խնդրի լուծմանը: Լենինը նշում է, որ աշխատավորության ինքնակարգապահության բարձրացման և աշխատանքի հին, միանգամայն անպետք եղանակներից կամ կապիտալիստական հասարակության հատուկ՝ աշխատանքից խուսափելու պրիոմներից անցնելու համար,— գլխավոր միջոցը պետք է լինի մամուլը, որը հայտնաբերում է յուրաքանչյուր աշխատանքային կոմունայի տնտեսական կյանքի բերությունները, անողոքաբար դատապարտում է այդ բերությունները, բացահայտ կերպով հայտարարում է մեր տնտեսական կյանքի բոլոր խոցերը և, այսպիսով, դիմում է աշխատավորության հասարակական կարծիքին՝ այդ խոցերը բուժելու համար (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 238):

Հասարակական կարծիքը սովետական մարդու դաստիարակությանը, ամենից առաջ, նպաստում է նրանով, որ իր որոշակի վերաբերմունքն է արտահայտում մարդկանց այս կամ այն գործողությունների, հակումների, տրամադրությունների, վարքագծի նկատմամբ: Այդ նկատառումով կուսակցությունը մշտապես խորհրդակցում է ժողովրդի հետ: Ընդգծելով կուսակցության առջև ծառացած կարևորագույն խնդիրների լուծման նկատմամբ մասսաների գիտակցական վերաբերմունքի նշանակությունը, Լենինը գրել է. «...որքան ավելի խոր է բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դեպի այն, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել նրա անհրաժեշտության մեջ» (Երկեր, հ. 31, էջ 630):

Կուսակցությունը, ղեկավարվելով լենինյան ցուցումներով, միշտ հաշվի է առնում միլիոնների հզոր այդ ուժը: Այդ կարծիքներում իրենց արտահայտությունն են գտնում մասսաների շահերը, աշխատավորների վերաբերմունքը հասարակական կյանքի տարբեր կողմերի նկատմամբ:

Պրակտիկայում կարծիքների հասարակական ֆունկցիան ո՛չ թե գործերի դրության մասին հաղորդումն է, այլ մարդկանց գործողություններին, վարքագծին ուղղություն տալը, դրանց կարգավորումը: Կարծիքներում արտահայտված ճիշտ գնահատականը մարդկանց հնարավորություն է տալիս ճիշտ կողմնորոշվել իրականության մեջ: Հասարակությունը, հասարակական կարծիքը, գնահատելով մարդու աշխատանքը, նրա հոգում ուրախության, ոգևորության, հպարտության զգացում է առաջացնում, իսկ նույն աշխատանքի նկատմամբ անտարբեր վերաբերմունքը ընդհակառակը՝ ամոթի, ինքնադժգոհության:

Աշխատանքի կոմունիստական դաստիարակությանը էապես նպաստում է աշխատանքային կարգապահությունը, որտեղ հասարակական կարծիքը նույնպես կատարում է հսկայական դեր: Վերջինս դատապարտում է աշխատողների այնպիսի գործողությունները, որոնք հակասում են աշխատանքային կարգապահությանը, և, ընդհակառակը՝ խրախուսում արտադրության առաջավորներին, սոցիալիստական մրցության հաղթողներին և այլն: ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների աշխատանքային օրենսդրության հիմունքները, կարգավորելով աշխատանքային կարգապահության կիրառման հարցերը, նշում են, որ առանձին անբարեխիղճ աշխատողների նկատմամբ անհրաժեշտ է կիրառել հասարակական ներգործության միջոցներ: Այստեղ էլ հանդես է գալիս հասարակական կարծիքի դատապարտող, խարազանող ուժը:

Այս հարցը շարադրելիս պետք է ընդգծել նաև կոլեկտիվի դաստիարակչական դերը: Անհատը կոլեկտիվի միջոցով կապվում է հասարակության հետ: Կոլեկտիվը դաստիարակ է, մի յուրօրինակ պրիզմա, որի միջով անցնում են տվյալ անձի հիմնական գործողությունները: Յուրաքանչյուր դեպքում կոլեկտիվը հարցին մոտենում է օբյեկտիվ, խիստ անհատական՝ հաշվի առնելով իր անդամների կարծիքները:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունն անհնար է պատկերացնել առանց հասարակությանը խորթ տարրերի ու բարքերի դեմ անհաշտ պայքարի: ՍՄԿԿ XXIV համագումարում նշվեց, որ սովետական մարդու նոր կերպարը ձևավորվում է անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով: Այստեղ նույնպես մեծ է հասարակական կարծիքի դերը: «Պայքարն այն բանի դեմ, ինչը մենք անվանում ենք անցյալի մնացուկներ մարդկանց գիտակցության և արարքների մեջ, այնպիսի գործ է, որը պահանջում է կուսակցության, մեր հասարակության բոլոր առաջավոր գիտակից ուժերի մշտական ուշադրությունը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 112):

Սոցիալիստական հասարակարգին խորթ բար-

ների ստիճանաբար պետք է վերանան հասարակության ակտիվ մասնակցության միջոցով: Դա նշանակում է, որ հասարակության յուրաքանչյուր անդամ ո՛չ միայն պետք է պահպանի սոցիալիստական համակեցության կանոնները, այլև խստորեն դատապարտի խախտողներին:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, նրանց բարձր գաղափարայնությունը պետք է օրգանապես զուգակցվեն կոմունիստական բարոյականության նորմերի, սոցիալիստական համակեցության կանոնների կիրառման հետ: Հասարակական կարծիքն անձի վրա միջավայրի բարոյական ներգործության կարևոր միջոց է: Այդ միջավայրն էլ բուն աշխատանքային կոլեկտիվն է: Հասարակական կարծիքը օժտված է քաղաքական ու բարոյական մեծ հեղինակությամբ:

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում սոցիալիստական պետականությունը հետզհետե վերածվում է կոմունիստական հասարակական ինքնավարության, իսկ դրան զուգընթաց վերանում են մարդկանց միջև հարաբերությունների կարգավորման պետական հարկադրանքի միջոցները: Նշված փոփոխությունների շնորհիվ աստիճանաբար ավելի է մեծանում բարոյական սկզբունքների դերը հասարակական կյանքում: Հասարակական կարծիքն անմիջականորեն նպաստում է բարոյականության սկզբունքների իրականացմանը:

Բարոյականության նորմերի կիրառումը սոցիալիստական հասարակարգում ապահովվում է միջավայրի ներգործությամբ, հասարակական կարծիքի ուժով և հասարակության անդամների բարձր գիտակցականությամբ: Բարոյական նորմերի խախտման դեպքում ներգործության միջոցները սահմանում է հասարակայնությունը:

Կոլեկտիվի իրավունքների և ֆունկցիաների ընդլայնումը ավելի է բարձրացրել հասարական կարծիքի բարոյական հեղինակությունը և ուժը՝ նոր մարդու դաստիարակության գործում: Իսկ դա բացատրվում է նրանով, որ կոլեկտիվը տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքում նոր կրողն է, առաջամարտիկը: Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում բովանդակող սկզբունքների իրագործմանը մեծապես նպաստում է հասարակական կարծիքը:

Նոր մարդու ձևավորումը տեղի է ունենում կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը զուգընթաց: Զարգացած սոցիալիզմի պայմաններում կան բոլոր հնարավորությունները այն բանի համար, որպեսզի յուրաքանչյուր անհատ գիտակցված ձևով արտահայտի իր կարծիքը հասարակական կյանքի այս կամ այն հարցի վերաբերյալ: Դրա համար կոմունիստական կուսակցությունը մշտապես ձգտում է մասսաների գիտակցությունը բարձրացնել տեսականորեն հիմնավորված դատողության աստիճանի: Այսպիսով, հասարակական կարծիքի միջոցով գիտական աշխարհայացքի ձևավորման ու դրսևորման նախաձեռնողը մեր երկրում կոմունիստական կուսակցությունն է:

Հասարակական-քաղաքական կարևորագույն հարցերի շուրջ հասարակական կարծիքը դրսևորվում է որպես ողջ հասարակության միասնական ուժ, համաժողովրդական կամքի արտահայտություն: Սակայն միշտ չէ, որ այդ կարծիքը գոյավորվում է «խաղաղ» եղանակով, միասնական նակատով: Դա, ամենից առաջ, պայմանավորված է մարդկանց գիտակցության տարբեր մակարդակներով, հասարակական երևույթների նկատմամբ նրանց տարբեր վերաբերմունքով և այլն: Ուստի, հասարակական կարծիքի ձևավորման պրոցեսում, բացի գիտակցությունից, առկա է նաև տարերայնությունը: Սակայն աստիճանաբար, ժողովրդական մասսաների գիտակցականության աճին համապատասխան, հասարակական կարծիքում մեծանում են գիտակցական տարրերը և նվազում տարերայինը:

Այսպիսով, սովետական մարդու ձևավորման պրոցեսում գնալով մեծանում է հասարակական կարծիքի դերը, հասարակայնության ներգործության աստիճանը մարդկանց գիտակցության և վարքագծի վրա:

Հ. Հ. ԲԱԲԱՅԱՆ

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՕՋԱԽՆԵՐ

## «ԼԵՆԻՆԳՐԱԴ, ՍԱԴՈՎԱՅԱ 18...»

*Լենինգրադում գրեթե բոլորին է ծանոթ Սադովայա փողոցի և Նևսկի պողոտայի անկյունում խոյացած սյունազարդ, մոխրագույն շենքը: Այստեղ է տեղավորված Սովետական բազմազգ Միության կուլտուրայի խոշորագույն օջախներից մեկը՝ Սալտիկով-Շչեդրինի անվան պետական հանրային գրադարանը, որը միշտ սիրով է ընդունում տարբեր տարիքի ու մասնագիտության, տարբեր ազգերի իր բազմահազար այցելուներին:*

*Հանրայինի քսանինը ընթերցասրահները գրեթե միշտ լիք-լեցուն են մարդկանցով: Այստեղ հաճախ են ցրվում մտքի երկվությունները, լուծվում գորդյան հանգույցները... Պատահական չեն Ե. Վ. Տառլեի խոսքերը. «Ես գրեթե չեմ հիշում մի աշխատություն, որի ստեղծման համար իր հույժ գնահատելի, անմոռաց ծառայությունը մատուցած չլինի Լենինգրադի սքանչելի գրադարանը»:*

*Տարեկան երկու միլիոն, օրական 5—6 հազար ընթերցող է լինում այնտեղ[1]: Միայն 1970 թ. գրադարանի բաժանորդ են դարձել 163.372 քաղաքացի, գիտական ընթերցասրահներում՝ 51.835, ընդհանուր ընթերցասրահներում՝ 96.144, պատանեկանում՝ 13.592:*

*Կտրելով տասնյակ հազարավոր կիլոմետրեր, մեր երկրի բոլոր ծայրերից, աշխարհի տարբեր բևեռներից մարդիկ Լենինգրադ են գալիս ո՛չ միայն զմայլվելու նրա վեհասքանչ տեսքով, տեսնելու ժողովրդի հանճարով ստեղծված, տառապանքով հառնած ու սիրով գոյատևած հրաշք քաղաքը, գիտական ու գործնական զանազան հարցեր լուծելու, այլև ուսանելու, օգտվելու նրա հրաշալի գրադարանի անսպառ հարստությունից: Ամեն օր և բոլոր սրահներում են լինում Հեռավոր Արևելքից, Ուզբեկստանից, Հայաստանից, Լատվիայից... Ֆրանսիայից, Հնդկաստանից, Անգլիայից, ԱՄՆ-ից... գրադարան՝ պարապելու եկած ուսանողներ, ասպիրանտներ, գիտնականներ... Նրանց նկատմամբ արտակարգ հոգատար, ուշադիր են բոլոր բաժիններում և բոլոր աշխատողները: Հյուրերի պատվերները կատարվում են կատարյալ ճշտությամբ. հերթապահ գրադարանավարներն ու մատենագետներն ամեն հարցում օգնում, իրենց ծառայությունն են առաջարկում նրանց:*

*Սակայն, մի պահ անջատվենք գրադարանի առօրյայից ու թերթենք նրա պատմության ստվար էջերը, տեսնենք, թե ինչպես է գրադարանը դարձել Սո-*

[1] *Թվական տվյալները վերցված են՝* «Справка о работе государственной публичной библиотеки им. М. Е. Салтыкова-Щедрина в 1970 г., Ленинград, 1971.

վետական Միության կուլտուրայի օջախ, ժողովուրդների փոխըմբռնմանը, գիտական ու կուլտուրական կապերի ամրապնդմանը նպաստող խոշոր հաստատություն։

1814 թվականի հունվարի 14 (2-)-ին է բացվել Ռուսաստանի առաջին հանրային գրադարանը։ Նրա բացման հանդիսավոր օրը լոկ սկիզբն էր երկանց։ Այն դժվարին ուղի էր անցնելու, տառապելու էր աղքատությունից, ցարական կառավարության անտարբերությունից... Սակայն պատմական մեծ դեր ուներ կատարելու և կատարեց, իսկ ռուս ժողովրդի արժանավոր զավակներն օգնեցին, օժանդակեցին նրան։

Եվ այսօր գրադարանի աշխատակիցները, այս կամ այն առիթով դրա գործունեության մասին խոսելիս, մեծ հարգանքով են հիշատակում լուսավորական վեհ գաղափարներով տոգորված իրենց նախորդների անուններն ու սիրով ցույց տալիս նրանցից մնացած ամեն ինչ։ Ահա Ի. Ա. Կռիլովի՝ ռուս մեծ առակագրի, աշխատատեղին։ Երեսուն տարի է նա նվիրել գրադարանին, երեսուն տարի շարունակ գիրք է տվել ընթերցողին, հաղորդել նրան իր հարուստ գիտելիքները, մտահոգվել ռուսական ֆոնդի համալրմամբ ու կատարելագործմամբ։ Գրադարանի հին մուտքի մոտ, շենքի ճակատին, մարմարե տախտակ է փակցված, որտեղ փորագրված է. «1855—1906 թթ. այստեղ աշխատել է ռուսական կուլտուրայի ականավոր գործիչ Վլադիմիր Վասիլևիչ Ստասովը»։ Արգասավոր աշխատանքի հիսուն տարի, հայրենի գիտության, կուլտուրայի զարգացմանն ու գրքին նվիրված մի ամբողջ կյանք։ Հանրայինի պատերի ներսում, հին ու նոր գրքերի հետ, շարունակում են ապրել ու հիշվել նրա մյուս հիմնադիրներն ու երախտավորները— գիտնական գրադարանագետ ու ճարտարագետ Վ. Ի. Սոբոլշչիկովը, Ն. Ի. Գնեդիչը, Ա. Ա. Դելվիգը, Վ. Ի. Մեժովը, ակադեմիկոսներ, հայր ու որդի Ա. Ֆ. և Ի. Ա. Բիչկովները...

Ո՞ւմ էր սպասարկելու նորաստեղծ հաստատությունը, ո՞ւմ էին տրամադրվելու մարդկության ամբարած հոգևոր մշակույթի գանձերը, ովքե՞ր էին օգտվելու նրա բարիքներից և ի՞նչ նպատակի էին ծառայեցնելու դրանք։ Այս հարցերը լուծեց պատմության ընթացքը՝ նոր ժամանակները, որոնք ցնցեցին ժողովրդին, արթնացրին դարավոր նիրհից, սովորեցրին ստեղծագործել։

XIX դարի երկրորդ կեսերին հանրայինի գրապահոցներն են թափանցում պրոգրեսիվ ու դեմոկրատական գաղափարներ արծարծող գրքեր, որոնք տեսանելի են դարձնում ցարիզմի հիվանդ մարմնի խոցերը։ Գրադարանի աշխատակիցներից ոմանք (Ստասովը և ուրիշներ) լավ էին ըմբռնում ռուսական և արտասահմանյան հեղափոխական գրականության բախտորոշ նշանակությունը գալիք սերունդների համար։ Ու որքան էլ զգոն էին ցարական գրաքննիչները, անլեգալ գրականությունն ապաստանում էր գրադարանում։ Ցուտով հանրայինն սկսեց ստանալ նաև Վ. Ի. Լենինի, նրա համախոհների աշխատությունները։ Այդ խնդրում գրադարանին օգնում էին ընդհատակայինները՝ դրա փոստարկղը գցելով անլեգալ գրականություն։

... Նոր ժամանակներ, ճառագող հույսեր։ Երկրում ուռճանում էր վերահաս հեղափոխության ալիքը։ Եվ ահա արյունոտ կիրակիի օրը հեղափոխական ուսանողությունն ու առաջավոր ինտելիգենցիայի ներկայացուցիչները գրադարանում կազմակերպում են բազմամարդ միտինգ, ուր ելույթ է ունենում Մաքսիմ Գորկին։ Ինչպես տեսնում ենք, գրադարանն իր կյանքի նախասովետական տարիներին հակվել է պրոգրեսիվ ուժերի կողմը, եղել հեղա-



փոխության մարտիկների մտավոր աշխարհի հարստացման ու զարգացման անսպառ աղբյուր։ Եվ, պատահական չէ, որ 1893—1895 թթ. այստեղ սիստեմատիկաբար պարապել է Վ. Ի. Լենինը, որ ժամանակին գրադարանի մշտական ընթերցողներն են եղել Վ. Կ. Կյուխելբեկերը, Ն. Գ. Չերնիշևսկին, Ն. Ա. Դոբրոլյուբովը, Դ. Ի. Պիսարևը, Գ. Վ. Պլեխանովը, Ն. Կ. Կրուպսկայան, Ա. Վ. Լունաչարսկին, գրողներ Ա. Մ. Գորկին, Լ. Ն. Տոլստոյը, նկարիչներ ու քանդակագործներ Մ. Մ. Անտոկոլսկին, Ի. Ն. Կրամսկոյը, Ի. Ե. Ռեպինը, կոմպոզիտորներ Ա. Պ. Բորոդինը, Ն. Ա. Ռիմսկի-Կորսակովը, Մ. Պ. Մուսորգսկին, գիտնականներ Դ. Ի. Մենդելեևը, Մ. Ա. Պավլովը, Կ. Ա. Տիմիրյազևը...

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը փոխեց ամեն բան, ինչպես և գրադարանը։ Նրա առջև ծառացան նոր բնույթի խնդիրներ։ Վլադիմիր Իլյիչը հեղափոխության հաղթանակի առաջին օրերին անդրադարձավ գրադարանը նոր սկզբունքներով վերակառուցելու խնդրին։ «Պետերբուրգի հանրային գրադարանի խնդիրների մասին» նրա գրության մեջ կարդում ենք. «Հեղափոխությանը խելացի, խոհուն մասնակցելու համար պետք է սովորել» (Երկեր, հ. 26, էջ 403)։ Իսկ սովորել կարելի էր գրադարանում։ Ցուտով հանրայինը հանձնվեց լուսավորության ժողովրդական կոմիսարիատին. այդ պահից նրա նոր ուղին նախագծողները դարձան Ա. Վ. Լունաչարսկին, Ն. Կ. Կրուպսկայան, Մ. Ն. Պոկրովսկին։ Համառ աշխատանքով ու մեծ ջանքերով կարճ ժամանակում գրադարանը գտավ իր գործունեության նոր հունը և սկսեց ակտիվ օգնել սոցիալիստական հասարակարգի կառուցմանը։ Բազմապատկվեց ընթերցողների թիվը, այնտեղ, անհատների կողքին, տեղ գրավեցին ամբողջ կոլեկտիվներ, քաղաքներ, հանրապետություններ. նա իր բոլոր երակներով կապվեց Միության տարբեր կենտրոնների հետ, վերածվեց իրոք ժողովրդական հաստատության, լիցքավորվեց ստեղծագործական ավյունով։

Մեծ հայրենականի տարիներին վիթխարի կորուստներ կրեց գրադարանը (70 միլիոն)։ Բայց չփակվեցին նրա դռները, չդադարեց կյանքն այնտեղ։ Իսկ պատերազմի հաղթական ավարտից հետո վերականգնվեց ու սկսեց իր արգասաբեր գործունեությունն ավելի մեծ մասշտաբներով ու թափով։ Այժմ այն աշխարհի խոշորագույն գրադարաններից է, իր մեծությամբ երկրորդը Միությունում. ֆոնդերը մեծացել են բազմապատիկ անգամ։ Ամեն օր ավտոմեքենաները գրադարան են բերում մի քանի հազար նոր գրքեր, թերթեր, ամսագրեր, ձեռագրեր, աշխարհագրական քարտեզներ... Գրեթե ամենը, ինչ լույս է տեսնում ՍՍՀՄ-ում և երկրագնդի տարբեր ծայրերում հրատարակվող գրականության զգալի մասը։ Այստեղ հաճախակի են կազմակերպվում ցուցահանդեսներ, էքսկուրսիաներ, դասախոսություններ, բիբլիոգրաֆիական տեղեկություններ..., հանդիպումներ են լինում գրողների, գիտնականների, ամսագրերի ու թերթերի խմբագրական կոլեգիաների, հրատարակչության աշխատողների հետ։ Մշտական ու ժամանակավոր ընթերցողներից զատ, գրադարանում ամեն օր էլ ու մուտ են անում սովետական ու արտասահմանյան բազում տուրիստներ։ Հետաքրքրական շատ բան կարելի է տեսնել ու լսել վիթխարի այս գրապահոցում։

Գրադարանն էլ մի թանգարան է։ Ու չեն դադարում հյուրերի գալուստն ավետող հեռախոսային զանգերը։ «Ալլո՛, գիտնական քարտուղա՞րն է, Լենին-

գրադ ժամանած ամերիկյան տուրիստների խումբը փափագում է լինել գրադարանում»։ «Ալլո՞, Աստորիա հյուրանոցից է, ճապոնացի մի գիտնական ցանկանում է ծանոթանալ գրադարանի կյանքին», «Ալլո՞...», բայց թող թվերը խոսեն։ Միայն 1970 թ. 654 էքսկուրսիա է կազմակերպվել գրադարանում, դրանցից 203-ը՝ արտասահմանցիների համար, այդ նպատակով 8016 ընթերցող ու հյուր են այցելել Հանրային, նրանցից 1117-ը՝ արտասահմանցիներ։ «Ալլո՛, ալլո՞». ու լսվում է էքսկուրսավարի համաչափ, հոժարակամ ձայնը ռուսերեն, անգլերեն, ֆրանսերեն, լեհերեն, իսպաներեն, գերմաներեն, չեխերեն... Փոփոխվում է լսողների դեմքը. մերթ հուզմունք է երևում, հիացմունք, մերթ ափսոսանք, տխրություն... Երբեմն-երբեմն հոգու խորքից պոռթկող բացականչություններ են լսվում։ Իսկ Նորզելանդացի մի կին լրագրասրահում հարցնում է. «Ինչպե՞ս, մի՞թե դուք ստանում եք այս ամսագիրը»։ Նրա հայրենիքում հրապարակվող մի ամսագիր էր այդ. նրա աչքերը հուզառատ են, հայացքը՝ զարմացական։ Հյուրերը ուշիմ հետևում են էքսկուրսավարի սահուն մտքերի շարունակությանը, ջանում ոչինչ բաց չթողնել, ոչինչ չանտեսել, մինչև իսկ պատերից կախված ուղեցույց սլաքներն են նկատում, չծխելու, լռության, անձայն քայլելու, ընթերցասրահներն օդափոխելու մասին հիշեցնող գրությունները, ամեն սրահում հանդիպող ցուցատախտակներն են կարդում, ընթերցողներին ուղղված աշխատողների երկտողերը։

Զարմացնող, հիացնող են առաջին տպավորությունները։ Բայց հետաքրքրականը դեռ առջևում է։ Ահա միջնադարյան գրադարանի տպավորություն թողնող հազվադյուտ գրքերի գրապահոցը— «Ֆաուստի կաբինետը». այստեղ են հավաքված XV դարի Արևմտյան Եվրոպայում տպագրված օրորոցային (ինկունաբուլ) գրքերը, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի երկերի առաջին և հազվագյուտ հրատարակությունները, փարիզյան կոմունայի հրատարակությունների հավաքածուն, Վոլտերի անձնական գրադարանը և այլ նյութեր։ Ձեռագրերի բաժնում է տեղավորված ռուսերեն առաջին թվագիր գրչագիրը՝ «Օստրոմիրյան ավետարանը» (1056—1057 թթ.), ռուսական, արևմտաեվրոպական և արևելյան ձեռագրերը՝ սկսած մ. թ. ա. X դ. հինեգիպտական պապիրուսներից, Գ. Ռ. Դերժավինի, Մ. Վ. Լոմոնոսովի, Մ. Յու. Լերմոնտովի, Ն. Վ. Գոգոլի, Մ. Ի. Գլինկայի և ռուսական գիտության ու կուլտուրայի մյուս գործիչների հույժ արժեքավոր ձեռագրերը։ Ահա և գրադարանի հիմնական տեղեկատու ապարատը՝ ընթերցողական այբբենական գրացուցակը։ Մի պահ շփոթվում ես դրա մեծությունից։ Ռուսական ֆոնդում է տեղավորված ռուսական գրքերի ամենալիակատար ժողովածուն, աշխարհի ամենալիակատարը, մոտ երեք միլիոն հատորով։ Ուշագրավ է էստամպների բաժինը, ուր գետեղված են XVII—XVIII դարերի ռուսական լուբոկի անգնահատելի ժողովածուները, փորագրված պատկերներ, սովետական բոլոր և արտասահմանյան կարևորագույն գեղարվեստական հրատարակությունները։

Հնարավոր չէ մեկիկ-մեկիկ թվարկել, ցույց տալ ամենը։ Եվ էքսկուրսավարը շարունակում է. ...Բազմամիլիոն գրքերը ընթերցողներին մատչելի դարձնելու համար հարյուրավոր մասնագետներ են լարված աշխատում։ Այստեղ, բացի գրադարանավարներից ու մատենագետներից, կան հաստիքավոր պատմաբաններ, բանասերներ, իրավաբաններ, ֆիզիկոսներ, բժիշկներ... Նրանք զբաղված են մշակման և գրացուցակների բաժիններում։ Գիրքը գրադարանում չի կարող բնակություն հաստատել, ընթերցողների համար անհետ



կկորչի, եթե շրջանցի այդ բաժինները։ Միլիոնավոր քարտեր են ամփոփում գրադարանի գլխավոր գրացուցակները։

Հանրայինի գրքերն անընդհատ շրջագայում են նրա ընթերցասրահներում, մեր երկրի քաղաքներում՝ Մոսկվայում, Իրկուտսկում, Ջելյաբինսկում, Տոմսկում, Թբիլիսիում, Երևանում... գործուղվում են սոցիալիստական երկրներ, հեռավոր «ուղևորություններ» կատարում Անգլիա, Շվեդիա, Ֆրանսիա, Հոլանդիա, Իտալիա... Արտաքին գործերի գրադարանային մինիստրություն են կատակով անվանում գրքի փոխանակման միջազգային բաժինը։ Հիրավի, դա յուրօրինակ մի «մինիստրություն» է, որը կապերի մեջ է աշխարհի 101 երկրի 2667 կազմակերպության հետ։ Հաճույքով ես կարդում Այեի (Բիրմա) գրադարանի դիրեկտորի տողերը. «Գրադարանի բազում ընթերցողներ ջերմորեն ցանկանում են մեր գրադարաններում տեսնել սովետական հետաքրքրական գրքեր։ Նրանք երազում են կարդալ և իմանալ Ձեր մեծ երկրի՝ ՍՍՀՄ ժողովրդի կրթության, գիտության, կուլտուրայի ու կյանքի մասին»։

Անգնահատելի է միջազգային գրքի փոխանակության նշանակությունը և իր՝ գրադարանի համար։ Դրա վառ ապացույցն են նրա ֆոնդերի անընդհատ համալրումն ու հարստացումը արտասահմանյան գրականությամբ. այսպես՝ գրադարանը մեկ տարում արտասահմանից ստացել է 15.133 գիրք, 105.592 ամսագիր ու շարունակվող հրատարակություններ, 75.850 լրագիր, 337 էստամպ, 52 քարտեզ, 446 նոտա։ Բայց, պատահում է, որ տվյալ գիրքը, պահանջվածը ոչ թե ժամանակավոր, այլ մշտական օգտագործման համար է անհրաժեշտ լինում որևէ գրադարանի կամ ձեռնարկության. երկրագնդի որ ծայրից էլ լինի այդ խնդիրը, միևնույն է, արտաքին սպասարկման բաժինը հաճույքով է կատարում այն։ Կարճ ժամանակում պատճենահանվում է պահանջվող նյութը և ուղարկվում համապատասխան հասցեով։

Արտաքին սպասարկման բաժնում պատրաստվում են և միկրոֆիլմեր, օտար լեզուներից ռուսերենի թարգմանվում պահանջվող տեքստերը։

Նորից դիմենք թվերին. ընթերցողների պատվերով, բաժինը 1970 թ. պատրաստել է 371 հազար ֆոտոպատճեն, 1590 հազար միկրոֆիլմ, մեքենագրել՝ 14.650 էջ, թարգմանել՝ 758,4 հեղինակային մամուլ։ Իսկ եթե մատենագիտական այս ու այն տեղեկությունն է հարկավոր որևէ հիմնարկության կամ անհատի, տեղեկատու մատենագիտական բաժինը մանրակրկիտ ու սիրահոժար իր ծառայությունն է առաջարկում։ Գրադարանի գիտա-արտադրական բաժինները մեկ տարում 270,5 հազար բանավոր ու գրավոր մատենագիտական տեղեկություններ են պատրաստել։ Ընդ որում, գրավոր հարցումների մեծ մասի պատասխանները եղել են գրականության հսկայական ցուցակները։ Հույժ հրատապ հարցերի վերաբերյալ կազմվել են 85 հեղինակային մամուլի հասնող 50 հանձնարարական ու գիտա-ինֆորմացիոն ցուցակներ։ Բացի այդ, գիտական ընթերցասրահների աշխատակիցներն ինֆորմացիա են տվել գիտնականներին՝ նոր ստացված ֆոնդերի մասին։ Այդպիսի ինֆորմացիա են ստացել գիտությունների 171 դոկտոր, 12 բուհ և գիտա-հետազոտական ինստիտուտ, իսկ բաժինների մատենագետները տվել են 873 խմբային և 5055 անհատական կոնսուլտացիաներ՝ հատկապես մատենագիտական և գրադարանագիտական հարցերի շուրջ։

Խոսուն, հետաքրքրական են նաև այս թվերը. մեկ տարում Հանրայինից օգտվել են այլ քաղաքների 1729 գրադարան։ Դրանց ուղարկվել է 50.121 պահ-

պանման միավոր. գիրք՝ 29.445, միկրոֆիլմ՝ 20.676 (որից 20.173 ժապավեն՝ ընծայվել է):

Ս. Շչեդրինի անվան լենինգրադյան գրադարանը կյանքի ռիթմին ընդառաջ, համապատասխան ձևեր ու հնարանքներ է գտնում կատարելության հասնելու ճանապարհին: Ուստի, պատահական չէ, որ նրա գրեթե բոլոր բաժիններում մարդիկ զբաղված են նորարարական ու գիտական աշխատանքով:

Եթե հանրային հիգիենայի ու վերականգնման բաժինը չջանա հասկանալ գրքերի «կարիքներն ու պահանջները», կիլոմետրանոց գրադարակները չփոշեզերծի, չմաքրի տեսանելի ու անտեսանելի ճիճուներից, սարդերից ու սարդոստայններից, չախտահանի, հատուկ սարքերի միջոցով չհետևի օդի խոնավության ու ջերմաստիճանի տատանումներին, գրքերը «կծերանան», կքայքայվեն: Միայն մեկ տարում գրադարանի 17.668.236 պահպանման միավորից (1971 թ. հունվարի մեկի տվյալներով) ախտահանվել ու հիգիենիկ մշակման է ենթարկվել տպագիր ու ձեռագիր 171,5 հազար պահպանման միավոր:

Սակայն, չնայած գրքերի խնամքի համար նախօրոք կիրառվող բոլոր միջոցներին, բնական, թե անբնական ճանապարհով, դրանք, այնուամենայնիվ, «վթարվում են», «հիվանդանում»: Սա լրջորեն մտահոգում է վերականգնողներին, որոնք իրենց լաբորատորիաներում գրքերի վերանորոգման նորանոր ռացիոնալ միջոցներ են որոնում: Վերականգնողները հաճախ են դիմում քիմիայի օգնությանը, տարիների փորձառությանը: Լրագրերի քայքայվող թերթերը նրանք պատում են պոլիէթիլենային նուրբ շերտով. գրքի թերթերի պատռվածքները լցնում թղթե զանգվածով, որի բաղադրությունը համապատասխանում է վերականգնվող թերթերի բաղադրությանը, և «կարկատանները» ամենևին չեն նկատվում: Միայն 1970 թ. նրանք կազմել են 55,9 հազար պահպանման միավոր: Այսպես, այլևայլ միջոցներով գրքի «բժիշկներն» ու «բուժակները» կյանքի են կոչում գրքերը ոչ միայն այսօրվա, այլև վաղվա, ապագայի համար:

Երեք հարյուրամյակ է անցել գրադարանի սկզբնավորման օրից: Այսօրվա գրադարանը պետական մի խոշոր հաստատություն է՝ իր ջանասեր ու բանիմաց, վաստակաշատ կոլեկտիվով, սպասարկման բարձր կուլտուրայով: Գրքերի ծով այս աշխարհում ամբողջանում են ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների լեզուներով ստեղծվող երկերը՝ հավերժացնելով նրանց բարեկամությունն ու եղբայրությունը: Կուլտուրայի այս մեծ օջախում ամբարվում են աշխարհի լավագույն ստեղծագործությունները, որոնք օրնիբուն օգնում են մարդկանց՝ ավելի երջանիկ ու գեղեցիկ դարձնելու կյանքը մեր մեծ հայրենիքում:

ԼԻԴԱ ԽՈՒԴՈՅԱՆ



## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԽՈՍՔԸ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԹԵՐԹԵՐՈՒՄ

Շրջանային մամուլը զգալի գործ է կատարում տեղական կյանքի, բազմաբովանդակ առօրյայի արտացոլման, վաստակած աշխատավորի դիմանկարի կերտման, բերությունների ծաղկման շնորհակալ մարզում: Այդ ամենը հաճախ արվում է գեղարվեստական խոսքի միջոցով: Խրախուսելի, գովելի են շրջանային թերթի ջանքերը նորանոր գրիչների հայտաբերման, իրենց շուրջը համախմբելու գործում: Այստեղ են մկրտվում, կոփվում, ստեղծագործական փորձ ձեռք բերում գրական ասպարեզ ընտրողներից շատերը: Այն, փաստորեն, դառնում է մեր գրական մտավորականության, մամուլի մշակների շարքերի համալրման հուսալի օջախներից մեկը, որը կարիք ունի մշտական ուշադրության, օբյեկտիվ, ուղեցույց գնահատականի:

Բնավ չպետք է մոռանալ, որ այդ թերթերի գեղարվեստական խոսքը մասնավոր գործ չէ, այն ունի հասարակական-գաղափարական մեծ նշանակություն, ուստի և հանրապետության գրական մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը պետք է հաճախակի անդրադառնան շրջանային թերթերում լույս տեսնող գրական գործերին, հանգամանալի վերլուծությամբ օգնեն տեղական մարմիններին և ստեղծագործող երիտասարդությանը: Ցավոք, մինչև օրս հանրապետության հիշյալ օրգանների ուշադրությունից գրեթե վրիպել է այդ կարևոր խնդիրը:

Մեր ամսագրի խմբագրությունը տարբեր առիթներով անդրադարձել է շրջանային «Վերելք», «Բարեկամություն», «Ծիածան», «Արշալույս», «Արարատ», «Արտաշատ», «Դիլիջան», «Փարոս», «Զանգեզուր», «Կոմունիզմի համար», «Կոմունիզմի ուղիով», «Գուգարք», «Պղնձի համար» և այլ թերթերին, դրվատել գովելին, բացահայտել թերությունները՝ այդ խմբագրություններին օգնելու միտումով:

Այդ իսկ նպատակով այս անգամ հարկ ենք համարում հայտնել մեր նկատառումները «Որոտան» և «Հրազդան» թերթերի գրական էջերի մասին:

ՈՐՈՏԱՆ
ВОРОТАН

*Հանրապետության շրջաններում շատ պատանիներ ու աղջիկներ ուսմանը կամ աշխատանքին զուգընթաց գտնում են իրենց հակումներին հարազատ, սրտամոտ զբաղմունք. ոմանք ընդգրկվում են ինքնագործ խմբերում, ոմանք փորձում են կյանքից ստացած իրենց բուռն տպավորությունները, ապրումներն ու մտորումներն արտահայտել գեղարվեստական խոսքով: Գրելը դառնում է մի տեսակ հոգևոր պահանջ: Նրանցից առավել շնորհալիներին խրախուսողը, ուղղություն տվողը, առաջին հերթին, շրջանային թերթն է: Քիչ չեն դեպքերը, երբ անվանի գրողն իր գրական առաջին մկրտությունն ստացել է տեղական թերթում: Ուստի և շրջանային մամուլն ըստեղծագործելու ձիրքով օժտված սկսնակների գրական մուտքը նախապատրաստող, նրանց գեղարվեստական ճաշակը կրթող ու դաստիարակող մի յուրատեսակ դպրոց է:*

*Թերթերի խմբագրությունները պետք է հոգատար ու յուրովի խստապահանջ լինեն երիտա-*

70-ականներին այդ թիվը բարձրացավ մինչև 45 հազարի: Այդ որտեղի՞ց է վերցրել Համբարյանը, թե ամեն մի արհեստանոցում պետք է անպայման աշխատեին վեց մարդ:

12. Ա. Համբարյանի կարծիքով, մենք երբեմն «հեռակայականը ներկայացնում ենք իբրև իրական»: Հոդվածագրի փաստարկն այն է, որ «հավատացել ենք» թե «Մելիքսեթ Քասմյանի փորը բացվել էր թշնամու սրի հարվածից և աղիները դուրս թափվել... հետո տարել թշնամու տված նաև այլ տանջանքներ և կենդանի մնալով ընկել մոր գիրկը» («Լ. Ու», էջ 103): Սա երևակայություն չէ, այլ պատմական այնպիսի իրողություն, որը վառ գույներով է արձանագրված Զեյթունի հերոսական պատմության էջերում: Այս մասին վկայող բազում էջերից հիշատակենք Զեյթունցու (Մ. Սեմերճյան) Զեյթունի անցյալն և ներկայն, հատ. 1, 1900, Կռունկ Հայոց աշխարհեն, 1863, էջ 255, Գր. Գալուստյանի Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն, էջ 140, Հ. Ահարոնյանի Զեյթունի պատմագիրք, էջ 471 և այլն: Այս փաստը քննել են պատմաբաններ Վ. Ա. Պարսամյանը Վ. Գ. Մելիքսեթյանը, Հ. Մ. Պողոսյանը, բանասեր Ա. Մ. Ինճիկյանը: Ա. Ինճիկյանը պարզել է նաև, որ Քասմյանի սխրանքը ոգևորել է Մ. Պեշիկթաշլյանին և մյուս գրելու բանաստեղծություններից չորսը, որոնք կոչվեցին Զեյթունի շարքը: Հ. Մ. Պողոսյանը, շարունակելով պրպտումները, ապացուցել է ո՛չ միայն դեպքի իսկությունը, այլև պարզել, որ Քասմյանը կենդանի է մնացել, 1868 թվականին եկել է էջմիածին, որին ուղեկցող գրության մեջ արձանագրված էր. «...Մելիքսեթ Գասմյան անձը... միանգամայն խիստ քաջ անձ մի է, զի պատերազմի ժամանակ եոս ընդ կրունկ չդառնալով մինչև վերջին շունչը կռվեցավ ընդ այլազգիս, և ի նշան քաջության յուրո մահացու վերքեր ընդունելով ահռելի մարտին մեջ կիսամեռ ընկավ, որը հետո նախախնամության շնորհիվ առողջանալով... (Հ. Մ. Պողոսյան, «Զեյթունի պատմություն», էջ 175, տե՛ս նաև Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 203, վավ. 777):

Ակնհայտ է, որ Ա. Ս. Համբարյանի հոդվածում առաջ քաշված առարկություններից քչերն են քննադատության դիմանում: Այդ բանն ավելի լավ ապացուցելու համար կարելի էր ընդարձակել պատասխանները, ավելի հիմնավորել մեր ընդդիմախոսությունը, սակայն բավարարվենք այսքանով, ընթերցողին համոզելու, այս դեպքում առաջնորդվելով ժողովրդական հանրահայտ այն իմաստությամբ, թե զինու որակն իմանալու համար խմում են ոչ թե ամբողջ տակառը, այլ մի բաժակն էլ բավական է:

Հ. Մ. ՂԱԶԱՐՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 7-ի 34-րդ էջի վերևի 21-րդ տողում կարդալ. «...ՍՄԿԿ Կենտկոմի 1967 թ. որոշումը», 51-րդ էջի վերևից 9-րդ տողում՝ «...բանտեր նետեցին ու գնդակահարեցին...» ու այնուհետև ինչպես տեքստում:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции — Ереван-33, Барекамутян, 59-г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 01685 Պատվեր 1184 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.168 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 26/VII 1972 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խասհակյան փող. № 28:








### ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. Լենինը և սոցիալիստական պետության արտաքին քաղաքականությունը: Կիևի պետ. համալսարանի և Լայպցիգի՝ Կ. Մարքսի անվան համալսարանի պատմաբանների հոդվածների ժողովածու: Կիև, Համալս. հրատ., 1972:

ԿԵԴՐՈՎ Բ. Մ.— Ինչպես ուսումնասիրել Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գիրքը: 3-րդ հրատ., Մ., Политиздат, 1972:
Ակադեմիկի այս աշխատությունն ուսումնական ձեռնարկ է պրոպագանդիստների, դասախոսների, բարձր կուրսերի ուսանողների, փիլիսոփայության խմբակների և սեմինարների ղեկավարների համար: Նախորդ հրատարակությունների համեմատությամբ այն փոփոխված, լրացված է:

Գեորգի Դիմիտրովը կոմունիստական շարժման ականավոր գործիչ: Մ., Политиздат, 1972:
Հոդվածների այս ժողովածուն հրատարակության են պատրաստել ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի և ԲԿԿ ԿԿ-ին կից ԲԿԿ պատմության ինստիտուտը: Այն նախատեսված է ընթերցող լայն մասսաների համար:

Կուսակցական աշխատողի տեղեկատու: Տասնմեկերորդ պրակ: Մ., Политиздат, 1971:

ԳՈՐՈԴԵՑԿԻ Ե. Ն. և ՇԱՐԱՊՈՎ ՅՈՒ. Պ.— Սվերդլով: Մ., «Молодая гвардия» հրատ., 1971:

ԱՐՈՒՏՅՈՒՆՈՎ Գ. Ա. և ՄԿՐՏՉՅԱՆ Գ. Գ.— Պապիկ Մկրտչյան: «Հայաստան» հրատ., 1971:
Ներկա բրոշյուրում հեղինակները պատմել են ականավոր կոմունիստ Պապիկ Գրիգորի Մկրտչյանի (1901—1937) հեղափոխական գործունեության և կյանքի մասին: Հավելվածում զետեղված է Պ. Մկրտչյանի «Հայաստանի» հեղափոխական շարժման հերոսական շրջանը» հոդվածը:

ԱՎԴԱԼԲԵԿՅԱՆ Մ. Թ.— Հայ գեղարվեստական արձակի սկզբնավորումը: Ե դար: Եր., ԳԱ հրատ., 1971:

Սոցիալիզմի աշխարհը թվերով և փաստերով: Տեղեկատու: Մ., Политиздат, 1971:

ՌԿԿ(բ) ԿԿ քարտուղարության գրագրությունները տեղական կուսակցական կազմակերպությունների հետ: Փաստաթղթերի ժողովածու: Մ., Քաղգրակհրատ., 1971, 564 էջ: (Ժողովածու 6: Հունվար—մարտ 1919 թ.):

ՍՄԿԿ պատմության պատմագրության և աղբյուրագիտության խնդիրները: Պրակ 1-ին (հոդվածների ժողովածու): Լենինգրադի համալս. հրատ., 1971:

Աշխարհի երկրները: Համառոտ քաղաքական-տնտեսական տեղեկատու: Մ., Политиздат, 1971:

ԲԵԼՈԴԵՑ Մ.— «Ֆիլիպս» մոնոպոլիան»: «Կապիտալիստական աշխարհի տերերը» սերիայից: Մ., Политиздат, 1972:
Մասսայական ընթերցողի համար նախատեսված այս բրոշյուրում նկարագրված են կոնցեռնի իրական տերերի կյանքի շատ բնորոշ իրադարձություններ: «Ֆիլիպսը» աշխարհի խոշորագույն մոնոպոլիաներից մեկն է:

Հայ գրականությունը օտար լեզուներով: Մատենագիտություն: Կազմեցին Ա. Նազիկյան, Յ. Խաչատրյան և Ա. Ցիցինյան: Ե., Հանր. գրադարանի հրատ., 1971:

ԱՐՇԱՐՈՒՆԻ Ա. Մ.— Մոսկվայի հայ մամուլը: «Հայաստան» հրատ., 1971:

Վ. Ա. ՓՈԹԵՅԱՆ— Հայերեն իրավաբանական բառարան: «Հայաստան» հրատ., 1972:

Հ. Տ. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ— Հայաստանը ռուս բանաստեղծների ստեղծագործություններում (ռուսերեն), «Հայաստան» հրատ., 1972:

ԳԻՆԸ 25 Կ.:

77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ԱՍՏՐՈՖԻԶԻԿԱԿԱՆ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ

*Այն կառուցվելու է Ուզբեկստանի հարավում Բայ-Սոնտաու լեռնային զանգվածի սիստեմում: Մթնոլորտի կայունությամբ և թափանցիկությամբ, տարվա ընթացքում ունեցած անամպ օրերի թվով այդ շրջանը մրցում է Չիլիի լավագույն վայրերի հետ, որոնք, մասնագետների վկայությամբ, օժտված են մթնոլորտի ամենաիդեալական պայմաններով՝ աստղագետների գործունեության համար:*

*Ունիկալ աստրոկլիմա ունեցող այդ շրջանում աստղադիտարանի կառուցմամբ ստեղծվում են ռեալ պայմաններ Ուզբեկստանում աստղագիտության լայն զարգացման համար:*

## ԵՎՍ ՄԵԿ ՎԿԱՅՈՒԹՅՈՒՆ

*ԱՄՆ-ի Կոլումբիայի համալսարանի Ս. Շպիգելմանի լաբորատորիայում կատարվեց հերթական հայտնագործություն, որով հաստատվում է քաղցկեղային ուռուցքների վիրուսային բնույթը: Մարդու կրծքագեղձերի քաղցկեղային բջիջներից զատվել են ռիբոնուկլեինային թթվի մոլեկուլներ, որոնք* ДНК *վիրուսների մոլեկուլների հետ հարուցում են նման հիվանդություններ, այդ թվում կրծքագեղձերի քաղցկեղ՝ լաբորատոր փորձարկման ենթակա կենդանիների մոտ:*

## ՊԱՏՎԱՍՏԱՆՅՈՒԹ՝ ԸՆԴԴԵՄ ԿԱՐՄԻՐԻ

*Ինչպես հաղորդում է անգլիական «Գարդիան» թերթը, ստացվել է պատվաստանյութ, որը կանխում է ատամների կարիեսի զարգացումը: Այն պատրաստված է սպիտակուցային հիմքից՝ զատված ստրեպտոկոկի կուլտուրայից, որը սննդաշաքարի առկայության դեպքում է հարուցում կարիես:*

*Այդ պատվաստանյութի նախնական փորձարկումներն պսակվել են հաջողությամբ. 14 երեխայից բաղկացած խմբում կարիեսը նվազել է 80, 10 երեխայից բաղկացած խմբում՝ 95 տոկոսով:*

*Գիտնականները գտնում են, որ 3—5 տարի հետո հնարավոր է երեխաների պատվաստավորումը (վակցինացումը) երկու տարեկան հասակից:*

## ԷՀՄ-Ը ԴԻՍՊԵՏՉԵՐ

*Ստոկհոլմի մերձքաղաքային երկաթուղային ցանցը, որի 50 կայարաններով մեկ օրում անցնում է 800 գնացք, փոխադրված է կենտրոնացված կառավարման՝ ԷՀՄ-ի միջոցով:*

*Կառավարման այդ սիստեմը գնացքներին հնարավորություն է ընձեռում շարժվել առավել արագությամբ՝ ժամում 130 կիլոմետր, ավտոմատ փոխարկում է սեմաֆորների ազդանշանները և ուղեգծի սլաքները: Միաժամանակ այն ավելացնում է ուղեգծի բացթողման կարողությունը՝ 20 տոկոսով:*

*Կառավարման սիստեմը նախատեսված է 256 գնացքի շարժման միաժամանակյա կառավարման համար: Գնացքներին հրամաններ տրվում է կենտրոնական դիսպետչերական կետից կամ ստեղնաշարի կամ ԷՀՄ-ի միջոցով: Երբ գնացքը ժամանում է վերջին կայարանը, ԷՀՄ-ը ավտոմատ ազդանշան է տալիս հետադարձ ուղղությամբ շարժվելու համար:*

## ԼԻԱԿԱՏԱՐ ՈՒՏԻԼԻԶԱՑՈՒՄ

*Երկարատև տիեզերական թռիչքի ժամանակ տիեզերագնացին թթվածնով ապահովելու ինքնատիպ միջոց են առաջարկել ամերիկյան գիտնականները. թթվածինն ստանում են ջրի էլեկտրալիզի օգնությամբ, և մարդն այն արտաշնչում է ջրագոլորշու ձևով: Գիտնականների հաշվարկումներով, 24 ժամում մարդը ներշնչում է 2 ֆունտ (մոտ մեկ կիլոգրամ) և արտաշնչում է 3 ֆունտ գոլորշի: Հավելյալ մեկ ֆունտը գոյանում է օրգանիզմի ընդունած ջրից ու ուտելիքից:*

*Ջրագոլորշուց թթվածին ստանալու սարքը գործել է 80 օր:*

## ՎԻԹԽԱՐԻ ՓՈՇԵԶՏԻՉՆԵՐԸ

*Փարիզում տեղադրված են երկու վիթխարի աշտարակներ, որոնցից յուրաքանչյուրը տարեկան կարող է փոշեզերծել 110 միլիոն խորանարդ մետր օդ. այժմ այդ սարքերը փորձարկվում են, և եթե արդյունքը գոհացուցիչ լինի, այդ տեխնիկան լայնորեն կկիրառվի:*